Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

# АЗӘРБАЈЧАН КОММУНИСТИ

# საქართველოს კომუნისტი

11

ՆՈՅԵՄԲԵՐ
ԵՐԵՎԱՆ 1972

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

11
ՆՈՅԵՄԲԵՐ 1972
ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն

# Содержание





# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԼՈՒՍԱՎՈՐ ՈՒՂԻՆԵՐՈՎ

Բոլորեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 55-րդ տարին: Սովետական ժողովուրդը, հերոս ժողովուրդը, իր հարազատ լենինյան կոմունիստական կուսակցության իմաստուն ղեկավարությամբ, 55 տարի շարունակ ընթացել է վերելքի ուղիով, հաղթահարել բազում դժվարություններ և աննախընթաց հաջողությունների հասել նոր հասարակարգի կառուցման գործում:

Լինելով դարաշրջանի ամենակարևոր իրադարձությունը, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը խոր ազդեցություն գործեց բոլոր ժողովուրդների, ողջ մարդկության ճակատագրի վրա: Դա առաջին պրոլետարական հաղթական հեղափոխությունն էր, որն արմատապես և հիմնովին փոխեց միապետական Ռուսաստանի սոցիալ-տնտեսական կացութաձևն ու քաղաքական կարգը, ցույց տվեց սոցիալական հասունացած պրոբլեմների հեղափոխական լուծման փայլուն օրինակ, աշխարհը բաժանեց երկու հակադիր սոցիալական սիստեմների, դրեց նոր դարաշրջանի՝ կապիտալիզմի խորտակման և կոմունիզմի հաստատման դարաշրջանի սկիզբը և դրանով իսկ բեկում առաջացրեց համաշխարհային հասարակական զարգացման բնագավառում:

Երեք հեղափոխությունների բովով անցած Ռուսաստանի բանվոր դասակարգը, դաշնակցած ճնշված աշխատավորական մասսաների հետ, իր փորձված ավանգարդի՝ Վ. Ի. Լենինի ստեղծած կոմունիստական կուսակցության առաջնորդությամբ նվաճելով քաղաքական իշխանությունը, լուծեց համաշխարհային նշանակություն ունեցող այնպիսի պրոբլեմներ, ինչպիսիք են շահագործողների իշխանության տապալումը, պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը, կապիտալիստական շահագործումից աշխատավորների ազատումը, սոցիալիստական սեփականության հաստատումը, հօգուտ գյուղացիության ագրարային հարցի լուծումը, կախյալ ժողովուրդների ազատագրումը գաղութային և ազգային ճնշումից, սոցիալիզմի կառուցման համար քաղաքական ու տնտեսական պայմանների ստեղծումը և այլն: «Մենք իրավունք ունենք հպարտանալու և հպարտանում ենք նրանով,— 1921 թվականին ասել է Լենինը,— որ մեզ երջանկություն բաժին ընկավ *սկսելու* սովետական պետության կառուցումը, *սկսելու* դրանով համաշխարհային պատմության նոր դարաշրջան, այն *նոր* դասակարգի տիրապետության դարաշրջանը, որը ճնշված է բոլոր կապիտալիստական երկրներում և ամենուրեք գնում է դեպի նոր կյանք, դեպի հաղթանակ բուրժուազիայի դեմ, դեպի պրոլետարիատի դիկտատուրան, դեպի մարդկության ազատագրումը կապիտալի լծից, իմպերիալիստական պատերազմներից» (Երկեր, հ. 33, էջ 42):

Փոթորկալից մարտերում լուծելով սոցիալիստական հեղափոխության ամենագլխավոր հարցը՝ պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը, Ռուսաստանի բանվոր դասակարգը, աշխատավոր գյուղացիության հետ, անցավ մյուս, թերևս ավելի բարդ ու դժվարին խնդիրների լուծմանը, որոնք կապված էին ներքին և արտաքին հակահեղափոխության կատաղի դիմադրությունը կոտրելու, Հոկտեմբերի նվաճումներն ամրապնդելու և նոր հասարակարգի կառուցմանն անցնելու հետ:

Իշխանության տեր դարձած հեղափոխության մարտիկները, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, լուծեցին նաև այդ խնդիրները: Կանգ չառնելով փորձությունների ու անասելի դժվարությունների առջև, նրանք կարճ ժամանակամիջոցում վերականգնեցին քառամյա իմպերիալիստական պատերազմի ու քաղաքացիական կռիվների հետևանքով քայքայված ժողովրդական տնտեսությունը:

Հեղափոխության հաղթանակից հետո ամենագլխավոր խնդիրը երկրի էկոնոմիկայի համակողմանի զարգացումն էր, որի առաջին պայմանը կուսակցությունը համարում էր խոշոր մեքենայացված ինդուստրիայի՝ որպես սոցիալիզմի միակ հնարավոր տնտեսական հիմքի, ստեղծումը, առանց որի հնարավոր չէր տեխնիկապես զինել ու առաջ մղել նաև ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերը, ապահովել կապիտալիստական շրջապատման մեջ գտնըվող երկրի պաշտպանունակությունը: «Միայն այն ժամանակ,— ուսուցանում էր Վ. Ի. Լենինը,— երբ երկիրն էլեկտրիֆիկացվի, երբ արդյունաբերությունը, գյուղատնտեսությունն ու տրանսպորտը դրվեն ժամանակակից խոշոր արդյունաբերության տեխնիկական բազայի վրա, միայն այն ժամանակ մենք կհաղթենք վերջնականապես» (Երկեր, հ. 31, էջ 654):

Կենսագործելով Լենինի ցուցումները, սովետական ժողովուրդը բոլոր ջանքերը գործի դրեց և փայլուն կերպով լուծեց երկրի էլեկտրիֆիկացման, ծանր ինդուստրիայի զարգացման, ժողովրդական տնտեսության տեխնիկապես զինման խնդիրները: Ստեղծվեցին ու հաջողությամբ գործի դրվեցին ժամանակակից արդյունաբերության այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են մեքենաշինությունը, հաստոցաշինությունը, ավիացիոն, քիմիական արդյունաբերությունը և այլն, որոնց շնորհիվ ամրապնդվեցին երկրի տնտեսական հզորությունն ու պաշտպանունակությունը: Վերջին շրջանում, հատկապես ութերորդ հնգամյակում, խոշոր չափերով աճեցին արտադրության մասշտաբները: «Արտադրության ներկայիս մասշտաբները ակնբախորեն պատկերացնելու համար,— նշված է կուսակցության XXIV համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ,— բավական է ասել, որ միայն 1970 թվականին մոտավորապես երկու անգամ ավելի արդյունաբերական արտադրանք թողարկվեց, քան նախապատերազմյան բոլոր հնգամյակներում միասին վերցրած»:

Մեր երկրի էկոնոմիկայի վերելքը պայմանավորված էր նաև գյուղատնտեսության զարգացմամբ, որը, սակայն, կարելի էր իրականացնել միայն սոցիալիստական վերակառուցման ճանապարհով: Դասակարգային թշնամիների, հակալենինյան բոլոր հոսանքների դեմ մղած անհաշտ պայքարի պայմաններում կուսակցությունը լուծեց նաև այդ բարդ ու դժվարին խնդիրը ևս: Լենինյան կոոպերատիվ պլանի հիման վրա գյուղացիությունը միավորվեց հանրային խոշոր կոլեկտիվ տնտեսություններում, որոնց հայրենի արդյունաբերությունը զինեց ժամանակակից տեխնիկայով: Իր տեխնիկական զինվա-



ծության և արտադրության ինտենսիվացման շնորհիվ երկրի գյուղատնտեսության տարեկան համախառն արտադրանքն անցնում է 80 միլիարդ ռուբլուց:

Անդրադառնալով մեր նվաճումներին, կուսակցության XXIV համագումարում տված զեկուցման մեջ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Ձեռք է բերվել ժողովրդական տնտեսության, սոցիալիստական հասարակական հարաբերությունների, ժողովրդական լայն մասսաների կուլտուրայի և գիտակցականության անչափ ավելի բարձր մակարդակ: Սովետական մարդկանց անձնվեր աշխատանքով կառուցվել է զարգացած սոցիալիստական հասարակարգ, որի մասին Վ. Ի. Լենինը 1918 թվականին խոսում էր իբրև մեր երկրի ապագայի մասին: Դա մեզ հնարավորություն տվեց ձեռնամուխ լինելու կուսակցության ծրագրով և նրա վերջին համագումարների կողմից առաջադրված մեծ խնդրի պրակտիկ լուծմանը՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը»:

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ասպարեզում խոշոր առաջընթաց քայլ կկատարվի ընթացիկ հնգամյակում: ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների համաձայն հնգամյակի տարիներին ՍՍՀՄ ազգային եկամուտը կաճի 39 տոկոսով, արդյունաբերական արտադրանքի ծավալը 47, գյուղատնտեսական մթերքների տարեկան միջին արտադրությունը՝ 20—22 տոկոսով:

Կենսագործելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները, բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, մեր երկրի բոլոր աշխատավորները հնգամյակի առաջին տարում նշանակալի հաջողությունների հասան: Կատարվել ու գերակատարվել է արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների մեծամասնության արտադրության ու իրացման տարեկան պլանը: Դրա շնորհիվ երկիրը լրացուցիչ կերպով ստացել է 8 միլիարդ ռուբլու արտադրանք: Պլանով նախատեսվածից արագ էին ժողովրդական սպառման ապրանքների արտադրության աճման տեմպերը: Հաջողությունները որոշակի էին նաև գյուղատնտեսության զարգացման և, առանձնապես, անասնապահական մթերքների արտադրության ավելացման ասպարեզում:

Հաշվի առնելով երկրի ժողովրդական տնտեսության վիթխարի աճը, որպես իններորդ հնգամյակի գլխավոր խնդիր, կուսակցությունն առաջ է քաշել ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի զգալի վերելքի ապահովումը: Այդ ասպարեզում ևս նոր հնգամյակի առաջին տարում խոշոր քայլ կատարվեց. բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտներն աճեցին 4,5 տոկոսով, բարձրացվեցին 19 միլիոն մարդու աշխատավարձն ու կենսաթոշակները, 7,4 տոկոսով ավելացվեցին սպառման հասարակական ֆոնդերից տրվող վճարումներն ու արտոնությունները, կառուցվեցին հազարավոր նոր դպրոցներ, հիվանդանոցներ, կուլտուրայի օջախներ, շահագործման հանձնվեց 108 միլիոն քառակուսի մետր բնակարան և հնարավոր եղավ մեկ տարում բարելավելու ավելի քան 11 միլիոն սովետական քաղաքացիների բնակարանային պայմանները:

Նոր հնգամյակի ծրագրումների կատարման գործում ձեռք բերված առաջին նշանակալի հաջողություններով նշելով Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության 55-րդ տարեդարձը, սովետական ժողովուրդը խանդավառությամբ նախապատրաստվում է իր մյուս մեծ տոնին՝ ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակին: Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միու-

թյունը նրա հեղափոխական մեծագույն նվաճումներից է, որն իր քաղաքական նշանակությամբ և սոցիալ-տնտեսական հետևանքներով ակնառու տեղ է գրավում մեր պետության պատմության մեջ: ՍՍՀՄ կազմավորման շնորհիվ վիթխարի չափերով բազմապատկվեցին աշխատավորների ուժերը, ինտերնացիոնալ եղբայրությունը դարձավ նրանց ստեղծագործական եռանդի անսպառ աղբյուրը, նոր հասարակարգի կառուցման կարևոր պայմանը:

Անշեղորեն կենսագործելով ազգային հարցի լուծման լենինյան ծրագիրը, կոմունիստական կուսակցությունը պատմականորեն կարճ ժամանակաշրջանում ապահովեց սովետական հանրապետությունների էկոնոմիկայի բուռն վերելքը, նրանց տնտեսական զարգացման մակարդակների միջև եղած տարբերությունների աստիճանաբար վերացումը: Միութենական բոլոր հանրապետությունները, որոնք ծնունդ առան Հոկտեմբերի հաղթանակի շնորհիվ, դարձել են ժամանակակից առաջնակարգ ինդուստրիայի, մեքենայացված խոշոր գյուղատնտեսության, զարգացած կուլտուրայի ու գիտության ծաղկուն երկրներ:

Ազգերի հավասարության լենինյան գաղափարն իր խտացած արտահայտությունը գտավ իրենց սոցիալիստական հայրենիքն ստեղծելու և արագորեն զարգացնելու ասպարեզում երկրի բոլոր ազգերի և ազգությունների համատեղ ազատ ու ակտիվ աշխատանքում: ՍՍՀՄ ամբողջ աշխարհի առջև իրեն դրսևորեց որպես ժողովուրդների կամավոր դաշինքի առավել կենսունակ ձև, որպես ազգային հարցի լուծման փայլուն օրինակ:

Նախկինում ճնշված ժողովուրդները, որոնց միջև բուրժուա-նացիոնալիստական կառավարությունները և կուսակցությունները սերմանում էին թշնամանք ու կազմակերպում ազգամիջյան կոտորածներ, ազատաբեր Հոկտեմբերի, ռուս մեծ ժողովրդի օգնությամբ, սովետական իշխանության հաստատման առաջին տարիներից սկսած, միասնական ջանքերով, եղբայրական համագործակցությամբ ձեռնամուխ եղան նոր հասարակարգի կառուցմանը, պատվավոր տեղ գրավեցին ՍՍՀՄ մեծ ընտանիքում, ապրեցին իրենց իսկական ոսկե դարը: Ընդհանուր շահերը, միասնական նպատակը այդ ժողովուրդների միջև ստեղծել են անխախտ բարեկամության, եղբայրության կուռ դաշինք, ինտերնացիոնալ սերտ կապեր: Այդ մասին են մեր ամսագրի այս համարում պատմում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ա. Ե. Քոչինյանը, Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Հ. Ա. Ալիևը և Վրաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Է. Ա. Շևարդնաձեն: Երեք հանրապետությունների ժողովուրդների լենինյան դաշինքը, բարեկամական համագործակցությունը, տնտեսական, գիտական և կուլտուրական կապերը զարգացել ու նոր որակ են ստացել:

Դեռևս 1921 թ. ապրիլի 14-ին Կովկասի կոմունիստներին ուղարկված նամակում Վ. Ի. Լենինը գրել է. «Ջերմորեն ողջունելով Կովկասի սովետական հանրապետություններին, ես հույս ունեմ, որ նրանց սերտ դաշինքը կստեղծի ազգային համերաշխության մի այնպիսի օրինակ, որը չի տեսնված բուրժուազիայի ժամանակ և անհնարին է բուրժուական հասարակարգում» (Երկեր, հ. 32, էջ 402): Մեծ առաջնորդի հույսերն արդարացել են. Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի միջև ստեղծվել են ազգային ջերմ համերաշխություն, եղբայրական ամուր կապեր: Թբիլիսիի, Բաքվի ու Երևանի, Սումգաիթի և Կիրովականի, Ռուսթավիի և Լենինականի, հարևան երեք հանրապետությունների մյուս քաղաքների արտադրական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների կոլեկտիվների տրադիցիոն սոցիալիստական մրցությունը, գիտության, գրականության, արվեստի ու լուսավորության գործիչների փոխայցելությունները և փորձի փոխանակումն ավելի են ամրապնդել ժողովուրդների լենինյան բարեկամությունը, նպաստել նրանց տնտեսական ու կուլտուրական վերելքին: Լինելով ՍՍՀՄ իրավահավասար անդամներ, նրանք նույնպիսի բարեկամական սերտ կապերի մեջ են ավագ եղբոր՝ ռուս մեծ ժողովրդի, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Ուզբեկստանի, Ղազախստանի, Լատվիայի և սովետական մյուս հանրապետությունների ժողովուրդների հետ, որոնք միասնական ուժերով ավելի են հզորացնում ու ծաղկեցնում մեր անպարտելի Հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը:

Պատմական փորձը, կոմունիստական շինարարության պրակտիկան ապացույց են այն բանի, որ սովետական յուրաքանչյուր հանրապետության զարգացումը, ամենից առաջ, արդյունք է ՍՍՀՄ ժողովուրդների սերտ բարեկամության ու համագործակցության, փոխադարձ օգնության, կուսակցության լենինյան ազգային քաղաքականության իրագործման: Դրա վառ օրինակներից մեկը Հոկտեմբերի շողերով լուսավորված ու 1920 թ. նոյեմբերի 29-ին իր ազգային վերածնունդը ստացած Սովետական Հայաստանն է: Դաշնակցականների ավանտյուրիստական քաղաքականության հետևանքով քայքայված ու բզկտված, կործանման եզրին կանգնած Հայաստանն իր փրկությունը ստացավ միայն ազատարար Հոկտեմբերի, Սովետական Ռուսաստանի օգնությամբ: Սովետական ժողովուրդների և, հատկապես, ռուս ժողովրդի եղբայրական աջակցության ու օգնության շնորհիվ Հայաստանը սովետական իշխանության տարիներին պատվեց արդյունաբերական ձեռնարկությունների, կուլտուր-լուսավորական հիմնարկությունների, գիտա-հետազոտական ինստիտուտների, բարձրագույն ու միջնակարգ ուսումնական հաստատությունների լայն ցանցով: Կենդանություն ստացան նրա պապակ դաշտերն ու այգիները, ստեղծվեցին մեքենայացված խոշոր հանրային տնտեսություններ, որոնք հիմնովին փոխեցին գյուղի դեմքը, ամրապնդեցին բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքը: Հայաստանի արդյունաբերական արտադրանքի ծավալը սովետական իշխանության տարիներին աճել է 200 անգամ: Այժմ հանրապետության գործարաններն ու ֆաբրիկաները երկու օրում զգալիորեն ավելի շատ արտադրանք են թողարկում, քան արտադրվում էր ամբողջ 1913 թվականին:

Ձեռք բերված խոշոր հաջողությունների համար բարձր գնահատելով եղբայրական սովետական հանրապետությունների օգնությունը, երախտապարտ հայ ժողովուրդն իր զգալի ավանդն է մուծում սովետական արդյունաբերության ու գյուղատնտեսության զարգացման գործում: Նրանք Հայաստանից ստանում են շարժական էլեկտրակայաններ և տրանսֆորմատորներ, էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ, կանացի սարքեր, քիմիական պրեպարատներ, գինի, միրգ և ուրիշ շատ արտադրանք:

Տնտեսական, սոցիալ-քաղաքական ու կուլտուրական զարգացման բնագավառներում խոշոր նվաճումներն ակնառու են միութենական բոլոր հանրապետություններում: Այդ նվաճումների մեջ հսկայական դեր է պատկանում բոլոր ազգությունների աշխատավորների եղբայրական բարեկամությանը, նրանց համախմբմանը Սովետական Սոցիալիստական Հանրապետություննե-

րի Միության մեջ: ՍՍՀՄ կազմավորումը ոչ միայն ապահովեց բոլոր հանրապետությունների արագ զարգացումը, այլև նրանց անվտանգությունն ու անկախությունը, ստեղծագործական խաղաղ աշխատանքը:

Լինելով Հոկտեմբերի գործի, ամբողջ երկրի մասշտաբով կատարված հեղափոխական վերափոխումների անմիջական շարունակությունը, ՍՍՀՄ կազմավորումն ունեցավ նաև միջազգային հսկայական նշանակություն: Նրա փորձը համաշխարհային լայն ճանաչում է ստացել և անգնահատելի օգնություն է սոցիալական ու ազգային ազատագրության բոլոր մարտիկներին: Հոկտեմբերի նվաճումները, մեր երկրում ծավալվող կոմունիստական շինարարությունը անբաժանելի են համաշխարհային հեղափոխական պրոցեսից: Դա պարզորոշ դրսևորվում է մեր կուսակցության միջազգային ողջ գործունեության, ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած արտաքին քաղաքականության կուրսի մեջ:

Կատարելով իր ինտերնացիոնալ պարտքը, ՍՍՀՄ հաստատակամորեն ու հետևողականորեն վարում է խաղաղության քաղաքականություն, վճռականորեն պաշտպանում է ժողովուրդների իրավահավասարության լենինյան սկզբունքները, հանդես գալիս իմպերիալիզմի, գաղութատիրության, նեոգաղութատիրության և ռասիզմի դեմ, ազգային ճնշման բոլոր ձևերի դեմ: Նա բազմակողմանի օգնություն է ցույց տալիս իրենց ազատության ու անկախության համար մարտնչող ժողովուրդներին:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունն իր բնույթով ինտերնացիոնալ էր և լայն արձագանք ու տարածում ստացավ համայն աշխարհում: Այն կապիտալի երկրներում դրեց սոցիալիստական, իսկ գաղութային երկրներում ազգային-ազատագրական հեղափոխությունների սկիզբը, գաղութային ամոթալի սիստեմի փլուզման սկիզբը: Հետևելով Սովետական Միության օրինակին, կապիտալի լծի տակ կեղեքվող աշխատավորներն ուժեղացրին դասակարգային պայքարը և հոծ կանգվածներով կանգնեցին մարքսիզմ-լենինիզմի դրոշի ներքո: Համաշխարհային երկրորդ պատերազմից հետո, երբ ՍՍՀՄ-ը ծնկի ․բերեց հիտլերյան Գերմանիային և ողջ քաղաքակրթությունը փրկեց ֆաշիստական ստրկացումից, աշխարհում նոր ուժով փոթորկվեցին հեղափոխական շարժումները: Դրանք Ասիայի, Արևելյան Եվրոպայի մի շարք երկրներում և Կուբայում պսակվեցին աշխատավորների հաղթանակով: Այդ երկրները բռնեցին սոցիալիզմի կառուցման ուղին. ծնունդ առավ միջազգային սոցիալիստական սիստեմը, որը դարձել է համաշխարհային զարգացման վճռական գործոնը:

Իր ինտերնացիոնալ պարտքի փայլուն կատարմամբ, կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում ձեռք բերած նշանակալի հաջողություններով թևակոխելով Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ հեղափոխության 56-րդ տարին, սովետական ժողովուրդը մեծագույն խանդավառությամբ պատրաստվում է դիմավորելու ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակը: Այդ փառապանծ հոբելյանի նախապատրաստությունն ամենուրեք անցնում է ՍՄԿԿ XXIV համագումարի գաղափարների ու որոշումների հզոր ներգործության տակ:

Սովետական ժողովուրդը, այդ թվում և հայ ժողովուրդը, դեպի իր մեծ տոնն է ընթանում սերտորեն համախմբված կոմունիստական կուսակցության և նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը:

---

# ԱՆԴՐԿՈՎԿԱՍԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՍՍՀՄ ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԸՆՏԱՆԻՔՈՒՄ

Ա. Ե. ՔՈՉԻՆՅԱՆ

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար

## ԱՆԽԱԽՏ ՄԻԱՍՆՈՒԹՅԱՄԲ ԴԵՊԻ ՎԵՀ ՆՊԱՏԱԿ

Մոտենում է սոցիալիստական մեր մեծ հայրենիքի եղբայրական ժողովուրդների բերկրալի տոնը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակը:

Սովետական ժողովուրդը քաղաքական ու աշխատանքային աննախընթաց
վերելքի իրադրության պայմաններում է պատրաստվում նշելու իր փառա-
պանծ պատմության այդ նշանակալից տարելիցը:

Բանվորների ու գյուղացիների՝ աշխարհում առաջին բազմազգ սոցիալիս-
տական պետության ստեղծումը իր քաղաքական կարևորությամբ և սոցիալ-
տնտեսական արդյունքներով աչքի ընկնող տեղ է գրավում սովետական երկրի
պատմության մեջ և ունի միջազգային հսկայական նշանակություն: ՍՍՀՄ
կազմավորումը դարակազմիկ իրադարձություն հանդիսացավ ամբողջ մարդ-
կության սոցիալական առաջընթացում:

ՍՍՀ Միությունն ստեղծվել է ոչ թե բռնության ու ստրկացման, այլ
Միության բոլոր ժողովուրդների կամավորության ու իրավահավասարության
սկզբունքնե-
սկզբունքների վրա: Լենինյան ազգային քաղաքականության այդ սկզբունքնե-
րը դարձան միասնական պետության ազգերի միավորման հիմքը, մի պետու-
թյուն, որը սովետական բոլոր եղբայրական ժողովուրդների տնտեսական, քա-
ղաքական ու կուլտուրական զարգացման հզոր գործոնն է:

«Մենք իշխում ենք,— ասում էր Վ. Ի. Լենինը,— ոչ թե բաժանելով, ըստ
հին Հռոմի դաժան օրենքի, այլ միացնելով բոլոր աշխատավորներին կենդա-
նի շահերի, դասակարգային գիտակցության անխզելի կապերով: Եվ մեր
միությունը, մեր նոր պետությունն ավելի ամրակուռ է, քան բռնադատական
իշխանությունը, որը ստով ու երկաթով միավորում է իմպերիալիստների հա-
մար հարկավոր արհեստական պետական կազմավորումները... Միանգամայն
կամովին, առանց ստի ու երկաթի, կաճի այդ ֆեդերացիան, և նա անխորտա-
կելի է» (Երկեր, հ. 26, էջ 588—589):

Այդ ֆեդերացիան, որն ամբողջովին համապատասխանում է անխախտ սովետական հանրապետությունների լիակատար իրավահավասարության և կամավոր միավորման պահանջներին, առավել արդյունավետ նպաստեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների կենսագործմանը ազգային-պետական շինարարության մեջ, սովետական ժողովուրդների դաշինքի ամրապնդմանը՝ նրանց փոխվստահության և եղբայրական բարեկամության հիման վրա:

Ստեղծվելով ու գործելով խոշորագույն բազմազգ երկրում, բոլշևիկյան կուսակցությունն սկզբից ևեթ վինվեց ազգային հարցի գիտականորեն մշակված լենինյան ծրագրով, որի իրականացումը դարձավ նրա մարտական խընդիրներից մեկը: Կոմունիստական կուսակցությունը, հետևողականորեն ղեկավարվելով մարքս-լենինյան ուսմունքով, ազգային հարցի լուծումը անխզելիորեն կապում էր սոցիալիստական հեղափոխության հաղթանակի հետ, ազգային ճնշման վերացումը՝ սոցիալական ճնշման վերացման հետ: Կոմունիստների լենինյան կուսակցությունը նախապատրաստեց, կոփեց պրոլետարական հեղափոխության ինտերնացիոնալ մեծ բանակը և ռուսական հեղափոխական բանվոր դասակարգի ղեկավարությամբ նրան տարավ երեք հեղափոխությունների բովով: Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունը մեր երկրի բոլոր ժողովուրդներին բերեց սոցիալական և ազգային ազատություն:

Ազգային հարցի մարքս-լենինյան լուծման գործում մեր կուսակցության և ժողովրդի խոշորագույն հեղափոխական նվաճումն էր Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորումը:

ՍՍՀ Միության ստեղծման լենինյան գաղափարն արտահայտում էր մեր երկրի բանվոր դասակարգի, աշխատավոր գյուղացիության, առաջավոր ինտելիգենցիայի, բոլոր ազգերի ու ժողովուրդների կենսական շահերը:

Ստեղծելով միասնական բազմազգ պետություն, կոմունիստական կուսակցությունը կարողացավ ավելի արգասաբեր ուղղություն տալ աշխատավոր կանգվածների, սովետական բոլոր ժողովուրդների ստեղծագործական ուժերին, նրանց միտքն ու տաղանդն ուղղել երկրի սոցիալ-տնտեսական և քաղաքական վերափոխումների վիթխարի պլանների հաջող իրականացմանը:

Սովետական ժողովուրդների անխախտ դաշինքը եղել և մնում է սովետական հասարակարգի կայուն հիմքը, կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի ստեղծագործական ոգեշնչման անսպառ աղբյուրը: Կոմունիստական կուսակցության իմաստուն ղեկավարության, արտադրաուժերի պլանաչափ ու ռացիոնալ տեղաբաշխման, բնական ու մարդկային վիթխարի ռեսուրսների օգտագործման շնորհիվ մեր երկիրը պատմական կարճ ժամանակամիջոցում վիթխարի թռիչք է կատարել դարավոր հետամնացությունից դեպի ժամանակակից ինդուստրիայի բարձունքները, դեպի բարձր վարգացած սոցիալիստական գյուղատնտեսությունը: Իր մասշտաբներով պատմության մեջ չտեսնված կուլտուրական հեղափոխության իրականացման շնորհիվ մեր երկիրը դարձավ համատարած գրագիտության երկիր:

Սովետական ժողովուրդների դաշինքի ուժն ու հզորությունը վառ դրսևորվեցին Հայրենական մեծ պատերազմի ահեղ տարիներին: Մարդկության կատաղի թշնամու՝ գերմանական ֆաշիզմի նկատմամբ տարած հաղթանակը ցուցադրեց սոցիալիզմի առավելությունները կապիտալիզմի նկատմամբ, ՍՍՀՄ



ժողովուրդների բարեկամության, սովետական մարդկանց բարոյա-քաղաքական միասնության անսասան ուժը:

Մեր հայրենիքի վիթխարի հաջողությունները սովետների երկրի բանվորների, կոլտնտեսականների ու ինտելիգենցիայի ստեղծագործական համատեղ աշխատանքի արդյունք են, յուրաքանչյուր միութենական ու ինքնավար հանրապետության, երկրամասի, մարզի աշխատանքային ներդրումների, բոլոր սովետական ժողովուրդների սոցիալիստական փոխօգնության, նրանց քաղաքական, սոցիալ-տնտեսական ու գաղափարական հանրության արդյունք:

Կոմունիստական կուսակցության լենինյան իմաստուն ազգային քաղաքականության հաղթանակի փայլուն օրինակ կարող են ծառայել ադրբեջանական, վրաց և հայ ժողովուրդների՝ ողջ Անդրկովկասի սոցիալ-քաղաքական կյանքում կատարված արմատական փոփոխությունները, որոնք տեղի ունեցան սովետական ժողովուրդների համերաշխ, միաձույլ ընտանիքում:

Վ. Ի. Լենինը, որը դեռևս ցարական ինքնակալության և բուրժուազիայի դեմ մղված պայքարի ժամանակաշրջանում բարձր էր գնահատում Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների ինտերնացիոնալ բնույթը, երկրամասում սովետական իշխանության հաղթանակի առաջին տարիներին Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների հանրապետության կոմունիստ ընկերներին հղած նամակում գրում էր.

«Ջերմագին ողջունելով Կովկասի սովետական հանրապետություններին, ես ինձ թույլ եմ տալիս հույս հայտնել, որ նրանց սերտ դաշինքը կստեղծի ազգային խաղաղության մի այնպիսի օրինակ, որը չի տեսնված բուրժուազիայի ժամանակ և անհնարին է բուրժուական հասարակարգում» (Երկեր, հ. 32, էջ 402):

Ադրբեջանի, Հայաստանի, Վրաստանի աշխատավորները պատվով արդարացրին մեծ առաջնորդի հույսերը, ստեղծելով հիրավի սերտ միություն, ազգային հարցի լուծման օրինակ, ինտերնացիոնալ համագործակցության սկզբունքներով միավորվելով Անդրկովկասյան ֆեդերացիայի մեջ, որը 1922 թվականի դեկտեմբերին մյուս սովետական հանրապետությունների հետ մտավ ՍՍՀ եղբայրական Միության մեջ:

Այդ ժամանակից անցել է կես դար: Արմատապես վերափոխվել է Անդրկովկասը՝ ցարական Ռուսաստանի նախկին գաղութային ծայրամասը: Այժմ դա հզոր ինդուստրիայի, հիդրոկայանների ու ջերմակայանների երկրամաս է, սև ու գունավոր մետաղների, ածխի ու նավթի, ժամանակակից մեքենաների ու սարքերի, ծխախոտի, խաղողի, թեյի, բամբակի, ցիտրուսային կուլտուրաների և անասնապահական բարձրորակ մթերքների արտադրության երկրամաս: Արտադրանքի մի քանի տեսակներով Անդրկովկասի հանրապետություններն առաջատար տեղ են գրավում երկրում: Նրանք արտադրում են վառելիքային մազութի 50, ծխախոտի՝ 40, թեյի՝ 98,6 տոկոսը, տալիս Միության ցիտրուսային կուլտուրաների ողջ արտադրանքը: Բացի դրանից, Անդրկովկասը կարևոր տեղ է գրավում գունավոր մետաղների համամիութենական արտադրության, մեքենաշինության, սարքաշինության, էլեկտրատեխնիկական ու քիմիական արդյունաբերության, շինանյութերի արտադրության մեջ:

Նման բուռն աճը բնորոշ է երկրի սովետական եղբայրական բոլոր հանրապետություններին:

Սովետական Միության կազմավորման, ամրապնդման ու զարգացման

մեջ, նրա փիթխարի հաջողություններում իր ողջ վեհությամբ դրսևորվում է ականբախ դերը ռուս ժողովրդի, որն իր անսպառ հեղափոխական եռանդով ու նվիրվածությամբ, աշխատասիրությամբ ու ինտերնացիոնալիզմով իրավամբ արժանացել է սովետական եղբայրական բոլոր ժողովուրդների անկեղծ ու խոր հարգանքին:

Սովետների բազմազգ պետության պատմական նվաճումների անսասան հիմքը, հասարակական վճռական ուժը բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքն է: Այդ դաշինքում առաջատար տեղը բանվոր դասակարգինն է: Բանվոր դասակարգի հեղափոխականությունը, կազմակերպվածությունը, կարգապահությունն ու կոլեկտիվիզմը որոշում են նրա ավանգարդային դերը սոցիալիստական հասարակական հարաբերությունների սիստեմում, կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում:

Սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման համար մեր հայրենիքի աշխատավորների մղած համատեղ պայքարի մեծ նվաճումներից մեկն էլ մարդկանց նոր պատմական հանրության՝ սովետական ժողովրդի առաջացումն է: «Սովետական ժողովուրդը,— նշված է *ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի նախապատրաստության մասին* ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— ...կազմավորվել է արտադրամիջոցների հանրային սեփականության բազայի վրա, տնտեսական, սոցիալ-քաղաքական ու կուլտուրական կյանքի միասնության, մարքս-լենինյան գաղափարախոսության, բանվոր դասակարգի շահերի ու կոմունիստական իդեալների բազայի վրա»:

Բազմազգ սոցիալիստական պետության կեսդարյա ուղին, կոմունիստական կուսակցության պատմական փիթխարի փորձը փայլուն հաստատեցին մարքսիզմ-լենինիզմի դրույթն այն մասին, որ ազգային հարցը հետևողականորեն կարող է լուծվել հասարակության սոցիալիստական վերափոխման միջոցով միայն:

«Սոցիալիզմը,— նշում է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը,— գործողության մեջ դրեց մեր զարգացման մի այնպիսի կորեղ շարժիչ ուժ, ինչպիսին է ժողովուրդների բարեկամությունը: Սովետական բազմազգ ժողովրդի միասնությունը ամուր է ինչպես ադամանդը: Եվ ինչպես որ ադամանդը փայլփլում է երփներանգ գույներով, այնպես էլ մեր ժողովրդի միասնությունը շողշողում է այն կազմող ազգերի բազմազանությամբ, որոնցից յուրաքանչյուրը ապրում է լիարյուն, ապատ ու երջանիկ կյանքով» (Լենինյան կուրսով, հ. 2, էջ 128):

Սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում իր հարուստ, լիարյուն, ազատ ու երջանիկ կյանքն է դարբնում հայ ժողովուրդը: Սովետական Հայաստանը՝ մեծ Հոկտեմբերի ծնունդը, այսօր դարձել է ծաղկող սոցիալիստական հանրապետություններից մեկը: Հեղափոխությունից առաջ նրա արդյունաբերությունը բաղկացած էր լեռնահանքային մի քանի արտադրամասերից և կոնյակի արտադրությունից, մյուս ճյուղերում հիմնականում գերակշռում էին տնայնագործ արհեստավորները, 1913 թվականին արդյունաբերության տեսակարար կշիռը ժողովրդական տնտեսության մեջ 14 տոկոսից էլ պակաս էր:

Սովետական իշխանության տարիներին եղբայրական հանրապետությունների մեծ ու հզոր Միությունում ամրապնդվում, առնականանում էր նաև Սովետական Հայաստանը:



Անշահախնդիր փոխօգնության պայմաններում նա, մյուս հանրապետությունների նման, աննախընթաց հաջողությունների հասավ սոցիալիստական շինարարության բոլոր բնագավառներում: 50 տարում Հայաստանում, ինչպես և ողջ երկրում, տեղի ունեցան սոցիալ-տնտեսական ու քաղաքական արմատական վերափոխումներ: Սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ ձևավորվեց սոցիալիստական հայ ազգը:

Կատարելով լենինյան պատգամները, մեր ժողովուրդը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, Հայաստանը դարձրեց զարգացած սոցիալիստական էկոնոմիկայի, բազմաճյուղ արդյունաբերության հանրապետություն: Սոցիալիստական շինարարության տարիներին արդյունաբերական արտադրանքի արտադրության ծավալը հանրապետությունում աճեց երկու հարյուր անգամ: Այժմ երկու օրում արտադրվում է անհամեմատ ավելի շատ արտադրանք, քան արտադրվել է Հայաստանում ողջ 1913 թվականին: Հանրապետության ինդուստրիալ բարձր զարգացման մասին է խոսում նաև այն փաստը, որ արդյունաբերության բաժինն ամբողջ հասարակական արդյունքի մեջ կազմում է գրեթե 70 տոկոս:

Մեր հանրապետությունը, որը հիսուն տարի առաջ գտնվում էր էլեկտրականության դարի շեմին միայն, այժմ արդեն թևակոխում է ատոմային էներգիայի դարը: Մեզ մոտ հիմա արտադրվում է 4 անգամ ավելի շատ էլեկտրաէներգիա, քան ամբողջ ցարական Ռուսաստանում 1913 թվականին, իսկ բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությամբ Սովետական Հայաստանը զարգացած կապիտալիստական շատ երկրներից առաջ է: Այժմ նա համատարած էլեկտրիֆիկացիայի երկիր է:

Մեր հանրապետության ինդուստրիալ զարգացումը բնութագրվում է ո՛չ միայն քանակական աճով, այլև դրական որակական փոփոխություններով: Եթե նախկինում առաջատար դեր էր կատարում սննդի և թեթև արդյունաբերությունը, ապա այժմ հանրապետության ինդուստրիալ դեմքը որոշում են այնպիսի առաջընթաց ճյուղեր, ինչպիսիք են՝ էլեկտրատեխնիկան, հաստոցաշինությունը, էլեկտրոնիկան, սարքաշինությունը, ռադիոտեխնիկան, քիմիական արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան, շինանյութերի արդյունաբերությունը:

Արտադրաուժերի բուռն զարգացման շնորհիվ հիմնովին փոխվել է Հայաստանի տնտեսական քարտեզը: Արդյունաբերական այնպիսի քաղաքների կողքին, ինչպիսիք են՝ Երևանը, Լենինականը, Կիրովականը, Ղափանը, Ալավերդին, հանդես են եկել ինդուստրիալ նոր կենտրոններ՝ Քաջարանը, Հրազդանը, Ազարակը, Աբովյանը, Չարենցավանը, Կամոն, Արթիկը և այլն:

Սովետական հանրապետությունների սոցիալիստական տնտեսական համագործակցությունը, որի հիմքը ՍՍՀ Միության մասշտաբով միասնական ժողովրդատնտեսական պլանն է, հանդիսանում է արտադրաուժերի ռացիոնալ տեղաբաշխման կարևորագույն պայմանը, որը հնարավորություն է ընձեռում առավել արդյունավետ օգտագործելու եղած հումքային ու նյութական այլ ռեսուրսները, համակողմանի զարգացնելու և խորացնելու արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը:

Ակնհայտ է մեր հանրապետության բաժինը երկրում թողարկվող շարժական էլեկտրակայանների, գեներատորների, մետաղահատ հաստոցների, սար-

քերի, ավտոմատացման և հաշվողական տեխնիկայի միջոցների, ժամացույցների, էլեկտրալամպերի, սինթետիկ կաուչուկի, ավտոդողերի, մոլիբդենային կոնցենտրատների, պոված պղնձի ընդհանուր ծավալում:

Հայաստանի ձեռնարկությունների մասնակցությամբ արտադրվող ավելի քան 150 տարբեր առարկաներ Սովետական Միությունն արտահանում է արտասահմանյան 70 երկրներ:

Մեր հանրապետությունը տարբեր տեսակի առարկաներ է առաքում Միության բոլոր հանրապետություններ և, իր հերթին, նրանցից ստանում է այն ամենը, ինչի կարիքն ունի: Այդ կարելի է ցույց տալ անդրկովկասյան եղբայրական հանրապետությունների տնտեսական սերտ փոխհարաբերությունների օրինակով: Այսպես, Հայաստանի և Վրաստանի ժողովրդական տնտեսությունները Ադրբեջանից ստանում են ավելի քան 200 տեսակի արդյունաբերական ապրանքներ, Սովետական Վրաստանը Ադրբեջան և Հայաստան է առաքում սև մետաղների գլանվածք, սարքավորումներ ու սարքեր՝ սննդի ու լեռնահանքային արդյունաբերության համար, բեռնատար ավտոմեքենաներ, թուղթ և այլն:

Սովետական Հայաստանը, իր հերթին, ուղարկում է եղբայրական Վրաստանի ու Ադրբեջանի հանրապետությունների ժողովրդական տնտեսությանն անհրաժեշտ գունավոր մետաղներ, մոտ 30 տեսակի քիմիական և 50 տեսակի մեքենաշինական ու սարքաշինական արտադրանք:

Մեր հանրապետությունների տնտեսական սերտ կապերի վառ օրինակ է Անդրկովկասյան միասնական էներգասիստեմի հաջող աշխատանքը:

Ադրբեջանցի, հայ, վրաց, սովետական երկրի մյուս ժողովուրդների պավակների ու դուստրերի ընդհանուր ջանքերով կառուցվել և գործարկվել են Մինգեչաուրի հիդրոէլեկտրակայանը, Քութայիսիի ավտոգործարանը, Երևանի ջերմաէլեկտրակայանը, Սումգայիթի քիմիական, Կիրովաբադի ալյումինի, Կիրովականի քիմիական մանրաթելի գործարանները: Ժողովուրդն ինտերնացիոնալ կառույցներ է անվանում Հայաստանում կառուցվող ատոմային էլեկտրակայանը, Արփա—Սևանի՝ 48 կիլոմետրանոց թունելը, Տաթևի հիդրոէլեկտրակայանը, Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատը և ՊՇԷԿ-ը, որտեղ իրենց հայ եղբայրների հետ ուս-ուսի աշխատում են սովետական մոտ 40 ժողովուրդների ներկայացուցիչներ, որոնց հետ և մեր դարավոր բարի դրացիները՝ վրացիներն ու ադրբեջանցիները:

Հանրապետության արդյունաբերության զարգացումը հիմնվում է անցած հիսնամյակում լայն թափով ծավալված կապիտալ շինարարության վրա: Հայաստանն այժմ մի վիթխարի շինարարական հրապարակ է: Բնակելի նոր կանգվածները, բազմաթիվ կառույցների մասնաշենքերը, երկնամբարձ աշտարակային կռունկները, հանրապետության քաղաքային ու գյուղական բնանկարի անբաժան մասն են: Ավելանում է շինարարության ամենամյա թափը: Միայն 1965—1970 թվականներին ժողովրդական տնտեսության մեջ ներդրվել են ավելի շատ միջոցներ, քան նախորդ 10 տարում: Ութերորդ հնգամյակի տարիներին կառուցվել և շահագործման են հանձնվել 110 նոր արդյունաբերական ձեռնարկություն և խոշոր արտադրամաս:

Խոսելով արդյունաբերության շինարարության արագ զարգացման մասին, չի կարելի չնշել Հայաստանում կատարված, իրավի, հեղափոխական սոցիալական տեղաշարժերը: Հիշենք, որ հեղափոխությունից առաջ Հայաստանում կար մոտ 5 հազար բանվոր: Իսկ սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում հանրապետությունում ձևավորվել է բանվոր դասակարգի մի հզոր ջոկատ, որը սոցիալ-քաղաքական ու տնտեսական առաջատար ուժ է:

Թեև Հայաստանը հիմնականում արդյունաբերական հանրապետություն է, նրա էկոնոմիկայում ոչ պակաս կարևոր նշանակություն ունի նաև գյուղատնտեսությունը: Անշեղ ավելանում է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը: Աճում է խաղողագործության, պտղաբուծության, բանջարաբուծության, անասնապահության արդյունավետությունը: Անընդհատ մեծացող մեքենա-տրակտորային պարկի շնորհիվ տարեցտարի գնալով ավելի արտադրողական ու հեշտ է դառնում հողագործների աշխատանքը: Մեզ մոտ յուրաքանչյուր 100 հեկտար վարելահողին ընկնում է ավելի քան 380 ձիաուժ էներգակարողություն:

Անցած հնգամյակում կապիտալ ներդրումների ծավալը գյուղատնտեսության մեջ, նախորդ հինգ տարիների համեմատությամբ, կրկնապատկվել է: Ութերորդ հնգամյակում միայն ոռոգման համար ծախսվել է ավելի քան 170 միլիոն ռուբլի՝ անցած հինգ տարիներին օգտագործված 70 միլիոնի դիմաց: Դա հնարավորություն տվեց ոռոգելի դարձնելու ևս 34 հազար հեկտար հող և ջրարբի՝ 133 հազար հեկտար ամառային արոտավայր: Հանրապետության գյուղատնտեսության համախառն արտադրանքը (համադրելի գներով) ութերորդ հնգամյակում ավելացել է 21 տոկոսով:

Ուրախալի են նաև անդրկովկասյան եղբայրական հանրապետությունների հանրային դաշտերի աշխատողների գործարար կապերը: Ավանդույթ է դարձել Հայաստանի Հոկտեմբերյանի շրջանի Նալբանդյան կոլտնտեսության և Վրաստանի Մախարաձեի շրջանի Նաթանեբի գյուղի կոլտնտեսության աշխատավորների բազմամյա սոցիալիստական մրցությունը: Սիստեմատիկաբար հարվածային աշխատանքի փորձն են փոխանակում Հայկական ՍՍՀ Մեղրու և Ադրբեջանական ՍՍՀ Օրդուբադի շրջանների, մեր հանրապետության Իջևանի և Վրաստանի Օչեմչիրիի շրջանների աշխատավորները: Արդյունավետ համագործակցության լավ օրինակ են տալիս Հայաստանի Թումանյանի և Վրաստանի Ջեստաֆոնի շրջանների, մեր հանրապետության Շամշադինի և Ադրբեջանի Թովուզի շրջանների գյուղերի աշխատավորները: Մրցող տնտեսություններն ավանդաբար ամեն տարի փոխանցիկ դրոշներ են հանձնում առաջավոր տնտեսություններին:

Ընդլայնելով ու ամրապնդելով աշխատանքային կապերն ու փոխօգնությունը, փոխադարձաբար հարստանալով առաջավոր փորձով, գյուղի աշխատավորներն անգնահատելի ավանդ են ներդնում մեր ժողովուրդների եղբայրական ավանդական անխախտ բարեկամության ամրապնդման գործում:

Հանրապետության էկոնոմիկայի հաջողությունները կայուն բազա ստեղծեցին աշխատավորների նյութական ու հոգևոր բարիքների ավելացման համար: Ազգային եկամուտը Հայաստանում վերջին 10 տարում մեծացել է 2,3 անգամ: Նույն ժամանակամիջոցում ավելի քան 1,5 միլիոն քաղաքացիներ ստացել են նոր բնակարաններ և կամ բարելավել են բնակարանային պայ-

մանները: Միայն ութերորդ հնգամյակի տարիներին շահագործման է հանձնըվել ավելի քան 6 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն:

Բնակչության կենսամակարդակի բարձրացման կարևորագույն ցուցանիշ է նրա ռեալ եկամուտների աճը. այսպես՝ 1961—1969 թթ. ընկած ժամանակամիջոցում Հայաստանի բնակչության դրամական եկամուտներն ավելացել են 2,6 անգամ: Ակներև փոփոխություններ են տեղի ունեցել նաև կոլտնտեսային գյուղացիության կենցաղում: Անցած 50 տարում անճանաչելիորեն վերափոխվել են ո՛չ միայն Հայաստանի քաղաքները, այլև գյուղերը: Չկան այլևս կավաշեն խրճիթները, դրանց տեղ բարձրացել են բարեկարգ տներ: Էլեկտրականությունը, գազը, ռադիոն, հեռուստատեսությունը, հեռախոսը մտել են գյուղական կենցաղում: Այժմ ավարտվում է հանրապետության գյուղերի համատարած գազիֆիկացումը:

Հանրապետությունում լուրջ ուշադրություն է նվիրվում առողջապահությանը, աշխատավորների ֆիզիկական դաստիարակությանը: Բուժաշխատողների ջոկատը բաղկացած է 7,7 հազար բժշկից և ավելի քան 18 հազար միջին անձնակազմից: Բոլոր քաղաքներում ու գյուղերում կան հիվանդանոցներ, պոլիկլինիկաներ:

Զարգացած սոցիալիստական հասարակության նյութա-տեխնիկական բազան բնութագրվում է նաև գիտության ու կուլտուրայի բարձր մակարդակով: Կուլտուրական հեղափոխության շնորհիվ Հայաստանը դարձել է համատարած գրագիտության հանրապետություն, որտեղ յուրաքանչյուր երրորդ բնակիչը սովորում է: Ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում զբաղված յուրաքանչյուր 1000 մարդուց մոտ 700-ն ունի բարձրագույն, միջնակարգ և ոչլրիվ միջնակարգ կրթություն:

Հանրապետությունում, ինչպես և ողջ երկրում, լայնորեն զարգացել է գիտությունը: Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիան, որն ստեղծվել է 1943 թվականին, այժմ ունի ճանաչված գիտնականների մի մեծ ջոկատ: Հանրապետությունում գործում է մոտ 100 գիտա-հետազոտական հիմնարկություն, ուր զբաղված են մոտ 15 հազար գիտական աշխատողներ: Հայրենական գիտության զարգացման ոլորտում հանրահայտ է ավանդը մեր գիտնականների, մասնավորապես, այնպիսի ճանաչված գիտական հիմնարկությունների, ինչպիսիք են՝ Բյուրականի գիտական հետազոտություններով ու հայտնագործություններով համաշխարհային ճանաչում գտած Լենինի շքանշանակիր աստրոֆիզիկական աստղադիտարանը, Երևանի մաթեմատիկական մեքենաների ինստիտուտը, որտեղ ստեղծվում են առաջնակարգ էլեկտրահաշվիչ մեքենաներ, Երևանի էլեկտրոնային արագացուցիչը, նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտը և այլն:

Գիտության ըստ ամենայնի զարգացման նկատմամբ կուսակցության և կառավարության հսկայական հոգատարության վառ վկայությունը կարող են ծառայել նոր հետազոտական կենտրոնների ու լաբորատորիաների, կոնստրուկտորական բյուրոների կառուցման, դրանց ընդլայնման ու նյութատեխնիկական բազայի ամրապնդման, գիտական կադրերի պատրաստման համար կատարվող կապիտալ հատկացումները:

Ընթացիկ հնգամյակում այդ նպատակով կապիտալ ներդրումները գիտությունների ակադեմիայի գծով կաճեն 38 տոկոսով: Իսկ հանրապետությու-



# Օգնություն

## ԿՈՒՍՈՒՍՈՒՑՄԱՆ ՑԱՆՑԻ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏՆԵՐԻՆ ԵՎ ՈՒՆԿՆԴԻՐՆԵՐԻՆ

### ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՐՔՍ-ԼԵՆԻՆՅԱՆ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

## ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԳԻՏԱԿԱՆ ՀԻՄՔՆ Է *)

Ն. ԿԱՊՉԵՆԿՈ

**Միջազգային հարաբերությունների** *այժմեական պրոբլեմների գիտական մշակումը այն հրատապ խնդիրներից մեկն է, որը համաշխարհային զարգացման ընթացքը նորից ու նորից առաջ է քաշում մարքս-լենինյան գիտության առջև: ՍՄԿԿ-ն առաջնակարգ նշանակություն է տալիս տեսական աշխատանքի խորացմանը նաև հետազոտության այս բնագավառում:*

*Միջազգային հարաբերությունների, արտաքին քաղաքականության բնագավառը պատկանում է այն կարևորագույն ոլորտներին, որտեղ ծավալվում է պայքարը նոր հասարակական կարգի ամրապնդման համար, համաշխարհային սոցիալիզմի դիրքերի ամրացման համար: Այն երկու հակադիր հասարակական սիստեմների հակամարտության հիմնական ոլորտներից մեկն է: Ընդ որում, ավելի ու ավելի որոշակիորեն է դրսևորվում մեր ժամանակի միջազգային հարաբերությունների այն առանձնահատկությունը, որը դրսևորվում է բոլոր քիչ թե շատ կարևոր պրոցեսների վրա սոցիալիստական արտաքին քաղաքականության ներգործության դերի ու մասշտաբների օրինաչափ աճման մեջ:*

*Կյանքը, առանձնապես վերջին տարիների փաստերը, համոզիչ ապացուցում են, որ միջազգային հարաբերությունների ներկա էտապի բնույթը զգալի չափով ձևավորվում է սոցիալիստական արտաքին քաղաքականության ներգործությամբ: Այն հանդես է գալիս իբրև մի ուժ, որը կանխորոշում է միջազգային զարգացման խորքային տենդենցները և վերջին հաշվով ապահովում է խաղաղության և ժողովուրդների անվտանգության պահպանման ու ամրապնդման բարենպաստ հեռանկարները:*

●

**Սոցիալիստական** *համագործակցության երկրների վիթխարի հաջողությունները համաշխարհային ասպարեզում պայմանավորված են մի շարք օբ-*

* Տպագրվում է որոշ համառոտումներով — Խմբ.:

վում էր աշխատանքի և կապիտալի միջև եղած հարաբերություններով, որոնք ամեն մի բուրժուական պետության մեջ էլ եղել են միևնույնը։ Դա պայմանավորում էր պրոլետարական քաղաքականության ինտերնացիոնալ բնույթը, որի սկզբունքներն ու նպատակները ամենուր միատեսակ են։

Պրոլետարական միջազգային քաղաքականության, սոցիալիստական պետության արտաքին քաղաքականության այդ նախատիպի, առանձնահատկությունն այն էր, որ նա զերծ էր նեղ դասակարգային սահմանափակվածության գծերից։ Որքանով բանվոր դասակարգի շահերը չեն հակասում աշխատավորների մյուս խավերի շահերին, այլ միաձուլվում են նրանց հետ, այդքանով նրա քաղաքականությունը և նրա շահերը միջազգային հարաբերությունների ոլորտում արտահայտել և արտահայտում են ազգի շահերն ամբողջությամբ վերցրած (իհարկե, եթե դրանք ճիշտ հասկացվեն և մեկնաբանվեն)։ Միջազգային քաղաքականության բնագավառում պաշտպանելով իր նպատակները, բանվոր դասակարգը ո՛չ միայն չէր նեղացնում իր բնական դաշնակիցների շրջանը, այլ, ընդհակառակը, նրանց գրավում էր իր կողմը, ընդլայնում ժողովուրդների հարաբերություններում արդարացի, դեմոկրատական սկզբունքներ հաստատելու համար մղվող պայքարի սոցիալական բազան։

Հիմնավորելով այն դրույթը, որի համաձայն սոցիալիստական արտաքին քաղաքականության նպատակը խաղաղությունն է, Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը առաջ քաշեցին նաև նրա բովանդակությունը որոշող հիմնարար սկզբունքը՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմը։ Իհարկե, գռեհիկ պարզեցում կլիներ բանը ներկայացնել այնպես, թե նրանք, դեռ նախքան աշխարհում առաջին սոցիալիստական պետության առաջացումը, կարող էին ստեղծել սոցիալիստական արտաքին քաղաքականության և սոցիալիստական միջազգային հարաբերությունների ամբողջական և ավարտուն տեսություն։

Սոցիալիստական արտաքին քաղաքականության գիտական տեսություն ստեղծելու պատմական միսիան բաժին ընկավ կոմունիստական կուսակցության և սովետական պետության հիմնադիր Վ. Ի. Լենինին։ Նա ո՛չ միայն ստեղծեց այդ տեսությունը, այլև բացառիկ դժվարին միջազգային պայմաններում անգերազանցելի հմտությամբ ղեկավարեց երիտասարդ սոցիալիստական պետության արտաքին քաղաքականության գործնական իրականացումը։ Սոցիալիստական արտաքին քաղաքականության տեսության ու պրակտիկայի զարգացման լենինյան էտապն առանձնահատուկ տեղ է գրավում համաշխարհային սոցիալիզմի, միջազգային հարաբերությունների ընդհանուր պատմության մեջ։

Հենվելով Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի ստեղծած մեթոդոլոգիական ու տեսական բազայի վրա, Վ. Ի. Լենինը որոշեց կոմունիստական կուսակցության և սովետական պետության արտաքին քաղաքական գործունեության գլխավոր ուղղությունները, մշակեց այն հիմնական սկզբունքներն ու նպատակային դրույթները, որոնք ուղեցույց դարձան սոցիալիզմի արտաքին քաղաքականության համար, մշակեց սոցիալիստական դիվանագիտության մեթոդները։ Վ. Ի. Լենինի առաջ քաշած սկզբունքային դրույթներն ու նրա գործնական ցուցումները դարձան սոցիալիստական արտաքին քաղաքականության գիտատեսական անխախտ հիմքը։ Դա, ամենից առաջ, վերաբերում է կարևորագույն այնպիսի հարցերի առթիվ արված ցուցումներին, ինչպիսիք են՝ սոցիալիստական երկրների փոխհարաբերությունների բնույթը, վերաբերմունքը դեպի կապիտալիստական պետությունների աշխատավորների հեղափոխական պայքարը և ազգային ազատագրական շարժումը, կապիտալիզմի երկրների հետ հարաբերությունների սկզբունքները։

Միջազգային կյանքի երևույթները գնահատելիս, սովետների երկրի արտաքին քաղաքականության գործնական հարցերը լուծելիս Վ. Ի. Լենինը դրանց համար անկյունաքար էր դարձնում դասակարգային չափանիշի կիրառումը։ Հստակ պատասխան տալ այն հարցերին, թե ո՛ր դասակարգը ինչում է շահագրգռված միջազգային «ուժախաղում», որո՛նք են նրա նպատակները,



ինչպիսի՛ հնարավորություններ ունի հակամարտ դասակարգերից յուրաքանչյուրը տվյալ պահին, կոնկրետ իրադրության մեջ, ինչպիսի՛ք են հակամարտության հեռանկարները, այսինքն՝ դասակարգերից որը հեռանկար ունի ուժեր կուտակելու և, հետևաբար, հաղթանակ նվաճելու և որը, ընդհակառակը, պարտություն կրելու, ինչպիսի կոնկրետ քայլեր է հարկավոր նախաձեռնել տվյալ պահին՝ ապահովելու համար հաղթանակի իրականացումը նվազագույն ծախքերով,— ահա մոտավորապես վերլուծության խնդիրները։ Գիտական լինելու և, հետևաբար, գործնական արդյունքների հասնելու համար, մատնանշում էր Վ. Ի. Լենինը, այդ վերլուծությունը պետք է հաշվի առնի «...բոլոր պետություններում բոլոր դասակարգերի ռեալ ուժերի հարաբերակցությունը» (Երկեր, հ. 33, էջ 166)։ Իսկ ճիշտ նա կարող է լինել միայն այն դեպքում, եթե լիովին համապատասխանում է օբյեկտիվ իրականությանը։

Միայն այդպիսի վերլուծությունն է տալիս միակ հուսալի բանալին՝ որոշելու պայքարի այս կամ այն էտապի առանձնահատկությունները, բացահայտելու նրա հեռանկարները։ «...Բոլոր հեղափոխությունների պատմության ամբողջ փորձը մեզ սովորեցնում է, որ երբ մենք գործ ունենք ամեն տեսակ մասսայական շարժման կամ դասակարգային պայքարի հետ, մանավանդ այնպիսի պայքարի հետ, ինչպիսին է ներկա պայքարը, որը ծավալվում է ո՛չ միայն մի, թեկուզ հսկայական երկրի ամբողջ տարածության վրա, այլև ընդգրկում է միջազգային բոլոր հարաբերությունները,— այդ դեպքում անհրաժեշտ է մեր տակտիկայի հիմքում դնել նախ և առաջ ու ամենից ավելի օբյեկտիվ դրության հաշվառումը...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 27, էջ 197)։ Կոնկրետ իրադրության կոնկրետ վերլուծություն— մարքս-լենինյան գիտության այս պահանջը նշանակում է, որ այսօրվա պայմաններում, երբ գոյություն ունի սոցիալիստական համագործակցությունը, դրա մեջ մտնող երկրներից ոչ մեկը հնարավորություն չունի լիովին բավարարելու իր պահանջմունքները, առանց հաշվի առնելու ամբողջ իրականությունը, աշխարհի դասակարգային ուժերի ամբողջ միագումարը, այդ թվում և դիմադրության այն հնարավորությունները, որ ունի հակառակորդը։

Պրակտիկան, պատմական փորձը հասարակական զարգացման այս կամ այն տեսության ճշտության կամ անճշտության միակ օբյեկտիվ դատավորն է։ Այդ դատավորը կայացրել է իր վճիռը. մարքսիզմ-լենինիզմն այն տեսությունն է, որի դրույթներն արտացոլում են մարդկային հասարակության զարգացման գլխավոր օրինաչափությունները ո՛չ միայն որևէ կոնկրետ ժամանակահատվածում կամ դարաշրջանում, այլ ընդհանուր առմամբ։ Եվ, քանի որ դրանք գլխավոր օրինաչափություններ են, ապա դրանք ճիշտ են այսօր, ճիշտ են եղել տասնյակ տարիներ առաջ և ճիշտ կլինեն առաջիկայում։

Գիտական կոմունիզմի հակառակորդներն անզոր էին հերքելու այն փաստը, որ դիալեկտիկական և պատմական մատերիալիզմը միայն ի վիճակի գտնվեց քաղաքականությունը, ինչպես և միջազգային քաղաքականությունը, բարձրացնելու գիտության մակարդակի։ Նրանք չեն կարող ժխտել մարքս-լենինյան տեսության, մասնավորապես միջազգային հարաբերությունների վերաբերյալ մարքս-լենինյան գիտության կենսական ուժը։ Այսպես, միջազգային հարաբերությունների տարբեր տեսությունների քննարկմանը նվիրված գրքում ամերիկացի հետազոտողներ Ջ. Դուգերտին և Ռ. Պֆալցգրաֆը խոստովանում են. «Մեր մոլորակի հսկայական տարածություններում իմպերիալիզմի, սոցիալական հեղափոխական բախումների և միջազգային պատերազմների բացատրություն տվող տեսություններից մտավորականների շրջանում ամենից ավելի հանրաճանաչը այն տեսությունն է, որը բխում է Կարլ Մարքսի փիլիսոփայական սիստեմից... Այդ տեսության գլխավոր բաղկացուցիչ մասերը ծնվել են ավելի քան հարյուր տարի սրանից առաջ, դրանք սկզբնավորվել են 1848 թվականին։ Սակայն նա ցուցադրեց հիանալի ընդունակություն՝ գոյատևելու նաև մեր դարի երրորդ քառորդում, որն այնքան խիստ քննադա-

տաբար է վերաբերվում անցյալից ժառանգած աբստրակցիաներին»: Մարքսիզմը, տհաճությամբ խոստովանում են հեղինակները, «պահպանվեց»[1]:

Ինչպես տեսնում ենք, իմպերիալիզմի ջատագովներն անգամ ստիպված են խոստովանել, որ կոմունիզմի տեսությունը գործողության գիտական ուղեցույց է միջազգային քաղաքականության ոլորտում, և այն ունի անանցողիկ նշանակություն, ընդ որում, ոչ միայն «մտավորականների», այլ բազմամիլիոն աշխատավոր զանգվածների համար:

Նմանօրինակ խոստովանությունն առավել ևս պերճախոս է, եթե նկատի ունենանք, որ բուրժուազիան, սկսած այն ժամանակից, ինչ անցել է իշխանության գլուխ, չի կարողացել առաջադրել ոչ մի տեսություն, որը դիմանար պրակտիկայի գոնե երկարատև փորձությանը: Թերևս, միակ «բարձրագույն իմաստությունը», որին կարողացել է մտահանգել բուրժուական դասակարգը իմպերիալիստական ստադիայում, սոցիալ-ռեֆորմիստների ակտիվ օգնությամբ ժողովուրդներին պարտադրվող այն թեզն է, թե իբր արտաքին քաղաքականության բնագավառում գոյություն ունի բուրժուական հասարակության բոլոր դասակարգերի և հասարակական խավերի «շահերի ներդաշնակություն»: Բուրժուական շատ քաղաքագետներ համառորեն չեն ցանկանում համաձայնել անվիճելի ու ակնհայտ այն փաստի հետ, որ հնարավոր չէ արտաքին քաղաքականությունը կտրել ներքին քաղաքականությունից:

Մարքսիզմ-լենինիզմի ծառայությունն այն է, որ նա վճռականորեն մերկացրեց կապիտալիստական պետության արտաքին քաղաքականության դասակարգային բնույթը մթագնելու ամեն մի փորձ: Դասակարգերի բաժանված հասարակության մեջ «արտադասակարգային» կամ «վերդասակարգային» արտաքին քաղաքականությունը նույնքան անհնար է, որքան և ներքին քաղաքականությունը:

Անշուշտ, սոցիալիզմի երկրները ևս միջազգային ասպարեզում հետևողականորեն պաշտպանում են իրենց տիրապետող դասակարգերի շահերը՝ աշխատավորների շահերը: Նրանք հստակ ջրբաժան գիծ են անցկացնում դասակարգային ճակատում: Նրանց արտաքին քաղաքականությունը ենթարկված է սոցիալիզմի դիրքերը ամրապնդելու նպատակներին, այն ծառայում է համաշխարհային հեղափոխական պրոցեսի հետագա ծավալման ու խորացման, խաղաղության և սոցիալական առաջընթացի շահերին: Սոցիալիստական արտաքին քաղաքականությունը հետևողական հեղափոխական քաղաքականություն է, նրա սկզբունքային բնույթը չի փոխվում այն բանից, որ սոցիալիզմի երկրները համաձայնագրեր են կնքում կապիտալիստական պետությունների հետ, քանի որ արդի դարաշրջանում չկա և չի կարող լինել ուրիշ ռացիոնալ և ռեալիստական ուղի միջազգային պրոբլեմների լուծման համար:

Երկու սիստեմների առկայության պայմաններում սոցիալիստական երկրների արտաքին քաղաքականությունն ուղղված է այն նպատակին, որպեսզի կապիտալիզմի և սոցիալիզմի միջև եղած ամենախոր հակասությունները չլուծվեն պատերազմի միջոցով: Ինչ վերաբերում է իմպերիալիստական շրջաններին, ապա դրանք, իրենց կողմից, ստիպված լինելով կոմպրոմիսի, համաձայնության դիմելու սոցիալիզմի երկրների հետ, ամենևին չեն հրաժարվում ուժից ու ճնշումից՝ որպես իրենց նպատակներին հասնելու միջոցի, արխիվ չեն նետում պատերազմը՝ որպես իրենց քաղաքականության գործիք: Հենց այդ է վկայում ամերիկյան ագրեսիան Հնդկաչինում, որտեղ մի քանի տարի շարունակ ԱՄՆ-ի իմպերիալիզմը փորձում է բարբարոսական մեթոդներ կիրառելու միջոցով հասնել իր ռազմա-քաղաքական նպատակներին:

Միաժամանակ ավելի ցայտուն են երևան գալիս երկու սիստեմների միջև ուժերի հարաբերակցության արմատական փոփոխման հետևանքները, որը տեղի է ունենում անընդհատ և առանձին պարզորոշությամբ դրսևորվեց 70-ական թվականների սահմանագծում: Այդ փոփոխությունը պայմանավորված է

[1] James E. Dougherfy, Robert L. Ptalsgraff, Jr. Contending Theories of International Relations. Philadelphia-New York-Toronto, 1971, pp. 172-173.



սոցիալիստական կարգի հետագա ամրապնդմամբ, էկոնոմիկայի, կուլտուրայի, գիտության, տեխնիկայի զարգացման գործում սոցիալիզմի երկրների ձեռք բերած հաջողություններով, ռազմական բնագավառում կատարված տեղաշարժերով: Այն կապված է նաև ազգային-ազատագրական շարժման հաջողությունների հետ, զարգացող պետությունների միջազգային դիրքերի ամրապնդման, առաջադիմական վերափոխումների ուղիով ընթացող երկրների նվաճումների հետ: Աշխարհում ուժերի տեղաբաշխման վրա էականորեն ազդում է բանվորական շարժման զարգացումը կապիտալի երկրներում. տարեցտարի այն դառնում է ավելի ու ավելի հուժկու, կազմակերպված և քաղաքականապես գիտակից: Միևնույն ժամանակ կապիտալիզմի դիրքերի թուլացմանը նպաստում է հակասությունների սրումը հենց իմպերիալիստական լագերում, ըստ որում հին հակասություններին ավելանում են նորերը, որոնք ծնունդ են առնում գիտա-տեխնիկական հեղափոխության և իմպերիալիստական պետությունների միջև ուժերի տեղաբաշխման գործում տեղի ունեցող փոփոխությունների հետևանքով:

●

**Այն սկզբունքները**, որոնցով ղեկավարվում է սոցիալիզմի արտաքին քաղաքականությունը, ապացուցել են իրենց կենսականությունը պատմական մի ամբողջ ժամանակաշրջանի ընթացքում: Այդ սկզբունքները բխում են սոցիալիստական քաղաքականության դասակարգային բնույթից, դասակարգային նպատակներից, ծառայում են որպես նրա հիմնական խնդիրների անփոփոխության կոնկրետ արտահայտություն:

Բնական է, որ սոցիալիստական համագործակցության երկրներից յուրաքանչյուրի արտաքին քաղաքականությունն ունի իր առանձնահատկությունները, որոնք պայմանավորված են պատմական, աշխարհագրական և այլ հանգամանքներով: Սակայն, դրանք չեն, որ որոշում են քաղաքականության էությունը. ավելին, այդ առանձնահատկությունները բեկվում են նրա դասակարգային բովանդակության միջով, ենթարկված են նրան: Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ ազգային առանձնահատկությունների չափից ավելի ընդգծումը, հեռացումը սոցիալիզմի երկրների արտաքին քաղաքական ընդհանուր խնդիրներից, առավել ևս այդ արմատական խնդիրները նեղ հասկացված ազգային շահերին ենթարկելու ձգտումը կարող են միայն վնաս հասցնել ընդհանուր գործին, առաջին հերթին, նման ուղու վրա կանգնող երկրի շահերին: Եվ սոցիալիստական պետությունների արտաքին քաղաքականության համար պահպանում է իր այժմեականությունը Վ. Ի. Լենինի տված բնորոշումը. «Մանրբուրժուական նացիոնալիզմը ինտերնացիոնալիզմ է հայտարարում ազգերի իրավահավասարության ճանաչումը և միայն այդքանը (էլ չխոսելով այն մասին, որ այդ ճանաչումը զուտ խոսքով ճանաչում է), անձեռնմխելի թողնելով ազգային էգոիզմը, այնինչ պրոլետարական ինտերնացիոնալիզմը պահանջում է, նախ՝ մի երկրում պրոլետարական պայքարի շահերը ենթարկել այդ պայքարի ընդհանուր շահերին համաշխարհային մասշտաբով. երկրորդ՝ բուրժուազիայի դեմ հաղթանակն իրագործող ազգից պահանջում է հանուն միջազգային կապիտալի տապալման մեծագույն ազգային զոհաբերությունների դիմելու ընդունակություն և պատրաստակամություն» (Երկեր, հ. 31, էջ 170):

Սոցիալիստական պետությունների արտաքին քաղաքական գործունեության կուտակված փորձը հաստատեց այդ պահանջները պահպանելու մեծագույն կարևորությունը: Նա ապացուցեց աշխատավորների ազգային և ինտերնացիոնալ շահերի անխզելի կապի մասին մարքս-լենինյան դրույթի ճշմարտացիությունը: Կ. Մարքսը գրել է. «Արհամարհական վերաբերմունքը դեպի եղբայրական այն դաշինքը, որ պիտի գոյություն ունենա տարբեր երկրների բանվորների միջև և նրանց դրդի իրենց ազատագրական պայքարում ամուր պաշտպանել միմյանց, պատժվում է նրանց ցաքուցրիվ ճիգերի ընդհանուր պարտությամբ» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. I, Հայպետհրատ,

իրադրության համեմատ ընդունելով ամենատարբեր ձևեր։ Խաղաղ գոյակցության լենինյան կոնցեպցիան և դրանից բխող քաղաքականությունը տոգորված են ընդդեմ իմպերիալիզմի տեղի ունեցող ակտիվ հարձակման ոգով։

Խաղաղ գոյակցության քաղաքականության պրակտիկ իրագործման եղանակները որոշվում են ո՛չ պետական գործիչների կամ կուսակցությունների սուբյեկտիվ ցանկություններով։ Սովետական Միության արտաքին քաղաքականության ավելի քան կեսդարյա փորձը ցույց է տվել, որ յուրաքանչյուր կոնկրետ ժամանակահատվածում դրանք պայմանավորված են, ամենից առաջ, օբյեկտիվ գործոններով, որոնցից կարևորագույնն է ուժերի հարաբերակցությունը երկու սիստեմների միջև։

Սովետական իշխանության սկզբնական էտապներում, ինչպես նաև երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտին հաջորդած բավական երկարատև մի ժամանակամիջոցում խաղաղ գոյակցությունը եղել է որոշակի տենդենց, բայց դեռ վճռականորեն չէր ազդում համաշխարհային իրադարձությունների ընթացքի վրա։ Իմպերիալիզմի ուժերը սանձազերծեցին մի ամբողջ շարք պատերազմներ, ներառյալ և ամենաարյունալի երկրորդ համաշխարհային պատերազմը, և կանխել դրանք չհաջողվեց։

Հետագայում, սակայն, կապիտալիզմի և սոցիալիզմի միջև ուժերի հարաբերակցության փոփոխության շնորհիվ ստեղծվեց այնպիսի մի դրություն, երբ խաղաղ գոյակցության քաղաքականությունը տենդենցից վերածվեց միջազգային զարգացման իրական գործոնի։ Ոչ թե խաղաղության և արդարության նկատմամբ տածած սիրուց, այլ ինքնապահպանման նկատառումներով է, որ իմպերիալիստները ստիպված են ճանաչել ու ընդունել այն։

Միանգամայն հասկանալի է, որ առաջին հերթին այն ճանաչեցին ու ընդունեցին նրանք, ովքեր կանգնած էին ռեալիստական դիրքերի վրա։ Հենց այդ էր նախատեսում մարքս-լենինյան գիտությունը միջազգային հարաբերությունների մասին, սոցիալիստական երկրների արտաքին քաղաքական պրակտիկան կողմնորոշելով դեպի խաղաղ գոյակցության սկզբունքի հաստատման համար մղվող պայքարը։ Այժմ արդեն կարելի է բերել պրակտիկայում նրա արմատավորման մի շարք օրինակներ։ Բավական է վկայակոչել ՍՍՀՄ և Ֆրանսիայի հարաբերությունները, ՍՍՀՄ և Ֆինլանդիայի հարաբերությունները, մյուս օրինակները։ Վերջին ժամանակներում ժամանակակից կապիտալիզմի առաջատար երկրի՝ Ամերիկայի Միացյալ Նահանգների կառավարող շրջաններում ևս հակում է նկատվում Սովետական Միության հետ հարաբերությունները կառուցելու խաղաղ գոյակցության սկզբունքի վրա, որն արտացոլվեց ԱՄՆ-ի պրեզիդենտ Ռ. Նիքսոնի՝ մեր երկիրը կատարած այցելության ժամանակ ստորագրված սովետա-ամերիկյան փաստաթղթերում։

Դժբախտաբար, առայժմ ստիպված ենք արձանագրել, որ Արևմուտքի իմպերիալիստական հրամանատարները դեռ լրիվ ծավալով չեն ճանաչել այդ սկզբունքը։ Խոսքով ընդունելով խաղաղ գոյակցությունը, նրանք իրենց արտաքին քաղաքական պրակտիկայում այդ սկզբունքը զուգակցում են ագրեսիայի, ուրիշ ժողովուրդների ներքին գործերին միջամտելու ակտերի հետ, ազգային-ազատագրական շարժումը ուժով ճնշելու փորձերի հետ։ Սոցիալիստական պետությունները անկոմպրոմիս պայքար են մղում մինչև վերջը լուծելու պատմական կարևորություն ունեցող մի խնդիր՝ տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը իմպերիալիստական տերությունների կառավարող շրջաններին պարտադրելու խնդիրը։

Այդ խնդրի հաջող լուծման համար կան օբյեկտիվ պայմաններ։ Կարևորագույն նախադրյալ է սոցիալիզմի երկրների միասնության ամրապնդումը, համաշխարհային հեղափոխական պրոցեսի երեք հիմնական հոսանքների՝ համաշխարհային սոցիալիստական սիստեմի, միջազգային բանվորական շարժման, ազգային ազատագրության ուժերի դաշինքի ամրապնդումը։

•

Սոցիալիստական արտաքին քաղաքականության գիտական բնույթը կան-



խորոշված է սոցիալիստական կարգի առաջադիմական բնույթով։ Պատահական չէ, որ բուրժուական ֆորմացիան, առավել ևս դրան նախորդած շահագործողական ֆորմացիաները, չեն կարողացել մշակել իրենց քաղաքականության իսկական գիտական հիմունքները։

Պատճառներն այստեղ սուբյեկտիվ գործոնները չեն, ոչ էլ արտաքին քաղաքական տարբեր կոնցեպցիաների համար գիտական բազա ստեղծելու փորձերի բացակայությունը, այլ օբյեկտիվ պայմաններն են։ Բուրժուազիան ի վիճակի չէ ստեղծելու ավարտուն, կուռ, տրամաբանական գիտություն միջազգային հարաբերությունների մասին (ինչպես առհասարակ հասարակական գիտություն) պարզապես այն պատճառով, որ ի վիճակի չէ ժխտելու իր «գոյության իրավունքը», ընդունելու իր պատմական դատապարտվածությունն ու պրոլետարիատի հաղթանակի անխուսափելիությունը։

Հատկանշական է, որ վերջին ժամանակներս կապիտալիստական աշխարհի շատ ներկայացուցիչներ ցանկություն են հայտնում արտաքին քաղաքականության համար ստեղծել ինչ-որ մի գիտական բազա։ Բայց դա ցանկություններից այն կողմ չի անցնում, ասենք չի էլ կարող անցնել։ Նույն ներկայացուցիչները ցավով խոստովանում են, որ անգամ խոշորագույն իմպերիալիստական տերությունների արտաքին քաղաքականությունն աշխարհում տեղի ունեցող փոփոխությունների ռեակցիան է միայն (ընդ որում, հաճախ ուշացած ռեակցիա)։ Այդ քաղաքականությունը չի կարող գիտական լինել այն ծնած կարգի դասակարգային բնույթի պատճառով, քանի որ դրա խընդիրները չեն համապատասխանում, այլ, ընդհակառակը, հակասում են հասարակական զարգացման օբյեկտիվ օրենքներին։ Աշխարհում տեղի են ունեցել և տեղի են ունենում արմատական փոփոխություններ, հեղաբեկվում է երկրների ու ժողովուրդների հարաբերությունների նախկին ողջ սիստեմը, իսկ իմպերիալիզմի ուժերը ձգտում են կասեցնել այդ անխուսափելի և անդառնալի պրոցեսները։ Եվ ի՞նչ գիտական բազա կարող է ունենալ ագրեսիայի, ճընշման ու միջազգային բռնության քաղաքականությունը։ Ինչպես նշվեց կուսակցության XXIV համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, «անցած հնգամյակում իմպերիալիզմի արտաքին քաղաքականությունը տվեց նրա ռեակցիոն, ագրեսիվ բնույթի անփոփոխության նոր ապացույցներ» («ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը», էջ 19)։

Ճիշտ է, վերջին ժամանակաշրջանում իմպերիալիզմի գաղափարախոսներն առաջ են քաշել ոչ քիչ թվով արտաքին քաղաքական դոկտրիններ ու կոնցեպցիաներ։ Բայց կարելի՞ է արդյոք դրանք դիտել որպես կապիտալիստական երկրների արտաքին քաղաքականության գիտական հիմք։ Իհարկե, ոչ։ Լավագույն դեպքում դրանք արտացոլում են այս կամ այն պետության պրագմատիկ պահանջները, ընթացիկ արտաքին քաղաքական նպատակները, և դրանց հարատևությունը շատ հարաբերական է։ Բոլորովին պատահական չէ, որ ԱՄՆ-ի նման մի երկրի արտաքին քաղաքականության մեջ մենք նկատում ենք արտաքին քաղաքական մի դոկտրինան մի այլ դոկտրինայով փոխարինելու պերմանենտ պրոցես։ Յուրաքանչյուր նոր պրեզիդենտ անհրաժեշտ է համարում ձևակերպել սեփական արտաքին քաղաքական դոկտրինան։ Սակայն դոկտրինաները փոխվում են, իսկ ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության բնույթը, նրա էությունը մնում են անփոփոխ։

Սոցիալիզմի միջազգային քաղաքականության գիտական հիմքերի հարցը քննարկելիս չի կարելի լռության մատնել արտաքին քաղաքականության և գաղափարախոսության հարաբերակցության պրոբլեմը։ Այս բնագավառը ենթարկվել և ենթարկվում է առանձնահատուկ ֆալսիֆիկացիայի՝ բուրժուական «սովետագետների» կողմից։ Համոզվելով, որ ապարդյուն են իրենց փորձերը՝ Սովետական Միության հետ «խաղաղ գոյակցելու» համաձայնության դիմաց սկզբունքային, գաղափարախոսական բնույթի զիջումներ կորզել նրանից, իմպերիալիզմի քաղաքական ստրատեգներն ու տակտիկներն աշխատում են մարքս-լենինյան գաղափարախոսությունն արհեստականորեն հակադրել սո-

ցիալիզմի երկրների պետական և ազգային շահերին. այժմ այդ ճիգերը դարձել են, թերևս, գաղափարախոսության և արտաքին քաղաքականության հարաբերակցության բուրժուական խեղաթյուրումների գլխավոր ուղղությունը: Ընդսմին, բուրժուական գիտնականներն ամեն կերպ սքողում են այն օբյեկտիվ փաստը, որ նման հակասություններ չկան և չեն կարող լինել, քանի որ մարքսլենինյան գաղափարախոսությունը միշտ էլ, լինի դա ներքին, թե արտաքին քաղաքականության հարցերում, արտահայտում է աշխատավորների արմատական շահերը: Այն լիովին ներդաշնակում է նաև սոցիալիզմի երկրների պետական շահերին:

Բուրժուական քաղաքագիտության ուղղություններից մեկն էլ փորձում է պնդել, թե, իբր, ժամանակակից աշխարհում ընկնում է գաղափարախոսության դերը, այնինչ իրականում այն մեծանում է: Դա վերաբերում է նաև միջազգային հարաբերությունների ոլորտին: Եթե փաստերը չխեղաթյուրենք և աչք չփակենք դրանց առաջ, ապա անխուսափելի է մի հետևություն — միջազգային հարաբերությունների ապագաղափարայնացումը հերյուրանք է: Փաստերը ցույց են տալիս, որ, օրինակ, համաշխարհային այնպիսի հրատապ պրոբլեմներ, ինչպիսիք են՝ զինաթափումը, գաղութատիրության վերացումը, ուղիների ընտրությունը զարգացող երկրների կողմից և այլն, կապված են գաղափարախոսական ամենասուր պայքարի հետ: Ուստի «գաղափարախոսության ներգործության ոլորտի կրճատման» մասին դատողությունները ո՛չ միայն անհամոզիչ են, այլև իրականության կեղծում:

Ի վիճակի չլինելով ժխտել Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների արտաքին քաղաքականության հանրահայտ հաջողությունները, ակամա խոստովանելով այդ քաղաքականության սկզբունքների հսկայական ձգողական ուժը, մեր գաղափարական հակառակորդները ջանում են ապացուցել, թե, իբր, Սովետական Միությունը թեպետ «խոշոր նվաճումների» է հասել միջազգային-քաղաքական ասպարեզում, բայց, այնուամենայնիվ, հեռու է այն «նախասկզբնական գաղափարախոսական մղումների ու նպատակների» իրականացումից, որոնք եղել են նրա արտաքին քաղաքական գործունեության հիմքը՝ սովետական իշխանության հռչակման առաջին ժամանակաշրջանում: Ամերիկացի սովետագետ Վ. Ասպատուրյանը սովետական արտաքին քաղաքականությանը նվիրված իր հետազոտության մեջ գրում է. «Աշխարհը վերափոխելու փոխարեն վերափոխվեց ինքը՝ Սովետական Միությունը»: Նա, փիլիսոփայում է այդ հետազոտողը, իբր դարձել է այնպիսի մի պետություն, որը շահագրգռված է պահպանել և կայունացնել ստատուս-քվոն[1]:

Նման դատողություններն ակնհայտորեն ծնվել են մի հույսից — վարկաբեկել մեր արտաքին քաղաքականության հետևողականորեն հեղափոխական կուրսը, այն ներկայացնել իբրև մի պահպանողական ուժ, որը ձգտում է հավերժացնել այժմ աշխարհում գոյություն ունեցող սոցիալական հարաբերությունները: Նման կեղծիքը, իհարկե, ոչ ոքի չի կարող համոզել: Ոչ թե Սովետական Միությունը, այլ իմպերիալիստական տերություններն են փորձում, և ընդսմին ապարդյուն, պահպանել ներկայիս սոցիալ-քաղաքական ստատուս-քվոն, քանի որ աշխարհում տեղի ունեցող փոփոխություններն ընթանում են այնպիսի ուղղությամբ, որը խարխլում է կապիտալիզմի հիմքերը:

Իսկ ինչ վերաբերում է Սովետական Միությանը, եղբայրական սոցիալիստական պետություններին, ապա նրանց արտաքին քաղաքականությունն ամբողջովին հեղափոխական է: Իր բոլոր ասպեկտներում, բոլոր էտապներում և ուղղություններում այն նպաստում է սոցիալական առաջադիմության համար առավել նպաստավոր պայմանների ստեղծմանը:

Международная жизнь, 1972, № 9.

[1] Տես Vernon Aspaturian. Process and Power in Soviet policy. Boston, 1971. p. 89.

---



# ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼՈՒ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ*

Մ. ՄԵԼՆԻԿ

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման արդի փուլը բնորոշվում է, ամենից առաջ, գիտատեխնիկական առաջընթացի բարձր տեմպերով, որը վերաճում է գիտատեխնիկական հեղափոխության: Այդ հեղափոխության հիմնական գծերն են՝ գիտության և արտադրության սերտ ինտեգրացիան և գիտության վերածվելը հասարակության անմիջական արտադրաուժի, աշխատանքի գործիքների բնույթի փոփոխումը, դրանց նախկինում գոյություն ունեցող երեք տարրերի (շարժիչների, փոխանցիչների և բանվորական մեխանիզմների) հետ մեկտեղ այժմ երևան է եկել նաև չորրորդ՝ կառավարող մեխանիզմը, օգտագործվող հումքի մեջ սինթետիկ նյութերի ավելացումը, արտադրության էներգետիկ բազայի փոփոխումը, դրանում սկզբունքորեն նոր տեխնոլոգիական պրոցեսների արմատավորումը: Սովետական էկոնոմիկայի զարգացման ներկայիս պայմանները տարբերվում են նաև արտադրության մասշտաբների շեշտակի ընդլայնմամբ և դրա կապերի բարդացմամբ, թողարկվող արտադրանքի տեսականու մեծացմամբ, արտադրության առավել համակենտրոնացմամբ և մասնագիտացման կատարելագործմամբ, նրա ավելի ռացիոնալ տեղաբաշխմամբ, կադրերի որակավորման և գիտատեխնիկական մակարդակի զգալի բարձրացմամբ:

Նշված բոլոր հանգամանքներն էլ հենց կանխորոշեցին տնտեսական ղեկավարության այնպիսի նոր մեթոդների մշակման ու գործադրման անհրաժեշտությունը, որոնք առավել կնպաստեն գիտատեխնիկական առաջընթացի արագացմանն ու նրա արդյունքների արդյունավետ օգտագործմանը: Այդ մեթոդների հիմքերը դրվեցին ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումի որոշումներում և այնուհետև հավանության արժանացան կուսակցության XXIII համագումարի կողմից:

Ղեկավարման լենինյան սկզբունքների հիման վրա ժողովրդական տնտեսության կառավարման կատարելագործման, պլանավորման գիտական մակարդակի բարձրացման ծավալուն ծրագիր է պարունակվում կուսակցության XXIV համագումարի որոշումներում: Համագումարը նշեց, որ կառավարման և պլանավորման սիստեմների ու մեթոդների կատարելագործումը պետք է ուղղված լինի, ամենից առաջ, հասարակական արտադրության բազմակողմանի ինտենսիվացումն ապահովելուն և նրա արդյունավետությունը բարձրացնելուն, որը, ինչպես առաջիկա տարիներին, այնպես էլ երկարատև հեռանկարի ընթացքում երկրի տնտեսական զարգացման հիմնական գիծն է,

* Տպագրվում է որոշ համառոտումներով:— Խմբ.:

կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման կարևորագույն պայմանը: Այդ ցուցումը սահմանում է տնտեսական ղեկավարման սիստեմի հետագա բարելավման խնդիրները, որոնց լուծումը ենթադրում է առաջադրված նպատակներին հասնելու եղանակների մշակում, կառավարման ու պլանավորման կազմակերպման այնպիսի կատարելագործում, որը կոչված է նպաստելու օպտիմալ լուծումների ընտրությանը, դրանց կատարման ճշգրիտ կազմակերպմանը, կադրերի ընտրության ու կառավարման ապարատում դրանց տեղաբաշխման բարելավմանը, արտադրության արդյունավետության բարձրացման խթանմանը և կոլեկտիվների կողմից ընդունվող պարտավորությունների կատարման համար պատասխանատվության միաժամանակյա ուժեղացմանը:

Կառավարման և պլանավորման սիստեմի կատարելագործման հարցի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները հիմնականում հանգում են՝ հեռանկարային պլանավորման կատարելագործմանը, ինչը հնարավորություն կտա ավելի լավ լուծելու ստրատեգիական, տակտիկական ու օպերատիվ խնդիրները՝ հաշվի առնելով և առաջնորդվելով էկոնոմիկայի զարգացման գլխավոր նպատակների իրականացմամբ. այնպիսի լավագույն որոշումների ընդունման ապահովմանը, որոնք հնարավորություն տան հասնելու առավելագույն արդյունքների՝ հասարակական քիչ աշխատանք ծախսելով. ղեկավարման կատարելագործմամբ. ղեկավարումը ընթացիկ արտադրապայմաններին մոտեցնելուն. ղեկավարման օպերատիվության մակարդակի բարձրացմանը. արտադրաօղակների հետ ղեկավար մարմինների կապերի ամրացմանը. ինֆորմացիայի գրանցումը, մշակումը և փոխանցումը արագացնելուն:

էկոնոմիկայի կառավարումը բարելավելու գլխավոր օղակը հեռանկարային պլանավորման հետագա կատարելագործումն է: ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում գրված է. Բարելավել ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարային պլանավորման մեթոդները: Իրականացնել ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման երկարատև հեռանկարային պլանի մշակումը, այդ բանի համար օգտագործելով գիտատեխնիկական առաջընթացի կանխատեսումները, երկրի բնակչության աճը, բնության պաշարները և այլն:

Տնտեսական ղեկավարումը կատարելագործելու, մասնավորապես, հեռանկարային պլանավորման դերը բարձրացնելու անհրաժեշտությունը թելադրվում է՝ արտադրության հարաճուն մասշտաբներով, գիտատեխնիկական առաջընթացի ժամանակակից բարձր տեմպերով: Յուրաքանչյուր տարի կառուցվում և գործարկվում են մի քանի հարյուր արդյունաբերական ձեռնարկություններ, յուրացվում արտադրանքի մի քանի հարյուր հազար նոր տեսակներ և տեխնոլոգիական պրոցեսներ, ստեղծվում և արտադրության մեջ արմատավորվում են տեխնիկայի բազմաթիվ նոր տեսակներ: Զգալի չափով աճում է արտադրանքի և արտադրատեխնիկական բազայի նորացման արագությունը: Մեքենաշինական և սարքաշինական տասը ճյուղերում 256 մեքենաների ու սարքերի սերիական թողարկման տևականության ուսումնասիրությունը ցույց տվեց, որ դրանց 74 տոկոսը սերիական արտադրության մեջ է գտնվում 4—7 տարուց ոչ ավելի: Ուստի, նոր արտադրությունների կազմակերպումը և գիտատեխնիկական առաջընթացի հետ կապված մյուս միջոցառումները կարող են արդյունավետ իրականացվել միայն երկարատև հեռանկարը նկատի ունենալու պայմանով: Արտադրության մշտական զարգացման և տեխնիկական առաջընթացի բարձր տեմպերի դեպքում ընդունվող ամեն մի որոշում արդյունավետ կլինի միայն այն ժամանակ, եթե արտադրության տեղաբաշխման, մասնագիտացման, մասշտաբների որոշման հարցերը լուծվեն հաշվի առնելով արդյունաբերության տվյալ ճյուղի, դրա արտադրանքն սպառող ճյուղերի, հարակից արտադրությունների, տնտեսական շրջանների հետագա զարգացումը:

Հեռանկարային պլանավորումը ենթադրում է ո՛չ միայն երկարատև ժամանակաշրջանի հաշվառումով մշակված պլաններ, այլև ընթացիկ և հրատապ խնդիրների լուծման նկատմամբ այնպիսի մոտեցում, որը հիմնվում է հասարակական արտադրության զարգացման երկարաժամկետ նպատակների վրա:



Եթե, ասենք, որևէ ձեռնարկության ընդարձակման և վերակառուցման հարցը լուծելիս ուշադրության չառնվեն ողջ շրջանի զարգացման հեռանկարները, ապա, որոշ ժամանակ անց, այդ շրջանում մյուս արտադրությունների միաժամանակյա զարգացման կապակցությամբ, կարող են դժվարություններ ծագել տվյալ արտադրությունն էներգիայով, ջրով մատակարարելու, աշխատանքային միջոցներով այն ապահովելու հարցերում:

Հեռանկարային պլանավորման կատարելագործումը պահանջում է գիտատեխնիկական առաջընթացի կանխատեսումների և էկոնոմիկայի զարգացման լայն օգտագործում: Այսպես, հաստոցաշինության ճյուղում պլան մշակելիս, մեծ դեր են խաղում այն բոլոր ճյուղերի զարգացման հեռանկարների կանխատեսումները, որոնք սպառում են հաստոցային սարքավորում, ներառյալ պատրաստի արտադրանքի, արտադրապրոցեսների կազմակերպման տեխնոլոգիայի ու մեթոդների, մեքենայացման և ավտոմատացման մակարդակի ասպարեզներում դրանցում տեղի ունեցած փոփոխությունները: Պակաս նշանակություն չունի ժողովրդական սպառման ապրանքների նկատմամբ բնակչության պահանջմունքների կանխատեսումը, որի հիման վրա կարող է կազմվել արդյունաբերության համապատասխան ճյուղերի ծրագիրը:

Հեռանկարային պլանավորման կատարելագործումը ներառնում է պլանների հավասարակշռման աստիճանի բարձրացումը: ՍՄԿԿ XXIV համագումարն ընդգծեց պլանների գիտական հիմնավորվածության խորացման անհրաժեշտությունը, ամենից առաջ, դրանց բալանսավորման բարելավման սոցիալ-տնտեսական, գիտատեխնիկական առաջընթացի պրոբլեմները և միջճյուղային բնույթի հարցերը ավելի խոր մշակելու միջոցով: Պլանների բալանսավորման բարելավման նպատակով պլանային և վիճակագրական աշխատանքում ավելի շատ է արմատավորվում միջճյուղային հաշվեկշիռների մշակումը, որոնք հնարավորություն են ընձեռում անհրաժեշտ համամասնություն սահմանել արտադրության տարբեր օղակների միջև և դրանք ճշտելու նրա տարբեր տեղամասերի զարգացման մեջ այս կամ այն փոփոխությունների դեպքում: Սակայն հաշվեկշռային մեթոդը լիակատար ծավալով կիրառվում է միայն, ամբողջությամբ վերցրած, ժողովրդական տնտեսությունը պլանավորելիս: Մինչդեռ, այդ մեթոդը, մեր կարծիքով, պետք է օգտագործվի արդյունաբերության յուրաքանչյուր ճյուղի, տնտեսական շրջանների, միավորումների և անգամ ձեռնարկությունների զարգացման պլանները կազմելիս:

Տնտեսական ղեկավարումը կատարելագործելու ասպարեզում կարևոր դեր ունի խաղալու ժողովրդական տնտեսության և դրա օղակների հեռանկարային պլանավորման բարելավումը: ՍՍՀՄ-ում հեռանկարային պլանավորման մեծ փորձ է կուտակված: Հնգամյա պլանները, որոնցով մեր երկիրը զարգանում է 20-ական թվականներից, հաջողությամբ կատարվում են սահմանված ժամկետներին: Հեռանկարային պլանավորման սիստեմն ու մեթոդները լայնորեն օգտագործվում են սոցիալիստական և զարգացող մյուս երկրներում: Սակայն ճյուղերի, առանձին կոմպլեքսների և ձեռնարկությունների հեռանկարային պլանավորման մեթոդները հետագա առավել կատարելագործման կարիք են զգում: Ներկայումս հեռանկարային պլանների մշակման վերաբերյալ մեթոդական դրույթները հանձնարարում են ցուցանիշների ու ձևերի այնպիսի մի համակարգ, որն զգալի չափով կրկնում է տարեկան պլաններ կազմելու մեթոդիկան: Այդ բանը չի կարելի ճիշտ համարել, քանի որ արտադրության թարմացման ժամանակակից տեմպերի պայմաններում գործնականորեն անհնար է մանրամասն հաշվի առնել բոլոր փոփոխությունները, և այն էլ՝ տարեկան առումով: Որպես կանոն, որքան ավելի լոկալ է արդյունաբերական այն օղակը, որի հետ հարկ է լինում գործ ունենալ, այնքան ավելի մեծ է արտադրության հարաշարժությունը և այնքան ավելի դժվար է հաշվի առնել ու կանխատեսել նրա փոփոխությունները երկարատև ժամանակաշրջանի համար: Բացի այդ, առանձին ստորաբաժանումների պլաններում առավել կարևոր է արտացոլել այն առաջադրանքները, որոնք կապված են տվյալ ստորաբաժանման գլխավոր նպատակի իրականացման հետ, որոշում են նրա կապը ժողովրդական

տնտեսության մյուս օղակների հետ։ Ելնելով դրանից, հիմնավորված է թվում հեռանկարային պլանների ցուցանիշների սիստեմի տարբերակումը՝ տնտեսական ղեկավարման տարբեր մակարդակներին համապատասխան։

Մեր կարծիքով, միավորման և ձեռնարկության հեռանկարային պլանում հարկավոր է մտցնել այն ընդհանուր նպատակները կանխատեսող առաջադրանքներ, որոնք արտացոլում են տնտեսական և տեխնիկական քաղաքականությունը՝ տվյալ արդյունաբերական կոմպլեքսի զարգացման ասպարեզում։ Այդպիսի հեռանկարային պլանը պետք է որոշի՝ միավորման մասնագիտացումը, հաշվի առնելով տվյալ արտադրանքի նկատմամբ ժողովրդական տնտեսության պահանջմունքների փոփոխությունները և գիտատեխնիկական առաջընթացի հեռանկարները. արտադրական օղակի կառուցվածքում կատարված տեղաշարժերը (դրա մեջ մտնող արտադրական, գիտական, նախագծային և այլ կազմակերպությունների կազմում, դրանց տեսակարար կշիռների հարաբերակցության մեջ՝ կոոպերացված կապերի և գիտատեխնիկական առաջընթացի սիստեմում կատարվող փոփոխությունների ազդեցության ներքո). գիտատեխնիկական առաջընթացի գլխավոր ուղղությունները՝ արտադրանքի նոր տեսակների յուրացման, սարքավորման նոր տեսակների, արտադրության նոր մեթոդների մշակման ու արմատավորման, արտադրության, աշխատանքի ու կառավարման, ինչպես նաև դրա համար անհրաժեշտ կապիտալ ներդրումների իրացման ասպարեզում. աշխատավորների կոլեկտիվի սոցիալ-կուլտուրական զարգացման պլանավորումը և նրանց բնակարանային ու կենցաղային սպասարկումը. հեռանկարային պլանի կատարմամբ ձեռք բերված տեխնիկա-տնտեսական հանրագումարային ցուցանիշները՝ ներառյալ արտադրության տեխնիկական և կազմակերպական մակարդակի, աշխատանքի արտադրողականության աճի և դրանով պայմանավորված միջին աշխատավարձի ավելացման, ֆոնդահատույցի բարձրացումը, արտադրության ծախքերի և արտադրանքի ինքնարժեքի իջեցումը, արտադրության շահութաբերության բարձրացման ցուցանիշները։ Արտադրանքի տեսականի որակական ցուցանիշներ արտացոլող փոփոխությունների առավել մանրամասն վերծանումը, մեր կարծիքով, ռացիոնալ չէ։ Հեռանկարային պլանավորման այդ ուղղությունների ընտրության ճշտությունն ապացուցված է կենսափորձով։ Յուրաքանչյուր ընդարձակվող և վերակառուցվող ձեռնարկություն ունի մի քանի տարվա համար նախանշված վերակառուցման պլան։ Հետաքրքրական է Լենինգրադի, Մոսկվայի, Սվերդլովսկի և դրանց մարզերի ձեռնարկությունների համար ընդհանուր-մեքենաշինական բնույթի արտադրանքի արտադրության մասնագիտացման հեռանկարային կոմպլեքս պլաններ կազմելու փորձը։ Կամ, օրինակ, վերջին տարիներին շատ ձեռնարկություններ ու միավորումներ («Սվետլանա»-ն, Լենինգրադի օպտիկա-մեխանիկականը, Մոսկվայի «Կրասնի պրոլետարի» գործարանը, Հոկտեմբերի 40-ամյակի անվան մեքենաշինական գործարանը և այլն) կազմել և հաջողությամբ կատարում են կոլեկտիվի սոցիալ-կուլտուրական զարգացման հեռանկարային պլանները։ Յուրաքանչյուր օղակի զարգացման համար ներկայումս կարևոր նշանակություն ունի աշխատանքի բոլոր բնագավառներն ընդգրկող հեռանկարային կոմպլեքս պլան կազմելը։ ՍՄԿԿ XXIV համագումարի ցուցումներին համապատասխան իններորդ հնգամյակում հեռանկարային պլաններ են կազմում բոլոր ձեռնարկություններն ու միավորումները։

Միավորումների սահմանած առաջադրանքները պետք է հավասար պայմաններ ապահովեն տարբեր կոլեկտիվների աշխատանքի համար։ Արտադրության կառավարման մարմինների արդի ճյուղային կառուցվածքի պայմաններում հնարավորություններ կան պլանային առաջադրանքները կողմնորոշելու միջին-ճյուղային տեխնիկա-տնտեսական նորմերին համեմատ, որոնց մակարդակը պետք է աստիճանաբար մոտենա կենդանի և առարկայացված աշխատանքի հանրայնորեն անհրաժեշտ ծախսերին։ Այդպիսի նորմեր մշակվել կարող են միայն ճյուղային գիտա-հետազոտական ինստիտուտների, կոնստրուկտորական բյուրոների և միավորումների ու ձեռնարկությունների կառավար-



ման ապարատի համապատասխան ստորաբաժանումների համատեղ աշխատանքով։ Այդ նորմերը պետք է սահմանել արտադրանքի այն տեսակների արտադրության համեմատ, որպիսիք միատիպ արտադրվում են տվյալ միավորումներում կամ տվյալ ձեռնարկություններում, իսկ փոփոխվող անվանացանկի արտադրանքի համար իբրև նորմավորման բազա կարող են ծառայել արտադրանքի միօրինականացված կամ միասնականացված տիպային մասերը և տիպային տեխնոլոգիական պրոցեսները։ Բացառված չէ, որ, իհարկե, սկզբում միջին-ճյուղային նորմերը չափազանց լարված կլինեն այն ձեռնարկությունների համար, որտեղ արտադրության տեխնիկայի և կազմակերպման մակարդակը ցածր է տվյալ ճյուղի միջինի համեմատ։ Այդպիսի դեպքերում մինիստրություններն ու գերատեսչությունները կարող էին ձեռնարկությունների համար ժամկետներ սահմանել՝ հասնելու միջճյուղային նորմաներին, նրանց օգնելով բարձրացնելու արտադրության կազմակերպական-տեխնիկական մակարդակը։ Այդպիսի հաջող աշխատանք է տարվում ՍՍՀՄ սարքաշինության, ավտոմատացման միջոցների և կառավարման սիստեմների մինիստրությունում։

Հեռանկարային պլանավորման կատարելագործումը ենթադրում է որոշ ռեզերվների ստեղծում պլանների բուն սիստեմում։ Բանն այն է, որ կյանքը մշտապես երկրի էկոնոմիկայի առջև դնում է նոր խնդիրներ, որոնք պայմանավորվում են արտադրության ընթացքում ծագող նոր նպատակներով, նրա առանձին օղակների զարգացման մեջ տեղի ունեցող այնպիսի շեղումներով, որպիսիք ունակ են ծնելու ժամանակավոր անհամամասնություններ։ Ընդ որում, մի օղակի աշխատանքում տեղի ունեցող խախտումը կարող է հանգեցնել արտադրության փոխադարձ կապի մեջ գտնվող մի շարք օղակների գործունեության խափանման։ Նմանօրինակ անհամամասնությունների վերացմանը հասնել կարելի է, մասնավորապես, կարողությունների ռեզերվներ, նյութական և այլ միջոցներ ստեղծելով։ Այդպիսի ռեզերվներ կարող են համարվել խստորեն նորմավորվող արտադրական և ապրանքային պաշարները, ինչպես նաև կարողությունների ռեզերվներն այն ճյուղերում, որտեղ նյութական պաշարներ չեն լինում։ Վերջին տարիներին նյութատեխնիկական մատակարարման մարմինների սիստեմում, նյութական պաշարների համակենտրոնացման շնորհիվ, զգալիորեն բարելավվել է ձեռնարկությունների նյութապահովվածությունը՝ պաշարների ընդհանուր ծավալի կրճատմամբ հանդերձ։ Այսպես, ՍՍՀՄ պետմատի բազաների ամբողջական պաշարի մեջ սև մետաղների գլանվածքի պաշարների տեսակարար կշռի 12,5—23,3 տոկոսով ավելացումը հնարավորություն տվեց 1968—1969 թթ. նվազեցնելու սպառողների ունեցած պաշարների աճման տեմպերը, իսկ 1970 թ. հասնելու դրանց բացարձակ կրճատման։ Այդ ամենի շնորհիվ նշված տարիներին արտադրության ծավալի համեմատ սև մետաղների ամբողջական պաշարը կրճատվեց 13,7—12,8 տոկոսով։ Բացի այդ, այն հնարավորություն տվեց զգալի չափով բարձրացնելու ռեզերվների օգտագործման շարժունակությունը։

Այսպիսով, հեռանկարային պլանավորման բարելավման համար անհրաժեշտ է յուրաքանչյուր առաջադրանք կիրառելիս հաշվի առնել արտադրության զարգացման հետագա հնարավորությունները, նրա յուրաքանչյուր օղակ դիտել փոխադարձաբար կապված բոլոր օղակների ընդհանուր սիստեմում և բարձրացնել պլանային առաջադրանքների գիտական հիմնավորվածության աստիճանը, որի կարևորագույն արտահայտությունը նրանց հավասար լարվածությունն ու հավասարակշռությունն է։

Արտադրության արդի մասշտաբներն ու բարդությունը հատուկ պահանջներ են առաջադրում տնտեսական լուծումներին։ ՍՄԿԿ XXIV համագումարը մատնանշել է, որ տնտեսական սիստեմի բոլոր օղակներում՝ լինի դա ձեռնարկություն, միավորում, մինիստրություն թե պետպլան, անհրաժեշտ է հատուկ ուշադրություն նվիրել այն բանին, որ ընդունվող վճիռները լինեն լավագույնը։ Այդ բացատրվում է նրանով, որ առավել հաջող քայլը, որ կատարվում է հաշվի առնելով տնտեսական օրենքների ամբողջ սիստեմի գոր-





հոսանքների (հաշվապահական, վիճակագրական և օպերատիվ-տեխնիկական) փոխարեն կարող է կազմվել արտադրական ինֆորմացիայի միասնական հոսք:

Ինֆորմացիայի մշակման պրոցեսում հաճախ են նրա մեծ ծավալի հետ կապված դժվարություններ ծագում: Այդ դժվարությունները, ինչպես ցույց է տալիս «բացասական» ինֆորմացիայի սիստեմների կիրառումը, կարող են հաղթահարվել տեղեկությունների հոսքն զգալի չափով կրճատելու միջոցով, սահմանափակելով միայն արտադրության նորմալ ընթացքից շեղվելու վերաբերյալ տվյալները: Այդպիսի սիստեմի առկայությամբ նորմատիվ բոլոր ծախքերը հեշտությամբ արձանագրվում են արտադրության թողարկման վերաբերյալ տեղեկություններով և մշտական ինֆորմացիայի ձևով էլեկտրահաշվիչ մեքենայի հիշողության մեջ մտցված նորմատիվների զանգվածով: Իսկ շեղման ի հայտ գալու բուն փաստը վկայում է, որ արտադրության նորմալ ընթացքը խախտված է և պահանջվում է համապատասխան միջոցների կիրառում:

Տնտեսության կառավարումը կատարելագործելու ասպարեզում պակաս կարևոր դեր չի խաղում տնտեսական ղեկավարության կարողության բարձրացումը: Արտադրության հարաշարժությունը, դրա մասնագիտացման փոփոխությունը, նոր տեխնիկայի, տեխնոլոգիայի արմատավորումը և կազմակերպման մակարդակի բարձրացումը անհրաժեշտություն են հարուցում լիովին համապատասխանաբար փոփոխելու կառավարման կազմակերպական ձևերը, այն հարմարեցնելու ինֆորմացիայի հոսքերի նոր պայմաններին, վերանայելու հարաբերակցությունը ղեկավարման զանազան մեթոդների ու եղանակների միջև: Հասկանալի է, այդ չի նշանակում, թե կառավարման ապարատը պետք է մշտապես և անընդհատ վերակառուցվի: Դրա հետ մեկտեղ նրա չափից ավելի անփոփոխ մնալը նույնպես իրեն չի արդարացնում:

Կառավարման սիստեմի ճկունությունը ենթադրում է նաև դրա կատարյալ համապատասխանությունը կառավարվող օբյեկտի բնույթին: Չի կարելի, ասենք, միակերպ որոշել կառավարման ապարատի կառուցվածքի, նրա հաստիքների, ինֆորմացիայի սիստեմի, ղեկավարման մեթոդների հարցը խոշոր, բարձր մեքենայացված, բարդ արտադրանք թողարկող խոշոր ձեռնարկությունում և արտադրության համեմատաբար պարզ բնույթ ունեցող ոչ մեծ ֆաբրիկայում կամ գործարանում: Ներկայումս կառավարման ապարատը սովորաբար ձևավորվում է արձանագրված ստորաբաժանումների՝ բաժինների, ենթաբաժինների, բյուրոների, սեկտորների և այլնի ստեղծման ճանապարհով: Յուրաքանչյուր այդպիսի ստորաբաժանման մեջ ստեղծվում է մի ամուր կոլեկտիվ, որի մասնակիցները գտնվում են որոշակի ծառայական հարաբերությունների մեջ: Ընդ որում, նայած աշխատանքի բովանդակության մեջ և ծավալում տեղի ունեցող տատանումներին, որոշ ժամանակամիջոցների ընթացքում առանձին ստորաբաժանումներում առաջանում է գերբեռնվածություն, իսկ մյուսներում՝ պարապ ժամանակ: Մինչդեռ կառավարման ընթացքում այնպիսի խնդիրներ են ծառանում, որոնք կարող են լուծվել մի քանի ստորաբաժանումների աշխատողների համատեղ ջանքերով: Կառավարման ապարատի ճկուն կառուցվածքներ կիրառող ձեռնարկությունների և գիտահետազոտական կազմակերպությունների փորձը վկայում է նման խնդիրները հաջողությամբ լուծելու հնարավորությունը: Բարդ պրոբլեմներ մշակելու անհրաժեշտության դեպքում, տարբեր ստորաբաժանումների աշխատողներից այդ կազմակերպություններում կազմվում է մասնագետների ստեղծագործական խումբ: Այդպիսի հանձնաժողովի կազմն ու թվաքանակը, տվյալ պրոբլեմի մշակմանը համեմատ, կարող են փոփոխվել, և նրա մի փոքր մասը այսպես կոչված՝ «ուղեղային կենտրոնը» միայն մշտական մնալ: Աշխատանքն ավարտելուց հետո ստեղծագործական այդ խմբի մասնակիցները վերադառնում են իրենց ստորաբաժանումները: Հնարավոր են կառավարման ապարատի աշխատանքում ճկունությունն ավելացնելու այլ ուղիներ ևս: Բայց հարկավոր է նկատի ունենալ միայն, որ դրա ավելացումն անհրաժեշտ է. այն որոշվում է գիտատեխնիկական առաջընթացի արդի փուլով:



Ժողովրդական տնտեսության կառավարման կատարելագործման նպատակն է է՛լ ավելի զարգացնել ու ամրապնդել դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը՝ որպես ժողովրդական տնտեսության կառավարման սիստեմի կազմակերպական սկզբունք: Վ. Ի. Լենինը գրում էր. «...իսկական դեմոկրատական իմաստով հասկացված ցենտրալիզմը նախատեսում է ոչ միայն տեղական առանձնահատկությունները, այլև տեղական ձեռներեցությունը, տեղական նախաձեռնությունը, ընդհանուր նպատակին հասնելու ուղիների, պրիոմների և շարժման միջոցների բազմազանությունը...» (Երկեր, հ. 27, էջ 244):

Տնտեսական ղեկավարության այդ սկզբունքի զարգացման գործում մեծ ավանդ են մուծել ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումը, ՍՄԿԿ XXIII և XXIV համագումարները: Դրանց որոշումների իրականացման պրոցեսում աշխատանք է ծավալվում ձեռնարկությունների իրավունքներն է՛լ ավելի ընդլայնելու, կենտրոնացած համապետական պլանավորումն ամրապնդելիս և կատարելագործելիս նրանց ինքնուրույնությունը բարձրացնելու համար:

Դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը ղեկավարման արմատական սկզբունքներից մեկն է սոցիալիզմի ժամանակ: Բայց այն ևս իրականացվում է ոչ ինքնաբերաբար: Այն դեպքում, երբ փոխվում է դրան ներհատուկ երկու սկզբունքների հարաբերակցությունը, հարկավոր է կազմակերպական և դաստիարակչական մեծ աշխատանք տանել այդ սկզբունքի իսկապես լիակատար կենսագործման համար՝ հաշվի առնելով արտադրաուժերի և արտադրահարաբերությունների զարգացման տվյալ մակարդակը: Որքան ավելի բարդ և բազմաճյուղ է արտադրությունը, այնքան ավելի մեծ չափով է անհրաժեշտ միասնական կենտրոնացած սկզբունք, միասնական նպատակասլացություն: Այսպես, դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի կիրառման հիման վրա միայն կարող է ապահովվել ճյուղային և տերիտորիալ ղեկավարման ճիշտ զուգակցումը: Այդ դեպքում յուրաքանչյուր ճյուղի զարգացման հիմնական գլխավոր ուղղությունները որոշվում են կենտրոնացած ընդհանուրճյուղային եղանակով, իսկ զարգացման կոնկրետ ձևերի ընտրությունը կատարվում է շրջանի առանձնահատկությունները (բնության, կլիմայական, ազգային և այլն) հաշվի առնելով:

Դեմոկրատական ցենտրալիզմն է՛լ ավելի ամրապնդելու նպատակով ՍՄԿԿ XXIV համագումարը, որպես կառավարման ու պլանավորման սիստեմի կատարելագործման ամենակարևոր միջոց, ընդգծեց, որ անհրաժեշտ է լայնորեն ներգրավել աշխատավորներին արտադրության կառավարման, գիտատեխնիկական առաջընթացի խնդիրների լուծման ոլորտը, է՛լ ավելի բարձրացնել սոցիալիստական մրցության դրոշը, մասսաներին իրենց իսկ փորձով դաստիարակել սոցիալիստական կարգապահության, աշխատանքի և հասարակական սեփականության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով, ամեն կերպ պաշտպանել և տարածել արտադրության առաջավորների փորձը, ավելի մեծ նախաձեռնություն ու հաստատակամություն ցուցաբերել աշխատավորների աշխատանքի, կենցաղի ու հանգստի պայմանների բարելավման գործում, խստորեն հետևել աշխատանքային օրենսդրության կատարմանը:

Կառավարման բարդությունը մեծանում է կառավարվող օբյեկտների մասշտաբների ու բարդության հետ միաժամանակ, ընդ որում, կառավարման ապարատի և ոչ մի մեծացում չի օգնի հաղթահարելու կառավարչական գործունեության անշեղորեն աճող ծավալը: Այդ խնդիրը կարող է հաջողությամբ լուծվել մասնագետների ու աշխատավորների կոլեկտիվների համատեղ գործունեությամբ միայն: Սոցիալիստական արտադրահարաբերությունների բնույթը կանխորոշում է արտադրության կառավարմանն աշխատավորների լայն մասնակցության հնարավորությունն ու ձևերը: Այդ առթիվ Լենինը գրել է.

*«Պետք է սովորել աշխատավոր մասսաների բուռն, գարնանային հորդությամբ հոսող, բոլոր ափերից դուրս եկող միտինգային դեմոկրատիզմը միացնել երկաթե կարգապահության հետ աշխատանքի ժամանակ, անառարկելի ենթարկման հետ— մի անձի, սովետական ղեկավարի կամքին՝ աշխատանքի ժամանակ» (Երկեր, հ. 27, էջ 326)։*

*Կառավարման ոլորտում աշխատավորների մասնակցության հսկայական փորձ է կուտակվել մեր արդյունաբերության մեջ։ Սկզբնական կուսակցական կազմակերպություններին ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու իրավունք է վերապահվում և նրանք հաջողությամբ օգտագործում են այն։ Արհմիութենական կազմակերպությունները մշտապես գործող արտադրական խորհրդակցությունների և այլ ձևերի միջոցով ադմինիստրացիային օգնում են ճիշտ լուծումներ գտնելու և ապահովելու աշխատանքային օրենսդրության, աշխատանքի պաշտպանության և անվտանգության տեխնիկայի պահպանումը, նպաստում աշխատավորների սոցիալ-կուլտուրական և բնակարանային պայմանների բարելավմանը։ Միլիոնավոր գյուտարարներ ու ռացիոնալիզատորներ մեծ ավանդ են մուծում արտադրության տեխնիկական վերասարքավորման ու ըստ ամենայնի զարգացման գործում։*

* * *

*Ժողովրդական տնտեսության կառավարման կատարելագործումը արտադրության արդյունավետության և ժողովրդի կուլտուրայի ու բարեկեցության վերելքի հիմնական միջոցներից մեկն է։ Ընթացիկ հնգամյակի գլխավոր խնդիրը, որի էությունն է՝ սոցիալիստական արտադրության զարգացման բարձր տեմպերի, նրա արդյունավետության, գիտատեխնիկական առաջընթացի բարձրացման և աշխատանքի արտադրողականության աճի արագացման հիման վրա ապահովել ժողովրդի նյութական և կուլտուրական մակարդակի զգալի վերելքը, կարող է իրականացվել միայն աշխատավորների բազմամիլիոնանոց կոլեկտիվների համատեղ ջանքերով, որոնց ներդաշնակ գործունեությունն ապահովում է կառավարման ժամանակակից հույժ կազմակերպված, ճկուն և օպերատիվ սիստեմը։*

«Вопросы экономики», 1972, № 9.



նում գիտության զարգացման համար ընդամենը կհատկացվեն ավելի քան 300 միլիոն ռուբլու միջոցներ:

Ժողովրդական տնտեսության ճյուղերի կառուցվածքում կատարված համեմատական փոփոխությունները, ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության պահանջները որակական խոր փոփոխությունների հանգեցրին գիտական հետազոտությունների բնագավառներում: Հայաստանում այժմ արագ տեմպերով են զարգանում գիտության այնպիսի ժամանակակից ճյուղեր, ինչպիսիք են աստղաֆիզիկան, աստղագիտությունը, տեսական ֆիզիկան, միջուկային ֆիզիկան, մաթեմատիկան, հաշվողական տեխնիկան, մեխանիկան, քիմիան, երկրաբանությունը, բիոքիմիան, ֆիզիոլոգիան, միկրոբիոլոգիան և այլ ճյուղեր:

Գիտելիքների նշված բնագավառներում մեզանում աճել է ճանաչված գիտնականների մի մեծ ջոկատ, որն ունակ է հաջողությամբ լուծելու ժամանակակից գիտության բարդ պրոբլեմները:

Մեծ արժեք և հրատապություն են ներկայացնում հասարակական գիտությունների բնագավառում կատարված կարևոր հետազոտությունները: Մեր պատմաբանները, տնտեսագետները, փիլիսոփաները, լեզվաբանները, գրականագետները, հնագետները և այլ գիտնականներ հասարակական գիտությունները, մասնավորապես հայագիտությունը, հարստացրել են արժեքավոր նոր աշխատություններով: Հրապարակվում է հայ ժողովրդի բազմահատոր պատմությունը: Զգալի աշխատանք է կատարվել հայկական սովետական հանրագիտարանի հրատարակումը նախապատրաստելու նպատակով, որի առաջին հատորն արտադրության պրոցեսում է: Այս մեծանշանակ նվաճումները ևս հետևանք են ՍՍՀՄ ժողովուրդների լենինյան բարեկամության անշեղ կենսագործման:

Կոմունիստական կուսակցության լենինյան իմաստուն ազգային քաղաքականությունն ստեղծում է բոլոր պայմանները եղբայրական սովետական ժողովուրդների հոգևոր արժեքների հետագա բուռն զարգացման, բազմապատկման ու փոխհարստացման համար: Անդրկովկասի հանրապետությունների գիտա-տեխնիկական և կուլտուրական կապերի ընդլայնման ոլորտում օգտակար դեր են խաղում համատեղ գիտական կոնֆերանսները և սիմպոզիումները, գիտության ու կուլտուրայի գործիչների պատվիրակությունների պարբերական փոխայցելությունները: Առանձնապես արդյունավետ են մեր եղբայրական հանրապետությունների գիտնականների, բժիշկների, կոմպոզիտորների, թատերական կոլեկտիվների կապերը:

Խիստ գովելի է հասարակական գիտությունների բազմաթիվ հարցերի համատեղ մշակումը: Այս տեսակետից շատ բան են արել ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի անդրկովկասյան մասնաճյուղերի գիտական աշխատողները: Նրանց ընդհանուր ջանքերով ուսումնասիրվել և, ինչպես հարկն է, լուսաբանվել են անդրկովկասյան բոլշևիկյան կազմակերպությունների գործունեության, սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման համար Ադրբեջանի, Վրաստանի ու Հայաստանի կոմունիստական կուսակցությունների մղած պայքարի բազմաթիվ պրոբլեմներ:

Սոցիալիզմը լայն հնարավորություններ ընձեռեց բոլոր սովետական ժողովուրդների ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի, գրականության ու արվեստի համակողմանի զարգացման համար: Սովետ-







ների երկրի բարեբեր ու կենարար արևի տակ աննախընթաց ծաղկեց հայ ժողովրդի կուլտուրան: Սովետահայ գրողների ու բանաստեղծների բազում ստեղծագործություններ, Սոցիալիստական աշխատանքի հերոս, ՍՍՀՄ ժողովրդական նկարիչ Մարտիրոս Սարյանի արևաշող կտավները, Արամ Խաչատրյանի, Առնո Բաբաջանյանի, Ալեքսանդր Հարությունյանի երաժշտությունը, ՍՍՀՄ ժողովրդական արտիստուհի Գոհար Գասպարյանի վոկալ վարպետությունը, Հայաստանի արվեստի շատ այլ գործիչների ստեղծագործությունները մեծ ժողովրդականություն են վայելում մեր երկրի եղբայրական ժողովուրդների շրջանում:

Սովետական բազմազգ պետությունում տեղի է ունենում բոլոր ժողովուրդների սոցիալիստական կուլտուրաների զարգացման ու ծաղկման, նրանց փոխազդեցության ու փոխհարստացման պրոցես: Այդ գործում անգնահատելի է ռուսական կուլտուրայի դերը: ՍՍՀՄ բոլոր ազգերն ու ժողովուրդները կամավոր կերպով ռուսերենն ընտրել են որպես ազգամիջյան հաղորդակցման ու համագործակցության ընդհանուր լեզու: Մեծ Հոկտեմբերի լեզուն՝ Լենինի լեզուն, դարձել է սովետական ժողովուրդների փոխադարձ կապի ու համախմբման հզոր կենք, հայրենական ու համաշխարհային կուլտուրայի լավագույն նվաճումներին հաղորդակցվելու միջոց:

Ազգային կուլտուրաների փոխհարստացման պրոցեսին բուռն նպաստում են գրականության ու կուլտուրայի տասնօրյակները, կինոփառատոները, ցուցահանդեսները, միութենական հանրապետությունների կազմակերպած թատերական ու երաժշտական առաջատար կոլեկտիվների հյուրախաղերը:

Հայաստանի, ինչպես և սովետական եղբայրական բոլոր հանրապետությունների հաջողությունները ցույց են տալիս ազգային հարցի մարքս-լենինյան ուսմունքի կենսական մեծ ուժը:

Միութենական հանրապետությունների էկոնոմիկայի բուռն զարգացումը, նրանց վիթխարի նվաճումները գիտա-տեխնիկական առաջընթացի ասպարեզում, սովետական ժողովուրդների կուլտուրայի ծաղկումը, ՍՍՀՄ բոլոր ազգերի ու ժողովուրդների սերտ, անխախտ միասնությունը սոցիալիստական կարգի օբյեկտիվ օրինաչափությունն են:

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հիսնամյա փորձը, մեր հզոր հայրենիքի մեծագույն հաջողությունները բազմազգ պետության կառուցվածքի առավել կատարյալ ձևի կենսունակության վառ վկայությունն են, պետություն, որտեղ ողջ հասարակության շահերը ներդաշնակում են յուրաքանչյուր ազգի շահերին:

Ազգային հարցի մարքս-լենինյան ուսմունքը դիմացել է ամեն փորձության, իսկ Սովետական Միությունը դարձել է ազգային հարցի լուծման վառ օրինակ շնորհիվ այն բանի, որ կոմունիստական կուսակցությունն անշեղ իրականացրել է լենինյան ազգային քաղաքականությունը՝ նոր հասարակարգի կառուցման քաղաքականությունը, որն անբաժանելի մասն է պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության սկզբունքների:

«Համաշխարհային պատմությունը,— ասված է *«ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի նախապատրաստության մասին»* ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— տասնյակ ազգերի ու ազգությունների փոխհարաբերությունների մեջ դեռ չի տեսել շահերի ու նպատակների, կամքի ու գործողությունների այդքան անխախտ միասնություն, այդպիսի հոգեհարազատություն, վստահություն ու փոխադարձ հոգածություն, որպիսիք շարունակ դրսևորվում են մեր եղբայրական Միությունում»:



Համերաշխ ընտանիքով գնալով դեպի վեհ նպատակը՝ դեպի կոմունիզմ, մեր երկիրը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, վիթխարի թռիչք կատարեց տնտեսական ու հոգևոր կյանքի բոլոր բնագավառներում:

Մեծ բնագծեր նվաճելով կոմունիստական հասարակարգի հաղթանակի ճանապարհին, մեր երկրի ժողովուրդներն այժմ ստեղծագործական վիթխարի աշխատանք են ծավալել՝ իրականացնելու ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները, որը նախանշել է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման նոր, սքանչելի պլան, որը լայն հեռանկարներ է բացում սովետական բոլոր հանրապետությունների տնտեսության, գիտության ու կուլտուրայի վերելքի համար:

Մեր հանրապետությունում արդյունաբերական արտադրանքի ծավալը հնգամյակում կավելանա 64 տոկոսով: Ինդուստրիալ զարգացման այդ բարձր տեմպերը կապահովվեն հիմնականում աշխատանքի արտադրողականության աճման և արտադրության արդյունավետության ու ինտենսիվության բարձրացման միջոցով:

Մեր հանրապետության, ինչպես նաև ողջ երկրի, տնտեսական զարգացման արդի էտապը բնութագրվում է ժողովրդական տնտեսության զարգացման նոր մասշտաբներով: Ինչպես մատնանշվում է ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներում, նոր հնգամյակը նշանավորում է էկոնոմիկայի ավելի խոր շրջադարձ՝ ժողովրդի բարեկեցության բարձրացման հետ կապված բազմապիսի խնդիրների լուծման համար:

Հանրապետությունում մեծ ուշադրություն է նվիրվելու գյուղատնտեսության հետագա զարգացմանը, որի հիմնական ֆոնդերը հնգամյակում կավելանան երկու անգամ: Զգալիորեն կընդլայնվեն ոռոգման աշխատանքները: Այդ հնարավորություն կընձեռի շեշտակի բարձրացնելու գյուղատնտեսական արտադրության ինտենսիֆիկացումն ու կուլտուրան: Արդյունաբերական հիմքի վրա կզարգանա անասնապահությունը, արդյունաբերական կենտրոնների բնակչությունն առավել չափով կապահովվի կաթնամթերքներով ու բանջարեղենով: Արագ տեմպերով կզարգանան արդյունաբերության՝ ժողովրդական սպառման առարկաներ արտադրող բոլոր ճյուղերը: Մոտ 2,5 անգամ կմեծանա բնակչության կենցաղային ծառայությունների ծավալը: Շահագործման կհանձնըվի 6 միլիոն 200 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն:

Սովետական Հայաստանի, ինչպես և ողջ երկրի աշխատավորները, գնալով դեպի մեծ տոնը, ավելի լայնորեն են ծավալում սոցիալիստական մրցությունը կուսակցության կանխորոշումների հաջող կենսագործման համար: Մրցողների ավանգարդում են «Հայէլեկտրալույս» արտադրական միավորման, Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի, Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի և այլ ձեռնարկությունների կոլեկտիվները: Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի համար ծավալված շարժմանը և մրցությանը մասնակցում է ավելի քան ութ հարյուր հազար մարդ:

Հանրապետության աշխատավորների անընդհատ աճող աշխատանքային խանդավառությունը հնգամյակի առաջադրանքների հաջող կատարման գրավականն է: Դրա կոնկրետ ապացույցն է այն, որ հանրապետության արդյու-

նաբերությունը ժամկետից շուտ կատարեց հնգամյակի առաջին տարվա պլանը տեխնիկա-տնտեսական բոլոր հիմնական ցուցանիշներով: 1971 թվականին արդյունաբերական արտադրանքի արտադրության աճը կազմեց մոտ 10 տոկոս: Գերակատարվել է արդյունաբերական ապրանքների իրացման պլանը: Աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է ավելի քան 6 տոկոսով: 1972 թվականի առաջին կիսամյակում արտադրության աճման տեմպերը չեն իջել:

Հանրապետության աշխատավորները ՍՍՀ Միության կազմավորման 50-ամյակը նշանավորող մրցության մեջ մտնելով, պատվով կատարեցին արդյունաբերական արտադրանքի իրացման ծավալի ինն ամսվա պլանը: Ըստ որում, նախորդ տարվա նույն ժամանակահատվածի համեմատությամբ, արդյունաբերական արտադրության աճը Հայաստանում կազմեց 6,1 տոկոս, իսկ աշխատանքի արտադրողականությունն արդյունաբերության մեջ 3,6 տոկոս:

Մեծ հաջողություններ են ձեռք բերվել նաև գյուղատնտեսության բնագավառում: Հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները լավ են հասկանում, որ հաջողությունների հետ մեկտեղ, հասարակական արտադրության արդյունավետության, աշխատանքի արտադրողականության բարձրացման, թողարկվող ապրանքների որակի բարելավման ասպարեզներում մենք ունենք դեռևս չլուծված հարցեր: Շատ անելիքներ կան բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման, քաղաքային տրանսպորտի աշխատանքի բարելավման, քաղաքների ու գյուղերի բարեկարգման ոլորտներում:

Այս բոլոր հարցերը գտնվում էին հանրապետության կուսակցական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում: Նրանք ամենօրյա աշխատանք են տանում՝ բարձրացնելու կուսակցական, սովետական ու տնտեսական աշխատողների պատասխանատվությունը հանձնարարված գործի համար, խստագույնս պահպանելու կուսակցական ու պետական կարգապահությունը:

* * *

ԱՇԽԱՏԱՎՈՐ հայ ժողովուրդը, որն իր բազմադարյա պատմության ընթացքում կրել է անչափ զրկանքներ ու տառապանքներ, մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո միայն կատարյալ երջանկություն ձեռք բերեց սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում:

Ամենը, ինչով այսօր հպարտանում է մեր ժողովուրդը, հիացնում բարեկամներին, մեր հանրապետության աշխատավորները նվաճել են այն բանի շնորհիվ, որ Հայաստանը Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների մեծ Միության իրավահավասար անդամն է, որ հայ ժողովուրդն ապրում ու աշխատում է սովետական ժողովուրդների միասնական եղբայրական ընտանիքում:

Փառապանծ հոբելյանը՝ ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակը հայ ժողովուրդը դիմավորում է կոմունիստական հասարակարգ կառուցողների մեծ բանակի միասնական շարքերում, հետայսու ևս նա աչքի լույսի պես կպահպանի ժողովուրդների բարեկամության ու եղբայրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ու սովետական հայրենասիրության դրոշը, կամրապնդի Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը՝ հանուն մարքսիզմ-լենինիզմի գաղափարների լիակատար հաղթանակի:

Հ. Ա. ԱԼԻԵՎ

Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱԶԳԵՐԻ ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԸՆՏԱՆԻՔՈՒՄ

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը մեր երկրում սոցիալ-տնտեսական արմատական վերափոխումների իրականացման, սովետական հանրապետությունների առաջացման, ազգային հարցի լենինյան ծրագրի կենսագործման քաղաքական գլխավոր պայմանն էր:

Կոմունիստական կուսակցության հետևողականորեն իրականացրած լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը հանդիսացավ ՍՍՀ Միության կազմավորումը, որը, փաստորեն, ապահովեց բոլոր ազգերի ու ժողովուրդների քաղաքական, իրավական և սոցիալ-տնտեսական հավասարությունը միասնական պետության մեջ: Հիսուն տարի առաջ դրվեց ազգերի կամավոր միավորման հիմքը. այդ միավորումը հիմնված էր «ամենալրիվ վստահության վրա, եղբայրական միասնության պարզ գիտակցության վրա, լիովին կամավոր համաձայնության վրա» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 30, էջ 368):

Սոցիալական ու ազգային ճնշման, ազգային հակասությունների, թշնամության ու բախումների հին աշխարհի փոխարեն երևան եկավ մի նոր, ապատ հասարակարգ՝ հիմնված տարբեր ազգությունների աշխատավորների եղբայրական միասնության վրա: Վ. Ի. Լենինը հանճարեղ խորաթափանցությամբ կանխատեսում էր այդ և հաստատակամորեն պնդում, որ համատեղ աշխատանքում կծնվի ու կկոփվի մարդկանց նոր, նախկինում չտեսնված հանրությունը:

Սովետական բոլոր ժողովուրդների ջանքերը, եռանդն ու նախաձեռնությունը ուղղելով բազմազգ սոցիալիստական պետության ստեղծմանը, զարգացմանն ու ամրապնդմանը, լենինյան կուսակցությունը գործով ապացուցեց, որ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը պետական կառուցվածքի ամենամատչելի և դրա հետ մեկտեղ ամենաճկուն ձևն է բազմազգ երկրում:

ՍՍՀՄ կազմավորումը պրոլետարական ինտերնացիոնալիզմի և սոցիալիստական դեմոկրատիզմի սկզբունքների նշանավոր հաղթանակն էր: ՍՍՀՄ կազմավորման մասին Դեկլարացիայում՝ միահամուռ ընդունված Սովետների

համամիութենական I համագումարում, ընդգծվում էր, որ «իր դասակարգային բնույթով ինտերնացիոնալ սովետական իշխանության բուն կառուցվածքը սովետական հանրապետությունների աշխատավորական վանգվածներին մղում է մեկ սոցիալիստական ընտանիքի մեջ միավորվելու ուղին»:

Հանդես գալով համագումարում Համառուսաստանյան Կենտգործկոմի նախագահ Մ. Ի. Կալինինը իր եկրափակման ճառում ասաց. «Մենք այստեղ դնում ենք իսկական եղբայրական համակեցության առաջին քարը: Հազարամյակներ են անցել այն ժամանակներից, երբ մարդկության լավագույն մտածողները ճիգ ու ջանք են թափում տեսական պրոբլեմի վրա, որոնելով այնպիսի ձևեր, որոնք ժողովուրդներին հնարավորություն տային առանց մեծագույն տառապանքների, առանց միմյանց դեմ պայքարելու ապրելու բարեկամաբար ու եղբայրաբար: Միայն այժմ, այսօր, գործնականորեն դրվում է այդ ամենի հիմնաքարը»:

Մարդկության պատմության մեջ առաջին անգամ մեր երկրում ազգությունների միջև հաստատվեցին որակապես նոր հարաբերություններ. ժողովուրդների հավասարություն և սուվերենություն, այդ ժողովուրդների ինքնորոշման իրավունք՝ ընդհուպ մինչև անջատումն ու ինքնուրույն պետության կազմավորումը, ազգային բոլոր արտոնությունների ու սահմանափակումների վերացում, բոլոր մեծ ու փոքր ազգությունների ու ժողովուրդների ազատ զարգացում:

Սովետական բազմազգ պետությունը մեծ հնարավորություններ տվեց և նպաստավոր պայմաններ ստեղծեց՝ բոլոր ազգությունների ժողովրդական զանգվածներին լայնորեն ներգրավելու սոցիալիստական շինարարության ոլորտը, հաշվի առնելով ամբողջ բազմազանությունը, տեղական պայմանները, նրանցից յուրաքանչյուրի ավանդույթներն ու կենցաղը:

Միասնական դաշնակցային պետության շրջանակներում Սովետական Միության բոլոր ժողովուրդները հերոսական պայքար ծավալեցին ՍՍՀՄ-ում սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման լենինյան պլանի կենսագործման համար, իրականացրին ինդուստրացումը, գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխումը, կուլտուրական հեղափոխությունը: Նյութական միջոցների ու ջանքերի համակենտրոնացումը, սովետական ժողովուրդների անշահախնդիր փոխադարձ օգնությունը հնարավորություն ընձեռեցին բոլոր հանրապետություններում ստեղծելու բարձր կարգացած արդյունաբերություն, խոշոր մեքենայացված գյուղատնտեսություն: Ցարական Ռուսաստանի հետամնաց ծայրամասերը դարձան տնտեսապես զարգացած հանրապետություններ, ծաղկեց նրանց ազգային մշակույթը՝ հագեցած սոցիալիստական բովանդակությամբ:

ՍՄԿԿ ինտերնացիոնալ քաղաքականությունը տվեց բազմազգ հասարակության և յուրաքանչյուր ազգի շահերի ներդաշնակ զուգորդման փայլուն օրինակ: ՍՍՀՄ կազմավորումը նպաստեց սոցիալիստական ազգերի ծաղկմանն ու մերձեցմանը, մարդկանց ինտերնացիոնալ նոր հանրության՝ սովետական ժողովրդի ստեղծմանը, արագացրեց զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցումը:

Աշխարհում առաջին բազմազգ սոցիալիստական պետության՝ ՍՍՀՄ կազմավորումը նոր իմաստ ու նոր բովանդակություն հաղորդեց մեր երկրի ժողովուրդների փոխօգնությանն ու համագործակցությանը:

Եղբայրական հանրապետությունների տնտեսական ու կուլտուրական համագործակցության անշեղ աճը տնտեսական մեծ արդյունք է տալիս, նպաստում յուրաքանչյուր միութենական հանրապետության բնական ու աշխատանքային ռեսուրսների, նրանց տնտեսական պոտենցիալի առավել ռացիոնալ օգտագործմանը:



Գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ Սովետական Միության Հայրենական մեծ պատերազմը դաժան փորձություն հանդիսացավ բազմազգ սովետական պետության կենսական ուժի ու հզորության համար, մեր երկրի ժողովուրդների լենինյան անխախտ ու ամուր բարեկամության համար:

Սովետական հայրենիքի բոլոր ժողովուրդները, բոլոր ազգությունների որդիներն ու դուստրերը պայքարի ելան կատաղի ու նենգ թշնամու դեմ, ցույց տվեցին չտեսնված արիության ու հերոսության օրինակներ: Ֆաշիստական զավթիչների դեմ մղված համատեղ պայքարը ռազմաճակատներում ու թիկունքում ցուցադրեց ՍՍՀ Միության ժողովուրդների բարեկամության մեծ ու անըսպառ ուժը: Անքակտելի եղբայրությունը սովետական ժողովրդին հնարավորություն ընձեռեց կարճ ժամկետում երկիրը դարձնել մեկ միասնական մարտական ճամբար, եղավ այն վճռական գործոններից մեկը, որոնք ապահովեցին հաղթանակը գերմանա-ֆաշիստական զավթիչների նկատմամբ:

Ռուս ժողովրդի հետ, մեր երկրի բոլոր եղբայրական ժողովուրդների հետ, ֆաշիստական հրոսակների դեմ մահացու պայքարի ելավ նաև ադրբեջանական ժողովուրդը: Նրա հարյուր հազարավոր որդիներն ու դուստրերը, թշնամու դեմ մղված կատաղի մարտերում անթառամ փառքով պսակեցին իրենց: Մարտնչելով Մոսկվայի մոտ, մասնակցելով Կովկասի պաշտպանությանը, Վոլգայի, Կուրսկի աղեղի մեծ ճակատամարտերին, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Մերձբալթիկայի ազատագրմանը, ադրբեջանցիները գիտեին, որ դրանով թշնամուց պաշտպանում են իրենց հանրապետությունը, իրենց քաղաքներն ու գյուղերը: Անօրինակ սխրագործություններով իրենց հարազատ Ադրբեջանը փառաբանեցին Ազի Ասլանովը, Վլադիմիր Բալանդինը, Իսրաֆիլ Մամեդովը, Նելսոն Ստեփանյանը և շատ ուրիշներ:

Պատերազմի տարիներին մարտական փինանոցի վերածվեց Ադրբեջանը: Ռազմաճակատին նա տալիս էր վառելիք, քսայուղեր, փինամթերք ու հանդերձանք, նավթամթերքներով ապահովում թիկունքի ձեռնարկություններն ու տրանսպորտը:

Հետպատերազմյան տարիները նոր ուժով հաստատեցին լենինյան այն հանճարեղ կանխատեսումը, որ հանրապետությունների միասնական, կամավոր, իրավահավասար միության ստեղծմամբ մեծ չափով բազմապատկվում են աշխատավորների հնարավորությունները: Բանվոր դասակարգի գլխավորած ինտերնացիոնալ եղբայրությունը դարձավ նոր հասարակարգ կառուցողների ստեղծագործական եռանդի անսպառ աղբյուրը:

«Մեր հայրենիքի բոլոր ժողովուրդները իսկայական ավանդ են ներդնում սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման գործում,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը 1972 թվականի նոյեմբերի 7-ի իր ճառում: —Սովետների երկրի ժողովուրդների բարեկամությունն ու եղբայրությունն ամուր են ու անխախտ: Այդ բարեկամության շնորհիվ մեր հայրենիքը նոր նշանակալից հաջողությունների հասավ կոմունիստական շինարարության բոլոր ճակատներում: Ահա ինչու, փառաբանելով մեծ Հոկտեմբերը, մենք փառաբանում ենք մեր երկրի բոլոր ժողովուրդներին ու ազգություններին, նրանց ձգտումը՝ ապրել մեկ ընտանիքով, եղբոր

նման բաժանելով հոգսերն ու տագնապները, հաջողությունների ու հաղթանակների պտուղները»:

Յուրաքանչյուր սովետական մարդ հպարտանում է, որ ինքը պատկանում է ՍՍՀՄ ժողովուրդների միասնական ընտանիքին, որի գլուխ կանգնած է ռուս մեծ ժողովուրդը՝ մեր ավագ եղբայրն ու լավագույն բարեկամը: Ռուս ժողովուրդը իր ուսերի վրա կրեց ցարիզմի դեմ, սովետական իշխանության հաղթանակի համար մղված պայքարի մեծագույն ծանրությունը: ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների վիթխարի ջանքերի և, ամենից առաջ, ռուս մեծ ժողովրդի ջանքերի շնորհիվ, նրանց արիության ու խիզախության շնորհիվ ջախջախվեցին օտարերկրյա ինտերվենտները, ֆաշիստական հրոսակախմբերը, որոնք սպառնում էին մեր հայրենիքի ազատությանն ու անկախությանը: Ռուս ժողովուրդը աշխատասիրության ու հերոսության մշտական օրինակ է, բոլոր մեծ ու փոքր եղբայրական ժողովուրդներին անշահախնդիր օգնություն ցույց տալու օրինակ: Նա ամենամեծ ավանդը ներդրեց սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման գործում: Ահա ինչու մեր երկրի բոլոր ժողովուրդներն անկեղծորեն սիրում են ռուս ժողովրդին, անսահման հավատում նրան, հիանում նրա տաղանդով, հայրենասիրությամբ ու ինտերնացիոնալիզմով:

Սովետական ժողովուրդների միասնական ընտանիքում ապրում ու ստեղծագործում են Վրաստանի, Հայաստանի ու Ադրբեջանի՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության՝ հավասարների մեջ հավասար հանրապետությունների աշխատավորները:

Դարերի խորքից է գալիս Անդրկովկասի ժողովուրդների բարեկամությունը: Հարյուրամյակներ շարունակ մեր նախնիները համատեղ, ուս-ուսի պայքարել են օտարերկրյա զավթիչների դեմ, պաշտպանելով իրենց երկիրը, իրենց անկախությունն ու մշակույթը:

Անդրկովկասի ժողովուրդների խոսքի մեծ վարպետները գովերգել են Վրաստանի, Հայաստանի, Ադրբեջանի մարդկանց քաջությունը, ազնվությունն ու աշխատասիրությունը, մեր երկրամասի անկրկնելի գեղեցիկ բնությունը: Իրենց եղբայրների նկատմամբ ջերմ սիրով են համակված Նիզամու և Ռուսթավելու, Սայաթ-Նովայի ու Վագիֆի, Խաչատուր Աբովյանի ու Միրզա Ֆաթալի Ախունդովի, Իլյա Ճավճավաձեի ու Միրզա Ալեքպեր Սաբիրի ստեղծագործությունները:

Մեր ժողովուրդների բարեկամությունը նոր բարձունքների հասավ ու որակապես նոր բովանդակությամբ լցվեց հեղափոխության բարիկադներում, Ադրբեջանում, Հայաստանում և Վրաստանում սովետական իշխանության հաստատման համար մղված պայքարում, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման տարիներին: Անդրկովկասի բոլշևիկները համատեղ մեծ գործ են արել աշխատավորներին դասակարգային միասնության և ինտերնացիոնալ համախմբվածության ոգով դաստիարակելու բնագավառում, որը բարձր է գնահատել Վ. Ի. Լենինը:

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարներին հավատարմության սքանչելի օրինակ են Բաքվի 26 կոմիսարները՝ տարբեր ժողովուրդների զավակները, որոնք հերոսաբար մարտնչեցին և քաջերի մահով ընկան Ադրբեջանում և ամբողջ Անդրկովկասում սովետական իշխանության հաստատման համար մղված պայքարում:

Անդրկովկասյան ժողովուրդների կյանքում աչքի ընկնող իրադարձություն էր Ադրբեջանական, Հայկական և Վրացական ՍՍՀ-ների կամավորումը,



նրանց համախմբումը Անդրկովկասյան ֆեդերացիայի և ապա՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ:

Կես դար առաջ պրոլետարական Բաքվում հրավիրված՝ Սովետների անդրկովկասյան I համագումարի պատգամավորները Վ. Ի. Լենինին գրել են. «Միասնական ընտանիքով մտնելով Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ, մենք հաստատ համոզված ենք, որ ձեր փորձված ու հմուտ ղեկավարությամբ և Կոմինտերնի դրոշով այստեղ՝ Արևելքի նախադռանը, կհասնենք սովետական իշխանության հզոր ամրապնդման...»:

Այսօր, նշելով ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակը, բոլոր հիմքերն ունենք հայտարարելու, որ համագումարի պատգամավորների այդ համոզմունքը, որ հայտնել էին Վ. Ի. Լենինին ու Սովետական Ռուսաստանի կառավարությանը, կենսագործված է:

Անդրկովկասյան ֆեդերացիայի ստեղծումը հսկայական դեր խաղաց մեր հանրապետությունների ժողովրդական տնտեսության վերականգնման, սոցիալիստական շինարարության հաջող ծավալման գործում:

Անդրկովկասի, ինչպես նաև սովետական երկրի բոլոր ժողովուրդների եղբայրական բարեկամությունը մեր ավագ եղբոր՝ ռուս մեծ ժողովրդի գլխավորությամբ սովետական տարիներին ձեռք բերեց սոցիալիստական բովանդակություն, դարձավ անսասան, ինչպես ինքը՝ կյանքի ճշմարտությունը: Այդ բարեկամությունը ցեմենտել են կոմունիստական կուսակցությունը, սոցիալիստական կարգը, մեր գաղափարախոսության, մեր նպատակների ընդհանրությունը:

Ժողովուրդների բարեկամությունը դարձել է սովետական բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի կյանքի օրենքը, ոգեշնչման աղբյուրը, վառ փարոսի նման լուսավորելով աշխատանքի բոլոր մարդկանց կոմունիզմ տանող ուղին. եղբայրության այդ օրենքներով է ապրում ամեն մի սովետական մարդ: Իրականացավ մեծ Լենինի այն կանխատեսումը, որ Հոկտեմբերի փոթորիկներում, համատեղ աշխատանքում, արդարացի պատերազմների բովում ծնունդ կառնի ու կկոփվի շատ ազգությունների աշխատավոր մարդկանց նոր հանրությունը, նոր միասնությունը: Այդ բարեկամության շնորհիվ մենք կառուցեցինք սոցիալիզմ և հաջողությամբ ստեղծում ենք կոմունիզմի նյութատեխնիկական բազան:

Սովետների երկրի եղբայրական բոլոր հանրապետությունների հետ Ադրբեջանի ունեցած տնտեսական կապերում զգալի տեղ ունեն Անդրկովկասի հանրապետությունները: Մեր հանրապետությունը Վրաստանից և Հայաստանից ստանում է հաստոցներ, սև մետաղներ, էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ, թեյ, քիմիական արտադրանք և այլն: Իսկ մենք նրանց ենք ուղարկում նավթարդյունաբերության, սննդի, մեքենաշինության, քիմիական արդյունաբերության ապրանքներ: Սումգայիթում արտադրվող խողովակները, որոնք պատրաստվում են ադրբեջանական հումքով՝ Ռուսթավիում ձուլված երկաթից, օգնում են ողջ երկրի նավթագործներին «սև ոսկու» արդյունահանման մարզում: Այն էներգասիստեմը, որի մեջ մտնում է Անդրկովկասի հանրապետություններում արտադրվող էլեկտրաէներգիան, դարձել է մեր ժողովուրդների բարեկամության ու համագործակցության խորհրդանիշը:

Սովետական ժողովուրդների բարեկամության վառ դրսևորումներից մեկն էլ սոցիալիստական մրցությունն է, որը փոխադարձ փորձով հարստացնում

է մեր երկրի միլիոնավոր աշխատավորներին: Սքանչելի պտուղներ է տալիս Բաքվի ու Երևանի էլեկտրամեքենաշինարարների, Ռուսթավիի, Կիրովականի և Սումգայիթի աշխատավորների, Կիրովաբադի և Քութայիսիի տեքստիլագործների, Վրաստանի ու Ադրբեջանի թեյագործների, մեր հանրապետությունների քաղաքների ու շրջանների մրցությունը:

Ընդհանուր բարօրության համար ծավալվող սոցիալիստական մրցությունը ավելի է հարպատացնում աշխատանքի եղբայրներին, օգնում նրանց ո՛չ միայն ավելի շատ իմանալու միմյանց գործերի, հաջողությունների մասին, այլև կիրառելու դրանք իրենց պրակտիկայում:

Անշեղորեն տեղի է ունենում նաև մեր սոցիալիստական ազգերի մշակույթների մերձեցման պրոցեսը, ընդլայնվում է նրանց փոխներգործությունը, փոխհարստացումը:

***

ՍՈՎԵՏԱԿԱՆ ժողովուրդների եղբայրական ընտանիքում վիթխարի հաջողությունների են հասել Սովետական Ադրբեջանի աշխատավորները:

Ադրբեջանում սովետական իշխանության հաղթանակից հետո կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության առջև ծառացավ կարևոր մի խնդիր՝ վերջ տալ տնտեսական քայքայմանը, երիտասարդ հանրապետությունը դուրս բերել սոցիալիստական զարգացման ուղին: Սովետական Ադրբեջանը ի վիճակի չէր մենակ, միայն իր սեփական ուժերով հաղթահարելու այդ մեծ ու դժվարին խնդիրը: Օգնության հասան մեր երկրի բոլոր եղբայրական ժողովուրդները՝ ռուս մեծ ժողովրդի գլխավորությամբ:

Կոմունիստական կուսակցության, անձամբ Վ. Ի. Լենինի ամենօրյա հոգատարության շնորհիվ, բոլոր սովետական հանրապետությունների և, առաջին հերթին, ռուսական բանվոր դասակարգի բազմակողմանի օգնության շնորհիվ կարճ ժամանակում վերականգնվեց նավթարդյունաբերությունն ու ապահովվեց նրա հետագա զարգացումը:

Սովետական Ռուսաստանից մեր հանրապետություն տեղափոխվեցին արդյունաբերական մի քանի ձեռնարկություններ: Հարուստ փորձի փոխանակման, արդյունաբերության նոր ճյուղերի ստեղծման, ֆաբրիկաների ու գործարանների սարքավորմանն աջակցելու նպատակով Բաքու ժամանեցին բանվորական բրիգադներ Մոսկվայից, Լենինգրադից, Կիևից, Խարկովից, Ռոստովից, Օդեսայից, Բրյանսկից, Նիկոլաևից և սովետական երկրի այլ քաղաքներից:

Հետպատերազմյան հնգամյակների տարիներին ավելի ծավալվեցին ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական համագործակցությունն ու սոցիալիստական փոխօգնությունը: Ողջ երկիրն օգնում էր կառուցելու ինքնօրինակ ու հավվագյուտ ծովային նավթահանքերը՝ Նավթային քարերը: Քիմիական արդյունաբերության նորակառույցներին, Ադրբեջանի կարևորագույն այլ կառույցներին սարքավորումներ էին մատակարարում ՌՍՖՍՀ-ի 271 ձեռնարկություն:

Մեր երկրի ժողովուրդների փոխօգնության նոր վկայությունն էր Բաքվի մետրոպոլիտենի շինարարությունը: ՌՍՖՍՀ-ի, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Վրաստանի և մյուս հանրապետությունների 150 ձեռնարկություններ, Մոսկվայի, Լենինգրադի, Կիևի, Թբիլիսիի մետրոշինարարները մասնակցեցին նրա գետնուղիների, կայարանների կառուցմանը, կադրերի պատրաստմանը:



Աշխատանքային համագործակցությունը կոմունիզմի համար մղվող պայքարում, մերձեցման ու փոխհարստացման անշեղ պրոցեսը արմատական փոփոխություններ են հարուցում յուրաքանչյուր ազգի հոգևոր կերպարում: Տարբեր ազգությունների սովետական մարդիկ ավելի ու ավելի են համակվում ինտերնացիոնալ հատկանիշներով:

Ազգայինն ու ինտերնացիոնալիստականը միևնույն երևույթի երկու կողմերն են: Դա փոխկապակցված պրոցես է: Այդ պրոցեսում աստիճանաբար և մշտապես աճում է ինտերնացիոնալ գործոնի նշանակությունը: Անշուշտ այդ չի նշանակում, թե ազգային շահերը դառնում են երկրորդական: Զարգացման դիալեկտիկան այստեղ այն է, որ անխուսափելիորեն ընդլայնվում է ինտերնացիոնալ գործոնի բովանդակությունը ազգայինի մեջ:

Յուրաքանչյուր սովետական հանրապետություն՝ որպես սուվերեն պետություն, ազգային սպեցիֆիկ շահերի կրողն է, իսկ որպես ֆեդերացիա՝ ՍՍՀ Միության բաղկացուցիչ մասերից մեկը՝ ընդհանուր ինտերնացիոնալ շահերի կրողը: ՍՍՀ Միության ինտերնացիոնալ շահերն ամփոփում են այն գլխավոր ընդհանուր տարրերը, որոնք միաժամանակ հատուկ են նրա բաղկացուցիչ մասերի ազգային շահերին: Սա է նրանց դիալեկտիկական միասնությունը:

Միասնական նպատակին հասնելու համար պայքարող, միևնույն ուղիով դեպի կոմունիզմի բարձունքներն ընթացող սովետական ժողովուրդների եղբայրական համագործակցությունը հիանալի պտուղներ է տալիս: Դրա վառ վկայությունն են մեր հանրապետության հասումները սովետական տարիներին: Արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկումը, 1920 թվականի համեմատությամբ, ավելացել է 81 անգամ: Այժմ մեր արդյունաբերությունը 12 օրում կթողարկի նույնքան արդյունաբերական արտադրանք, որքան տալիս էր նախահեղափոխական Ադրբեջանը մեկ տարում: 1920 թվականի համեմատությամբ նավթի արդյունահանումն ավելացել է գրեթե 7 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 96, ցեմենտի արտադրությունը՝ ավելի քան 140 անգամ:

Անճանաչելիորեն փոխվել է Սովետական Ադրբեջանի տնտեսական աշխարհագրությունը: Հանրապետությունում կառուցվել է 347 արդյունաբերական խոշոր օբյեկտ, շատ ձեռնարկություններ ամբողջովին վերակառուցվել են: Միայն վերջին 20—25 տարում Ադրբեջանում ստեղծվել են սոցիալիստական այնպիսի նոր քաղաքներ ու արդյունաբերական կենտրոններ, ինչպիսիք են՝ Սումգայիթը, Մինգեչաուրը, Դաշքեսանը, Ալի-Բայրամլին:

Հանրապետությունում ստեղծվել են արդյունաբերական-տերիտորիալ մի քանի համալիրներ, որոնցից ամեն մեկն ունի որոշակի արտադրական ուղղություն: «Ընդամենը մի քանի տասնամյակ առաջ Ադրբեջանը հայտնի էր որպես նավթի երկիր,— ասել է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը Ադրբեջանի կոմկուսակցության և Ադրբեջանական ՍՍՀ 50-ամյակին նվիրված հանդիսավոր ժողովում,— բայց Ադրբեջանի էկոնոմիկայի համար այսօր բնորոշ են արդյունաբերության այնպիսի կարևոր ճյուղեր, ինչպես սև և գունավոր մետալուրգիան, նավթարդյունաբերական մեքենաշինությունը և սարքաշինությունը, էլեկտրատեխնիկական, քիմիական և նավթաքիմիական արդյունաբերությունը:

Երկրի ժողովրդական տնտեսության մեջ նկատելի դեր են խաղում Ադրբեջանում արտադրվող պողպատն ու գլանվածքը, խողովակներն ու գունավոր

մետաղները, սինթետիկ կաուչուկը և հանքային պարարտանյութերը, ավտոդողերը, էլեկտրաշարժիչները, պոմպերը: Ադրբեջանական արդյունաբերության արտադրանքին կարելի է հանդիպել Անդրկարպատներում և Սախալինում, Սառուցյալ օվկիանոսի ափերին և Թուրքմենիայի տոթակեզ անապատներում:

Այդ արտադրանքը հայտնի է նաև Սովետական Միության սահմաններից շատ հեռու: Այստեղից, Կասպիականի ափերից, 300 տեսակի արդյունաբերական արտադրանքներ արտահանվում են աշխարհի գրեթե 60 երկրներ: Այս ամենը սովետական իշխանության տարիներին Ադրբեջանում ձեռք բերված ինդուստրիալ բարձր մակարդակի համոզիչ վկայությունն է»:

Ադրբեջանում ստեղծվել է բազմաճյուղ գյուղատնտեսություն: Հանրապետության դաշտերում այժմ գործում են ավելի քան 27 հազար տրակտորներ, ավելի քան 2000 բամբակահավաք մեքենաներ, մոտ 20 հազար բեռնատար ավտոմեքենաներ և այլն: Գյուղատնտեսության կոլեկտիվացումն ու մեքենայացումը արմատական բեկում առաջացրին ադրբեջանական հին գյուղում, փոխեցին նրա սոցիալ-տնտեսական կառուցվածքը, խարխլեցին հին կենցաղի հիմքերը, նպաստեցին մշակույթի պարգացմանը:

Մեծ են հանրապետության հաջողությունները ոռոգման և մելիորացիայի բնագավառում: Սովետական իշխանության տարիներին Ադրբեջանում ստեղծվել են այնպիսի խոշոր ջրամբարներ, ինչպիսիք են՝ Մինգեչաուրի ծովը, Նախիջևանի, Աղստաֆաչայի, Ջեյրանբաթի ջրամբարները, Բաղրամթափայի ամբարտակը, որոնք հնարավորություն տվեցին ոռոգելու վիթխարի անջրդի հողատարածություններ: Կառուցվել են Վերին Ղարաբաղի, Վերին-Շիրվանի, Մուղանի գլխավոր, Սամուր-Ապշերոնի ոռոգման ջրանցքները, որոնց ընդհանուր երկարությունը 635 կիլոմետրից ավելի է: Այդ ամենի շնորհիվ հանրապետության ոռոգելի հողերի ընդհանուր տարածությունը մեծացավ ավելի քան երկու անգամ, անցնելով 1 միլիոն 130 հազար հեկտարից:

Հանրապետության ժողովրդական տնտեսության բուռն կարգացումը Բաքվի բազմազգ պրոլետարիատի հեղափոխական ու աշխատանքային փառապանծ ավանդույթները շարունակող Ադրբեջանի բանվոր դասակարգի անձնվեր աշխատանքի, կոլտնտեսային գյուղացիության, ինտելիգենցիայի ջանքերի արգասիքն է, կոմունիստական կուսակցության իմաստուն ղեկավարության, սովետական բոլոր ժողովուրդների եղբայրական օգնության արդյունքը:

Սովետական իշխանության տարիներին Ադրբեջանում կատարվել է իսկական կուլտուրական հեղափոխություն: Ադրբեջանը, որտեղ անցյալում բնակչության 90 տոկոսն անգրագետ էր, այժմ դարձել է համատարած գրագիտության երկիր: Մեր հանրապետությունում կա 3640 մասսայական գրադարան, 12 թատրոն, 1875 կինոսարքավորում, ամեն տարի հրատարակվում է 1300 անուն գիրք:

Գիտության ամենատարբեր բնագավառներում գիտական հետազոտություններ են կատարում 140 գիտահետազոտական հաստատություններ՝ Ադրբեջանական ՍՍՀ Գիտությունների ակադեմիայի գլխավորությամբ: Այդ հաստատություններն ունեն ավելի քան 18 հազար գիտական աշխատողներ, այդ թվում գիտության ավելի քան 700 դոկտորներ և մոտ 6 հազար թեկնածուներ:

Ադրբեջանական ժողովուրդն իր բազմադարյա պատմության ընթացքում ստեղծել է ինքնատիպ ազգային գրականություն և արվեստ: Բայց դրանք բուռն ծաղկեցին սովետական իշխանության տարիներին: Նրանց կարգացման գլխավոր ուղղությունը սերտ կապն է կյանքի հետ, սոցիալիստական իրականության ճշմարտացի, գեղարվեստական խոր պատկերումը, նորի, իրոք կոմունիստական ոգեշունչ արտացոլումը և այն ամենի մերկացումը, ինչ խանգարում է հասարակության առաջընթացին:

Եղբայրական սոցիալիստական մշակույթների հոգևոր արժեքների անկաշկանդ փոխանակումը նպաստում է, մի կողմից՝ այդ մշակույթներից յուրաքանչյուրի ծաղկմանն ու նրանց հետագա մերձեցմանը, մյուս կողմից՝ ինտերնացիոնալ գծերի հետագա կարգացմանը: Այսպիսով, ազգային սոցիալիստական մշակույթների ծաղկումն ու մերձեցումը դարձել են սոցիալիստական ռեալիզմի գրականության ու արվեստի ներքին օրգանական օրինաչափությունը: Այդ պրոցեսը դրսևորվում է տարբեր ձևերով, իրականանում տարբեր ուղիներով ու միջոցներով: Կարելի է թվարկել արդեն ավանդական դարձած բազմաթիվ միջոցառումներ (գեղարվեստական կոլեկտիվների և արվեստի գործիչների փոխանակում, փոխադարձ գաստրոլները, գրականության ու արվեստի տասնօրյակներն ու շաբաթները, համատեղ անցկացվող «Երաժշտական գարուն» փառատոները, կինոփառատոները, գրքի միամսյակները և այլն), որոնք ծառայում են ազգային մշակույթների փոխհարստացմանն ու մերձեցմանը, նրանց հետագա կարգացմանը ինտերնացիոնալ հիմքի վրա:

Ստեղծագործական համագործակցությունը դարձել է սովետական բազմազգ արվեստի լավագույն ավանդույթներից մեկը: Այն նպաստում է հասարակական կյանքի հետագա ինտերնացիոնալացման կարևոր պրոցեսին: Ընթացիկ տարվա հոկտեմբերին անցկացված ՌՍՖՍՀ գրականության և արվեստի օրերը Ադրբեջանում՝ վերածվեցին ժողովուրդների բարեկամության ու եղբայրության հուզիչ տոնի: Այն տասն օրերը, որոնց ընթացքում ադրբեջանական հողում հյուրընկալվել էին ռուս մեծ ժողովրդի, Թաթարիայի, Բաշկիրիայի, Օսեթիայի, Բուրյաթիայի, Կարելիայի, Դաղստանի և ՌՍՖՍՀ մյուս ինքնավար հանրապետությունների ժողովուրդների պատվիրակները, դարձան հասարակական-քաղաքական մեծ նշանակություն ունեցող իրադարձություն, կոմունիստական կուսակցության լենինյան իմաստուն ազգային քաղաքականության հաղթանակի նոր վկայություն: ՌՍՖՍՀ մշակույթի օրերն Ադրբեջանում հանդիսացան միաձույլ ընտանիքով դեպի ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակն ընթացող սովետական մարդկանց անքակտելի բարեկամության հիմնը:

Մեր եղբայրական կապերի ընդլայնման ու ամրապնդման գործում կարևոր նշանակություն ունեն գիտական կապերը, գիտական կոնֆերանսները, սիմպոզիումներն ու խորհրդակցությունները, փոխադարձ օգնությունը կադրերի պատրաստման ոլորտում, ՍՍՀՄ ժողովուրդների մշակութային գանձարանը մտած առավել նշանակալից ստեղծագործությունների թարգմանումն ու լայն տարածումը: Այդ ամենի շնորհիվ մեր երկրի յուրաքանչյուր ազգ հնարավորություն ունի ծանոթանալու մյուս ազգերի պատմությանը, փիլիսոփայությանը, էկոնոմիկային, գրականությանն ու արվեստին, սովորույթներին ու ավանդույթներին, ընկալելու այն ընդհանուրը, որ հատուկ է բոլոր ազգերին ու ժողովուրդներին, դրանցից լավագույնը դարձնելով նաև իր սեփականությունը:

Ադրբեջանի աշխատավորները մեծ հետաքրքրությամբ են կարդում Վրաստանի ու Հայաստանի կլասիկների ու ժամանակակից գրողների ստեղծագործությունները, հպարտանում նրանց գիտնականների հաջողություններով, հիանում հայկական ու վրացական արվեստի նվաճումներով:

Խոսելով մեր երկրի կոմունիստական շինարարության արդի էտապում ազգային մշակույթների փոխազդեցության ու փոխհարստացման մասին, հարկավոր է առանձնապես նշել ռուսաց լեզվի հսկայական նշանակությունը: Ազգային լեզուների զարգացմանը զուգընթաց ռուսերենը ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների համար դարձել է երկրորդ մայրենի լեզու, եղբայրության ու բարեկամության լեզու, որի միջոցով սովետական ժողովուրդները հաղորդակցվում են միմյանց հետ, ծանոթանում ՍՍՀՄ և ամբողջ աշխարհի ժողովուրդների մշակույթին, ուսումնասիրում դրանք, դրանով իսկ հարստացնելով իրենց սեփական մշակույթը: ՍՍՀՄ բոլոր ազգերն ու ժողովուրդները ռուսերենը կամովին ընտրել են որպես ազգամիջյան հաղորդակցման ու համագործակցության ընդհանուր լեզու: Այն դարձել է սովետական ժողովուրդների փոխադարձ կապի ու համախմբման հզոր վենք, հայրենական ու համաշխարհային մշակույթի լավագույն նվաճումներին հաղորդակցվելու միջոց:

❊❊❊

ՍՈՎԵՏԱԿԱՆ Միության կեսդարյա հոբելյանը դիմավորում ենք տոգորված կուսակցության XXIV համագումարի գաղափարներով, մեր կուսակցության կանխագծումները անձնվիրաբար կենսագործող սովետական ժողովրդի հսկայական քաղաքական ակտիվության ու աշխատանքային խանդավառության պայմաններում:

ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումներում նշված են կուսակցության և երկրի խնդիրները կոմունիստական շինարարության արդի էտապում: ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման IX հնգամյա պլանում նշված են ամբողջ երկրի և յուրաքանչյուր առանձին միութենական հանրապետության էկոնոմիկայի և մշակույթի զարգացման նոր բնագծերը: Համագումարի դիրեկտիվները հնգամյա պլանի մասին կոմունիստական շինարարության մեջ մեր ժողովուրդների բարեկամության ու համագործակցության աճած դերի լավագույն վկայությունն են: Առաջիկա տարիների համար համագումարի կանխանշած խնդիրներն ու պլանները նոր ուժ կհաղորդեն սովետական մարդկանց:

Մեր հանրապետության հնգամյա խնդիրները որոշված են ՍՍՀՄ ամբողջ ժողովրդական տնտեսության կոմպլեքսային զարգացման առաջադրանքներին համապատասխան: Ինչպես ողջ երկրի, նույնպես և մեր հիմնական խնդիրն է՝ զգալիորեն բարձրացնել ժողովրդի նյութական բարեկեցությունը սոցիալիստական արտադրության արագ զարգացման, նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի և աշխատանքի արտադրողականության հետագա վերընթացի հիման վրա: Արդյունաբերական արտադրանքի արտադրության ծավալը պետք է մեծանա 46 տոկոսով, ծրագրված է շահագործման հանձնել 100 նոր ձեռնարկություն, այսինքն՝ ավելի քան երկու անգամ ավելի, քան նախորդ հնգամյակում: Առավել քան երկու անգամ ավելանալու է արտադրանքի թողարկումը արդյունաբերության այնպիսի առաջատար ճյուղերում, ինչպիսիք են քիմիականն ու նավթաքիմիականը, սարքերի ու ավտոմատիկայի միջոցների արտադրությունը: Հնգամյա պլանով նախատեսվում է գյուղատնտեսական արտադրանքի արտադրությունը ավելացնել 38 տոկոսով:

Համագումարից հետո անցած ժամանակաշրջանը ակներևորեն ցուցադրեց կուսակցության պատմական որոշումների խոր ներգործությունը ողջ աշխարհի արդի զարգացման վրա: Իններորդ հնգամյակի առաջին և ընթացիկ տարվա



արդյունքները ակնառու ցույց են տալիս, որ սովետների երկիրը հաստատուն քայլերով ընթանում է ՍՄԿԿ XXIV համագումարի նշած ուղիով: Կենսագործելով հնգամյակի կարևորագույն խնդիրները, կուսակցությունն ու ժողովուրդը մեծ հաջողությունների են հասել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, հասարակական հարաբերությունների հետագա կատարելագործման, աշխատավորների բարեկեցության բարձրացման ասպարեզում:

Ադրբեջանի կուսակցական կազմակերպությունը, բոլոր աշխատավորները ակտիվ լծվել են հնգամյակի առաջադրանքների կատարման համար ծավալված պայքարին: Կուսակցական կազմակերպությունների կազմակերպչական ու դաստիարակչական մեծ գործունեության, բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի աշխատանքային խանդավառության և քաղաքական ակտիվության շնորհիվ գերակատարվեցին 1971 թվականի պլանային առաջադրանքներն ու սոցիալիստական պարտավորությունները արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության բոլոր հիմնական ցուցանիշներով:

1971 թվականին Ադրբեջանի գյուղատնտեսության աշխատողները երկրորդ անգամ հաղթող դուրս եկան միութենական հանրապետությունների համամիութենական սոցիալիստական մրցության մեջ և նորից արժանացան ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽՍ-ի փոխանցիկ Կարմիր դրոշին:

Մրցության մեջ մտնելով ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակը արժանավայել դիմավորելու համար, Ադրբեջանական ՍՍՀ աշխատավորները հնգամյակի երկրորդ տարում ևս զգալի հաջողությունների հասան: Ժամկետից շուտ կատարվել է արդյունաբերական արտադրանքի կարևորագույն շատ տեսակների արտադրության ու իրացման ծավալի տասն ամսվա պլանը:

Բարձր տեմպերով են աճել սարքաշինության, էլեկտրատեխնիկական արդյունաբերության և նավթարդյունաբերական մեքենաշինության ձեռնարկությունները: Անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ արտադրված են զգալիորեն ավելի շատ էլեկտրաէներգիա, սև մետաղների գլանվածք, նավթամթերքներ, գյուղատնտեսական մեքենաներ, հանքային պարարտանյութեր և այլն: Զգալիորեն աճել է ժողովրդական սպառման ապրանքների՝ բրդյա ու մետաքսյա գործվածքների, կարի արտադրատեսակների, կոշիկի, կահույքի, սառնարանների արտադրությունը: Սկսվել է արդյունաբերական արտադրանքի մոտ 60 նոր տեսակների արտադրությունը:

ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ մեծ հաջողությունների են հասել Ադրբեջանի գյուղատնտեսության աշխատողները:

Գյուղի աշխատավորների խանդավառության, կուսակցական, սովետական և գյուղատնտեսական օրգանների կազմակերպչական ու դաստիարակչական նպատակասլաց աշխատանքի շնորհիվ հաղթահարվեցին եղանակային անբարենպաստ պայմանների հետևանքով առաջացած լուրջ դժվարությունները և զգալիորեն աճեց հացահատիկի, բամբակի, ծխախոտի, բանջարեղենի, թեյի կանաչ տերևի և այլ կուլտուրաների համախառն արտադրությունն ու բերքատվությունը: Մեծ հաղթանակ տարան Ադրբեջանի բամբակագործները: Կատարելով բամբակացան հանրապետությունների Տաշքենդում գումարված կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովում ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, նրանք հավաքեցին ու պետությանը վաճառեցին ավելի քան 430 հազար տոննա «սպիտակ ոսկի»— պլանային առաջադրանքից 85 հազար

տոննայով ավելի: Ադրբեջանում առաջին անգամ հավաքվեց այդպիսի քանակությամբ բամբակ:

Մեր երկրագործները ժամկետից շուտ կատարեցին հացահատիկի գնման պլանները, հայրենիքի շտեմարանները լցնելով 230 հազար տոննա հացահատիկ՝ պլանով նախատեսված 130 հազար տոննայի դիմաց: Լավ աշխատեցին նաև բանջարաբույծները, պլանավորված 320 հազար տոննայի դիմաց մթերելով մոտ 350 հազար տոննա բանջարեղեն: Մոսկվա, Լենինգրադ և երկրի արդյունաբերական այլ կենտրոններ է առաքվել մոտ 200 հազար տոննա վաղահաս բանջարեղեն: Գերակատարվել են բոժոժի, կարտոֆիլի, պտուղների, բոստանային կուլտուրաների, թեյի կանաչ տերևի, բրդի մթերումների պլանները:

Գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերված հաջողությունների համար բացառիկ կարևոր նշանակություն ունեցավ Տաշքենդի կուսակցական-տնտեսական աշխատողների հավաքը, որը ղեկավարեց ՍՄԿԿ Կենտկոմի Գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևը: Նրա վառ ու շատ բովանդակալից ելույթը, նրա կոնկրետ ցուցումները դրվեցին մեր կուսակցական-տնտեսական ողջ աշխատանքի հիմքում:

Սովետական Ադրբեջանի բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունն ու աշխատավոր ինտելիգենցիան լի են վճռականությամբ՝ նորանոր հաջողությունների հասնելու հարապատ կուսակցության XXIV համագումարի պատմական որոշումների կենսագործման համար ծավալված պայքարում:

***

Մոտենում է մեր անծայրածիր հայրենիքի ժողովուրդների մեծ տոնը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակը: Այդ տոնը կհանդիսանա բազմազգ սովետական պետության վեհության ու հզորության ցուցադրումը, Սովետական Միության կոմունիստական կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի լենինյան իմաստուն ազգային քաղաքականության հաղթանակը:

Ադրբեջանական ժողովուրդը ռուս մեծ ժողովրդի գլխավորած սովետական ժողովուրդների միասնական համերաշխ ընտանիքում, լենինյան կուսակցության ղեկավարությամբ, փառապանծ հաղթանակների ճանապարհով հաստատաքայլ ընթանում է դեպի կոմունիզմ:



Է. Ա. ՇԵՎԱՐԴՆԱՁԵ

Վրաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար

# ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԼԵՆԻՆՅԱՆ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ԱՐԵՎԻ ՆԵՐՔՈ

ՁԱՐԳԱՑԱԾ սոցիալիզմի դարաշրջանի եռակի շքանշանակիր Սովետական Վրաստանը ժողովուրդների բարեկամության փառապանծ տոնը՝ ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակը, դիմավորում է տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր բնագավառների հաջողություններով:

Մեր երկրում տոնական չտեսնված տրամադրություն է տիրում: Սովետների երկրի ժողովուրդները հայրենիքին զեկույց են տալիս աշխատանքային նորանոր նվաճումների մասին և, հետադարձ հայացք գցելով 1922 թ. դեկտեմբերի 30-ից հետո ընկած ուղուն, հպարտության մեծ զգացումով են տեսնում, թե ինչ էին իրենք, ինչի են հասել և ինչի կհասնեն, երբ կենսագործեն կոմունիստական կուսակցության հոյակապ կանխագծումները:

Մարդկության քաղաքակրթության պատմության համար 50 տարին ակնթարթի է նման: Սակայն սովետական ժողովուրդների կյանքում վերջինս ունեցավ բացառիկ նշանակություն: Այդ կես դարը, որը լուսավորվել է լենինյան գաղափարներով, ղեկավարվել է կոմունիստական կուսակցության ու սովետական կառավարության կողմից, մի ամբողջ դարաշրջանի է հավասար:

Դրանք սոցիալական և ազգային ճնշումից վերծ, ժողովուրդների ստեղծագործական ազատ աշխատանքի համակողմանի ծաղկման տարիներ են, սոցիալ-քաղաքական բացառիկ հաջողությունների տարիներ:

Դա ժողովուրդների պատմության մեջ չտեսնված ազգային և միասնական միութենական պետականության ստեղծման, ազգային ճնշումից և բուրժուական նացիոնալիզմից ձերբազերծ ժամանակաշրջան է, հեղափոխության և մեծ նավավարի՝ Լենինի ուղիով ընթացող սովետական ազգերի և ազգությունների զարգացման ժամանակաշրջան:

Այդ սովետական ժողովուրդների կուլտուր-տնտեսական զարգացման մակարդակում անհավասարության վերացման, սովետական յուրաքանչյուր ազգի ու ազգության տնտեսական և սոցիալական կյանքի համակողմանի անշեղ վերելքի, գիտական և տեխնիկական մտքի, բովանդակությամբ սոցիալիստական, ձևով ազգային կուլտուրայի ծաղկման դարաշրջան է: Այդ պլանաչափորեն զարգացող համամիութենական տնտեսական կոմպլեքսի ձևավորման և

դրա հիման վրա սովետական աշխատավորների աննախընթաց արագ տեմպերով նյութական ու հոգևոր կյանքի մակարդակի անշեղ բարձրացման դարաշրջան է, կապիտալիզմի հետ տնտեսական մրցությունում նորանոր հաջողությունների ձեռքբերման դարաշրջան, այլ խոսքով, այդ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, կոմունիստական հասարակական հարաբերությունների և նոր մարդու՝ կոմունիզմ կառուցող մարդու ձևավորման ոլորտում պատմական նոր իղումների դարաշրջան է:

«Բազմազգ սոցիալիստական պետության կազմավորումը,— ասված է Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակի նախապատրաստության մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— կոմունիստական կուսակցության ղեկավարության ներքո բանվոր դասակարգի կողմից գլխավորվող բոլոր սովետական ժողովուրդների հեղափոխական ստեղծագործության ակնառու արգասիքն է»:

Միանգամայն բնական է ու օրինաչափ, որ սովետական բազմազգ պետության ստեղծման համաշխարհային-պատմական իսկայական նշանակություն ունեցող հարուստ փորձը դարձել է ժամանակակից աշխարհի զարգացման մայրուղին նախորոշող կարևոր գործոն: Այդ ազդեցության հիմնական արտահայտությունն է երկրորդ համաշխարհային պատերազմից հետո սոցիալիստական հեղափոխության հաղթանակը Արևելյան Եվրոպայի ու Ասիայի մի ամբողջ շարք երկրներում, ինչպես նաև ամերիկյան մայրցամաքում՝ Կուբայում ու, դրանց բազայի վրա, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ստեղծումը, իմպերիալիզմի գաղութային ու նեոգաղութային սիստեմի փլուզումը, դրա բեկորների վրա ազատ երկրների, այսպես կոչված՝ «երրորդ աշխարհի» առաջացումը, որոնց մի մասը ընտրել է զարգացման ոչ-կապիտալիստական ուղին, սոցիալիզմի ուղին:

Մեր դարաշրջանը բնորոշվում է բարձր զարգացած կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի հակամոնոպոլիստական, սոցիալ-ազատագրական շարժման խորացմամբ, կապիտալի երկրներում քաղաքական դասակարգային պայքարի է՛լ ավելի սրմամբ:

Սովետական ժողովուրդների պատմությունը անքակտելի է համաշխարհային պատմական պրոցեսից: Սովետական բազմազգ ժողովրդի ստեղծումն ու զարգացումը, սոցիալիստական ազգերի համակողմանի ծաղկումն ու մերձեցումը, նրանց գաղափարա-քաղաքական սերտ միասնությունը՝ սոցիալիզմի, կոմունիզմի կառուցման ընդհանուր պատմական օրինաչափությունն է, լենինյան ազգային քաղաքականության իրականացման նշանաբանով ընթացող օբյեկտիվ պրոցեսը:

«Սոցիալիստական շինարարության տարիներին մեր երկրում առաջացավ *մարդկանց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդ*,— նշեց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում:— Համատեղ աշխատանքում սոցիալիզմի համար մղված պայքարում, նրա պաշտպանության մարտերում ծնունդ առան դասակարգերի և սոցիալական խմբերի, ազգերի և ազգությունների նոր, ներդաշնակ հարաբերություններ՝ բարեկամության ու համագործակցության հարաբերություններ: Մեր մարդիկ կոդված են մարքս-լենինյան գաղափարախոսության, կոմունիստական հասարակարգի կառուցման վսեմ նպատակների ընդհանրությամբ: Սովետական բազմազգ ժողովուրդը այդ միաձույլ համախմբվածությունը ցուցադրում է իր աշխատանքով, կոմունիստական կուսակցության քաղաքականությանը միահամուռ հավանություն տալով (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 101):



Սովետական պետության ստեղծման կեսդարյա փորձը առավել ակնառու է ցույց տալիս մեր կուսակցության լենինյան ազգային քաղաքականության ճշտությունն ու անպարտելիությունը: Աշխարհի ժողովուրդները ավելի ու ավելի են համոզվում, որ այդ քաղաքականության անշեղ իրականացման շնորհիվ կապահովվի մարդկության պատմության մեջ սոցիալ-քաղաքական ամենաբարդ պրոբլեմներից մեկի— ազգային հարցի լուծումը՝ տարբեր ազգերի ու ազգությունների աշխատավորների շահերին համապատասխան: Այժմ նրանց համար առավել քան պարզ է դառնում, որ սովետական ազգերն ու ազգությունները, յուրաքանչյուրն առանձին և բոլորը միասին, հենց այդ ճանապարհով են կարողանում իրականացնել բոլոր ժամանակների և բոլոր ժողովուրդների աշխատավորների նվիրական երազանքը՝ այնպիսի մի հասարակարգ են կառուցում, ուր գործելու է հումանիստական բարձր սկզբունքը՝ «Յուրաքանչյուրից՝ ըստ ունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ պահանջմունքների»:

Սովետական Վրաստանի պատմությունը՝ սովետական ժողովուրդների պատմության օրգանական, անքակտելի մասն է: Այն սկզբնավորվում է մարդկային քաղաքակրթության հեռավոր ակունքներից:

Վրաց ժողովուրդը դարեր շարունակ բուռն կերպով երազել է իր հայրենիքի ազատության, տնտեսության ու կուլտուրայի ծաղկման, ապագա սերունդների երջանիկ կյանքի մասին: Եվ ո՛չ միայն երազել է, այլև հերոսաբար պայքարել հայրենի երկրի ազատության համար:

Վրաց ժողովրդի կյանքում մեծ դեր է կատարել Վրաստանի Ռուսաստանին կամավոր միանալու պատմական ակտը: Այդ ակտի առաջադիմականությունը ակնհայտ դարձավ հատկապես Ռուսաստանի հեղափոխական շարժման զարգացման պրոլետարական փուլում: Վրաստանի աշխատավորների ազատագրական պայքարը սկզբից ևեթ դարձավ ռուսաստանյան պրոլետարիատի հեղափոխական շարժման անբաժան մասը: Ստեղծվելով ու գործելով այստեղ, լենինյան սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները մշտապես եղել են բոլշևիկյան կուսակցության հուսալի հենարանը: Նրանք փայլուն էջեր են գրել ցարիզմի դեմ մղված անլեզալ ծանր պայքարի պատմության, Ռուսաստանի երեք հեղափոխության տարեգրության մեջ:

Անդրկովկասում սոցիալական և ազգային ազատագրության համար մղված պայքարում, վրացիների հետ ուս-ուսի տված, բուրժուական-կալվածատիրական ամրոցի՝ ինքնակալության վրա գրոհեցին ռուսներն ու ուկրաինացիները, հայերն ու ադրբեջանցիները, աբխազներն ու օսերը, Ռուսաստանի մյուս ժողովուրդների ներկայացուցիչները:

Վ. Ի. Լենինը բարձր է գնահատել Անդրկովկասի ժողովուրդների աշխատավորների ինտերնացիոնալ այդ համախմբումը. «...Կովկասում ս.-դ. վրացիները+հայերը+թաթարները+ռուսները աշխատում էին *միասին տասը տարուց ավելի* միասնական ս.-դ. կազմակերպության մեջ: Այդ ֆրազ չէ, այլ ազգային հարցի պրոլետարական լուծում: Միակ լուծումը» (Երկեր, հ. 35, էջ 79):

Ինչպես հայտնի է, հոկտեմբերի արևը Վրաստանի վրա ծագեց 1921 թ. փետրվարի 25-ին: Մենշևիկյան ռեժիմի տապալման և սովետական իշխանության հաստատման գործում մեկ, ինչպես և եղբայրական ադրբեջանական

ու հայ ժողովուրդներին վճռական օգնություն ցույց տվեց Սովետական Ռուսաստանի պրոլետարիատը:

Մենշևիկների, դաշնակցականների և մուսավաթականների տիրապետությունն Անդրկովկասում, նրանց հրավիրած օտարերկրյա օկուպանտների սանձարձակությունները լիովին քայքայեցին, առանց այն էլ համաշխարհային իմպերիալիստական պատերազմի հետևանքով անկում ապրող ժողովրդական տնտեսությունը: Այսպես, Վրաստանում մենշևիկների տիրապետության շրջանում, բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությունը, 1913 թ. մակարդակի համեմատ, նվազեց ավելի քան տասն անգամ: Անդրկովկասի մենշևիկյան, դաշնակցական և մուսավաթական մարիոնետային կառավարությունները համաժողովրդական մի շարք պրոբլեմների հետ մեկտեղ, չկարողացան լուծել նաև ազգային հարաբերությունների պրոբլեմը: Ինտերնացիոնալիզմի փոխարեն իրականացվում էին բուրժուական նացիոնալիզմի սկզբունքները, բարեկամության փոխարեն թշնամությունն ու երկպառակությունն էին թագավորում ժողովուրդների մեջ:

Սովետական իշխանության հաստատումից հետո Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրը դարձավ՝ քայքայված արդյունաբերության ու գյուղատնտեսության վերականգնումն ու եղբայրական ժողովուրդների միջև հարաբերությունների բարելավումը, նրանց շրջանում սոցիալիստական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի խորացումն ու ամրապնդումը: Այդ գործունեության գլխավոր, անմիջական արգասիքը աշխատավոր կանգվածների լայնորեն ծավալված շարժումն էր՝ հանուն Անդրկովկասյան ֆեդերացիայի ստեղծման:

Անդրկովկասի և եղբայրական մյուս ժողովուրդները կուսակցության իմաստուն ղեկավարությամբ պատվով կատարեցին Վ. Ի. Լենինի ցուցումը, ստեղծեցին «...ազգային խաղաղության մի այնպիսի օրինակ, որը չի տեսնված բուրժուազիայի ժամանակ և անհնարին է բուրժուական հասարակարգում» (Երկեր, հ. 32, էջ 402):

Կուսակցությունն ու սովետական կառավարությունը աչքի լույսի պես պահպանում, ամեն կերպ պաշտպանում ու ամրապնդում են հավատարմությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմին, մեր սոցիալիստական հայրենիքի ժողովուրդների բարեկամությունն ու եղբայրությունը: Կուսակցությունը մի հսկայական հունի մեջ է միավորում սովետական բոլոր ազգերի ու ազգությունների, ողջ աշխատավորների ստեղծագործական եռանդը, համախմբում ու ոգեշնչում նրանց կոմունիստական մեծ շինարարության նորանոր խնդիրների լուծմանը: Մեր հանրապետությունը ապագայի նկատմամբ խոր հավատով տոգորված, հավասարների համաստեղության մեջ ընթանում է ծաղկման ու երջանկության ուղիով, իր հաջողություններով, համամիութենական գանձարանը անընդհատ հարստացնող իր ավանդով մոտեցնում լիակատար կոմունիզմի հաստատման դարաշրջանը:

Սովետական իշխանության տարիներին բազմազգ Վրաստանը, ուր վրացիների, աբխազների, օսերի հետ մեկտեղ, միասնական եղբայրական ընտանիքում ապրում և աշխատում են ռուսներ ու ուկրաինացիներ, հայեր ու ադրբեջանցիներ, էստոնացիներ ու մոլդավացիներ, հույներ ու լատիշներ— ավելի քան 80 ազգերի ու ազգությունների ներկայացուցիչներ, հետամնաց, կիսագաղութային ցարական Ռուսաստանի ծայրամասից վերածվեց սոցիալիստական



ինդուստրիալ-ագրարային առաջավոր հանրապետության, բարձր զարգացած արդյունաբերություն, բազմաճյուղ կոլեկտիվ գյուղատնտեսություն և համակողմանի զարգացող կուլտուրա ունեցող երկրի: Ահա մի քանի ուշագրավ տարեթվեր Սովետական Վրաստանի տարեգրությունից:

1935 թվական— Վրացական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը սոցիալիստական շինարարության ասպարեզում ձեռք բերած նշանակալի հաջողությունների համար արժանացավ կառավարական բարձր պարգևի՝ Լենինի շքանշանի:

1965 թվական— տնտեսական և կուլտուրական շինարարության ոլորտի նվաճումների համար Վրացական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը երկրորդ անգամ պարգևատրվեց Լենինի շքանշանով:

1971 թվական— Հեղափոխական շարժման, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի և աշխարհում առաջին սոցիալիստական բազմազգ պետության՝ ՍՍՀՄ ամրապնդման համար կատարած մեծ ծառայությունների, մեր հայրենիքի թշնամիների դեմ մղված պայքարում հանրապետության աշխատավորների ցուցաբերած հերոսության և կոմունիստական շինարարության ոլորտում ձեռք բերած նվաճումների համար Վրացական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը պարգևատրվեց Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանով: Վրաստանի աշխատավորները կուսակցության և կառավարության այդ բարձր գնահատականին արժանացան իրենց ժրաջան աշխատանքով, Հոկտեմբերի նվաճումների պահպանման ու բազմապատկման, կոմունիստական իդեալների իրականացման համար մղած անձնուրաց պայքարով:

Սովետական Վրաստանի պատմության էջերում առհավետ գրառվել են հանրապետության բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական ինտելիգենցիայի հերոսական մեծագործությունները՝ ժողովրդական տնտեսության ինդուստրացման, գյուղատնտեսության կոլեկտիվացման, կուլտուրական հեղափոխության իրականացման տարիներին. հավերժ կհիշվի մեր ժողովրդի մարտական սխրանքը՝ Հայրենական մեծ պատերազմի տարիներին և աշխատանքային արիությունը՝ մեր երկրում սոցիալիզմի ու կոմունիստական շինարարության բոլոր ժամանակներում և տեղամասերում:

Հանրապետության աշխատավորները եղբայրական ժողովուրդների օգնությամբ, գրեթե խոպանում ամբարձեցին սոցիալիստական ինդուստրիայի հըսկաները, ստեղծեցին ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության պահանջներին համապատասխան ժողովրդական տնտեսություն:

Հանրապետության ինդուստրացման շրջանի առաջնեկներն էին՝ Զագէսը, Վութայիսի մահուդի ֆաբրիկան, Զեստաֆոնի երկաթամիահալվածքի, Թբիլիսիի Ս. Մ. Կիրովի անվան հաստոցաշինական գործարանները և այլ խոշոր ձեռնարկություններ:

Արդյունաբերության հիմնաքարը մեր հանրապետությունում դրվեց եղբայրական ժողովուրդների, առաջին հերթին, ռուս պրոլետարիատի բարեկամական օգնությամբ: Սովետական Ռուսաստանը Զագէսի շինարարությանը հատկացրեց 750 հազար ռուբլի ոսկով: Հարկ է նշել, որ դա մեր երկրի լենինյան էլեկտրիֆիկացման պլանից՝ ԳՈԷԼՌՈ-ից բխող երկրորդ էլեկտրակայանն էր: Մոսկովյան բանվորները մահուդի ֆաբրիկայի համար ուղարկեցին անհրա-

ժեշտ բոլոր սարքավորումները, և մենք Քութայիսում կառուցեցինք այդ փաբրիկան... Հայրենական մեծ պատերազմից հետո Վրաստանի քարտեզի վրա երևան եկան Ռուսթավին, Վալեն, Մադնեուլին, Քվախսան և արդյունաբերական այլ նոր կենտրոններ, կառուցվեցին արդյունաբերական նոր հսկաներ՝ Թբիլիսիի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրաքարշաշինական, Քութայիսի ավտոմոբիլային, Դմիտրովի անվան ավիա գործարանները, Ռուսթավիի մետալուրգիական գործարանը, քիմիական կոմբինատը և այլն:

Կուսակցության լենինյան ազգային քաղաքականության անշեղ իրականացման շնորհիվ Վրաստանի ժամանակակից արդյունաբերությունը աչքի է ընկնում իր բազմաճյուղությամբ և գիտատեխնիկական բարձր մակարդակով: Սովետական Վրաստանն այսօր արտադրում է՝ չուգուն, պողպատ, գլանվածք, ավտոմոբիլ, մագիստրալային էլեկտրաքարշեր, ունիվերսալ խառատա-պտուտակային և բարձր ճշգրտության հղկման հաստոցներ, էլեկտրապոդման սարքավորումներ, բազում ճշգրիտ պրիբորներ, էլեկտրաշարժիչներ, սուպաթևերով կատերներ, հաշվիչ մեքենաներ, աշտարակային կռունկներ, մեքենաներ՝ սննդարդյունաբերության համար, պլաստմասե իրեր, արտեկյան պոմպեր, հողածծիչ սարքեր, գյուղատնտեսական մեքենաներ, թունաքիմիկատներ, մանգան, երկաթամիահալվածք, շինարարական նյութեր, ժողովրդական սպառման ապրանքների մեծ ասորտիմենտ և այլն:

Վրացական մակնիշի իրերն առաքվում են սովետական եղբայրական բոլոր հանրապետությունները և աշխարհի ավելի քան 70 երկրներ: Այդ արտադրանքը, ինչպես և վրացական թեյը, ցիտրուսները, կոնյակները, գինիները, հանքային ջրերը, հատկապես «Բորժոմին», մեծ հավանության են արժանանում ինչպես մեր երկրում, այնպես և նրա սահմաններից դուրս: Դրանց պահանջարկը անընդհատ ավելանում է:

Արդյունաբերական արտադրանքների ծավալը հանրապետությունում, 1922 թ. համեմատ, ավելացել է 85 անգամ: Այժմ 4—5 օրում մենք այնքան արտադրանք ենք տալիս, որքան մինչհեղափոխական Վրաստանում արտադրվում էր ամբողջ տարվա ընթացքում: Բնակչության մեկ շնչի հաշվով, մենք ավելի շատ չուգուն ենք արտադրում, քան Իտալիան և Ճապոնիան, պողպատ՝ ավելի, քան Նորվեգիան, Շվեյցարիան և Թուրքիան՝ միասին վերցրած, ցեմենտ՝ ավելի, քան Ճապոնիան և Անգլիան:

Հանրապետության ժողովրդական տնտեսության հզոր վերելքը արգասիք է համապատասխան էներգետիկ բազայի, ամենից առաջ, հիդրոէլեկտրա-էներգետիկ բազայի: Մեզ մոտ գործում է ավելի քան 765 էլեկտրակայան: 1970 թ., ութերորդ հնգամյակի վերջին տարում, դրանք արտադրեցին մոտ 9 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա:

Վերջին տարիներին հանրապետության մայրաքաղաք Թբիլիսիում գործարկվեց աշխարհում 33-րդ մետրոպոլիտենի առաջին հերթը: Այժմ երկրորդ հերթի շինարարության հսկայական աշխատանքներն են ծավալվել:

Լենինյան կոոպերատիվ պլանի իրականացման հիման վրա կատարված արմատական վերափոխումների շնորհիվ, լիովին փոխվել է հանրապետության գյուղատնտեսությունը: Դրա մասնագիտացումն ու տեղը համամիութենական աշխատանքի բաժանման մեջ որոշվել է ըստ մեր երկրի բարենպաստ բնատնտեսական պայմանների: Սովետական իշխանության տարիներին այստեղ զարգացան գյուղատնտեսական միանգամայն նոր ճյուղեր— թեյաբուծությու-



նը, ցիտրուսաբուծությունը, արդյունաբերական պտղաբուծությունն ու խաղողագործությունը, ծխախոտագործությունը, եթերայուղային հումքի, տունգի պտուղների, շաքարի ճակնդեղի, դափնետերևի, բամբուկի և գյուղատնտեսական այլ արտադրանքների արտադրությունը: Վրաստանը տալիս է երկրի թեյի արտադրանքի գրեթե 95 տոկոսը: Բարձր տեսակարար կշիռ ունեն նաև խաղողի, տեխնիկական կուլտուրաների արտադրությունը:

Բարձրացել է գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման, մեխանիկացման և քիմիացման մակարդակը: Մինչև հեղափոխությունը վրացի գյուղացու հիմնական գործիքը փայտե հին արորն էր: Այժմ հանրապետության գյուղատնտեսության մեքենայական պարկում կան տասնյակ հազարավոր տրակտորներ, կոմբայններ, բեռնատար ավտոմեքենաներ և այլ տեխնիկա: Ներկայումս հանրապետության դաշտերում բանում են հարյուրավոր թեյահավաք մեքենաներ, թեյակտրիչ ապարատներ և ինքնագնաց շասսիներ, որ վրաց ինժեներների ու կոնստրուկտորների մտքի արգասիքն են:

Հանրապետության գյուղատնտեսական հզոր վերելքի համար կարևոր նշանակություն է տրվում մելիորացիոն աշխատանքներին, որի վրա էր կենտրոնացնում վրաց կոմունիստների ուշադրությունը Վ. Ի. Լենինը: Մեզ մոտ ստեղծվել է ոռոգման լայն սիստեմ, լուրջ միջոցներ են ձեռնարկվել Կոլխիդայի ճահճահողերի չորացման համար: Այսօր, ոռոգելի հողատարածությունները հանրապետությունում հասնում են 350 հազար հեկտարի, որը 1921 թվականի համեմատ, գրեթե չորս անգամ ավելի է:

Բոլոր այդ հսկայական հաջողությունները ձեռք են բերվել հանրապետության բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ինտելիգենցիայի անձնուրաց աշխատանքով, շնորհիվ եղբայրական սովետական հանրապետությունների անշահախնդիր, բազմակողմանի օգնության: Դրա փայլուն օրինակն է ժողովուրդների բարեկամության քաղաքը՝ Ռուսթավին, որը հանրապետության քարտեզի վրա հայտնվեց ընդամենը քառորդ դար առաջ: Երիտասարդ սոցիալիստական այդ քաղաքում, միասնական եղբայրական աշխատավոր ընտանիքում ապրում են ավելի քան քառասուն ազգությունների ներկայացուցիչներ:

Թշնամու հրոսակախմբերի մշտական ասպատակությունների հետևանքով բազմիցս ավերված քաղաքի՝ «Բոստան-քալակիի» փլատակների վրա, 1944 թ. գարնանը, վրաց ժողովուրդը, եղբայրական պատվիրակների հետ միասին, սկսեց նոր քաղաքի կառուցումը: Իսկ այդ ժամանակ, Վրաստանի 3 հազար պատանիներ Ռուսաստանի և Ուկրաինայի խոշորագույն ձեռնարկություններում տիրապետում էին մետաղի հալման բարդ ու պատվավոր արվեստին: Երիտասարդ մասնագետների հետ Ռուսթավի եկան նաև նրանց ուսուցիչները— եղբայրական հանրապետությունների մետալուրգները: Ռուս և ուկրաինացի շատ պողպատաձուլողներ ընդմիշտ մնացին այստեղ, համալրելով հանրապետության կադրային բանվորների ոսկե փոնդը: Սովետական ժողովուրդների անխախտ բարեկամությունն ու եղբայրությունը, Վրաստանի մետալուրգիական հսկայի շինարարության հերոսական առօրյան արտացոլվել է հանրապետության պատմական և գեղարվեստական տարեգրության մեջ:

Մեր ողջ երկիրը կառուցեց Ռուսթավին: Մոսկովյան ինժեներներն ու կոնստրուկտորները նախագծեցին մետալուրգիական գործարանը, Լենինգրադից, Չելյաբինսկից, Նովո-Կրամատորսկից և արդյունաբերական այլ կենտրոններից ստացվում էին նորագույն կառուցվածքի շինարարական մեխանիզմներ, կանայան սարքավորումներ, ավտոմեքենաներ, ճշգրիտ սարքեր:

Սովետական ժողովուրդների հանուր ջանքերով կառուցվեցին Ռուսթավիի նաև մյուս հսկաները՝ քիմիական կոմբինատը, քիմիական նրբաթելի, ցեմենտի, ամբարձիչների, մետաղային կոնստրուկցիաների գործարանները և այլ ձեռնարկություններ:

Վրաստանի որդիներն ու դուստրերը Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի օրերին պայքարում էին անձնուրացորեն, հերոսաբար մարտընչում քաղաքացիական կռիվներում: Վրաստանի բազմաթիվ պատվիրակներ կռվում էին ուկրաինական և բելոռուսական ռազմաճակատներում, նրանք Մոսկվայի, Լենինգրադի և Ստալինգրադի պաշտպանների հետ էին, գործում էին պարտիզանական միավորումներում՝ թշնամու թիկունքում, ժամանակավորապես օկուպացված սովետական տերիտորիայում, մասնակցում ֆաշիստական լծից Եվրոպայի ժողովուրդների ազատագրմանը:

Վրաստանն ակտիվորեն մասնակցել է եղբայրական ժողովուրդների թշնամուց ազատագրված սովետական շրջանների ժողովրդական տնտեսության վերականգնմանը, այնտեղ է ուղարկել նյութական արժեքներ ու մասնագետների: Հանրապետության երիտասարդությունը կզալի ավանդ է ներդրել Ղազախստանի և Ալթայի խամ ու խոպան հողերի յուրացման համար: Դա ժողովուրդների բարեկամության գաղափարների պրակտիկ մարմնավորումն է: Այդպես է եղել պատերազմի ընթացքում, այսպես է նաև խաղաղ շինարարության տարիներին: Դա մեր բազմազգ հայրենիքի կյանքի օրենքն է:

Երբ որևէ եղբայրական հանրապետություն աջակցության կարիք է զգում, ողջ սովետական ժողովուրդը նրան օգնության ձեռք է մեկնում: Ամենքին է հայտնի, թե Հայրենական պատերազմի տարիներին եղբայրական ժողովուրդները, ինչպես և վրաց ժողովուրդը ինչպիսի ջերմությամբ, հարազատի պես էին ընդունում էվակուացվող բնակչությանը: Այդպես էր հետպատերազմյան շրջանում, այդպես է և այսօր:

Այս տարվա հուլիսին մեր մայրաքաղաքը ենթարկվեց տարերային աղետի: Այդ լուրը կայծակնային արագությամբ տարածվեց ողջ երկրով: Միութենական կառավարությունը խոշոր միջոցներ հատկացրեց հրատապ աշխատանքների իրականացման համար: Մոսկվան, Մոսկվայի մարզը, միութենական մի շարք մինիստրություններ, եղբայրական հանրապետությունները— ՌՍՖՍՀ, Ուկրաինան, Ուզբեկստանը, Ադրբեջանն ու Հայաստանը Վրաստանում կառուցելու են մոտ 40 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն: Դա կլինի սովետական ժողովուրդների անխախտ բարեկամության հուշարձանը, որի համար մենք երախտապարտ ենք բոլոր եղբայրական ժողովուրդներին:

Մեր հաջողությունների հզոր ազդակներից մեկը սոցիալիստական մրցությունն է, որի ընթացքում ամրապնդվում է Սովետական Միության եղբայրությունն ու բարեկամությունը, բազմապատկվում նրանց փոխօգնությունը, հարստանում կոմունիստական շինարարության փորձը: Սերտ բարեկամությունն ու աշխատանքային մրցությունը մերձեցնում են Ռուսթավիի, Դոնեցկի, Ենակիևոյի, Մագնիտագորսկի, Սումգայիթի մետաղագործներին, Ռուսթավիի,



Դնեպրոձերժինսկու, Սևերոդոնեցկի և Կիրովականի քիմիագործներին, Թբիլիսիի, Մոսկվայի և Երևանի հաստոցաշինարարներին, Թքվիբուլիի և Կրասնոդոնի հանքափորներին: Քաղաք-եղբայրներ են դարձել Թբիլիսին ու Ռիգան, Չիաթուրան և Նիկոպոլը, Քութայիսին, Կիրովաբադն ու Լենինականը: Միմյանց հետ մրցում են Մախարաձեի և Ուկրաինական ՍՍՀ Գենիչեսկի շրջանների, Գորիի և Մոսկվայի մարզի Ռամենսկի, Զուգդիդիի և Ուկրաինական ՍՍՀ Տալալաևսկի, Զեստաֆոնիի և Լիտվական ՍՍՀ Տաուրագի, Օչամչիրի և Ադրբեջանական ՍՍՀ Լենքորանի, Կասպիի և Հայկական ՍՍՀ Արթիկի շրջանների գյուղի աշխատավորները:

Սոցիալիստական մրցության, ստեղծագործական աշխատանքի, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման պրոցեսում սովետական մարդը ձեռք է բերում նոր, կոմունիստական հատկություններ. իրականություն է դառնում կոմունիզմի կառուցման գլխավոր խնդիրներից մեկը՝ կոմունիստական ապագայի մարդու դաստիարակման պրոբլեմը: Ավելի ու ավելի է բազմապատկվում կոմունիստական աշխատանքի հարվածայինների թիվը, անշեղ աճում գյուտարարների ու ռացիոնալիզատորների բանակը, ընդլայնվում աշխատավորների անմիջական մասնակցությունը պետական և տնտեսական գործերի կառավարմանը, նրանք ակտիվորեն են պայքարում արտադրական առաջադրանքների կատարման, սոցիալիստական սեփականության և աշխատանքային կարգապահության պահպանման, հանրային հարստության բազմապատկման ասպարեզում կուսակցության և կառավարության որոշումների հաջող կատարման համար:

Մեր հանրապետությունում և նրա սահմաններից դուրս քաջ հայտնի են արտադրության առաջավորներ, սոցիալիստական աշխատանքի հերոսներ՝ դարբին Կ. Իլուրիձեն և մետալուրգ Վ. Բորոդավկան, պողպատագործ Ա. Պանցուլայան և հաստոցաշինարար Շ. Փիրցխալավան, ավտոշինարար Ի. Խապարաձեն և էլեկտրաքարշաշինարար Ի. Գելաշվիլին, շինարար Վ. Ճելիձեն և հանքափոր Պ. Գոզատիշվիլին, մետրոշինարար Գ. Օբոլաձեն, Կ. Լյուբավսկին, ջուլհակուհիներ Է. Սոլոմոնիան, Վ. Կեմաշվիլին և Ա. Գամրեկելին, թեյագործներ Տ. Չխաիձեն, Կ. Նացվալաձեն և շատ ուրիշներ:

Ներկայումս հանրապետությունում օրեցօր մեծ թափ է ստանում և ընդլայնվում «հնգամյակի խնդիրները՝ չորս տարում» նշանաբանը կրող շարժումը, որի նախաձեռնողներն են մանող Մ. Արաթանաշվիլին և ոլորող բանվորուհի, սոցիալիստական աշխատանքի հերոս Ե. Կոցիցաշվիլին:

Աշխատավորների քաղաքական, հանրակրթական և պրոֆեսիոնալ կարգացման բարձր մակարդակ նվաճվեց կուլտուրական հեղափոխության լենինյան ծրագրի հաջող իրականացման շնորհիվ:

Հին ինքնատիպ մշակույթի երկիրը՝ Վրաստանը, սովետական եղբայրական ժողովուրդների կուլտուրական սերտ կապերի, գիտական և կուլտուրական նվաճումների փոխանակման պայմաններում ու դրանց հիման վրա, նշանակալի հաջողությունների հասավ ժողովրդի համակողմանի կարգացման բնագավառում:

Հանրահայտ են Սովետական Վրաստանի նվաճումները ժողովրդական կրթության ոլորտում: Մինչ հեղափոխական ժամանակաշրջանի համեմատ. այժմ հանրապետությունում գործում են 900-ով ավելի ութամյա, 38 անգամ ավելի միջնակարգ հանրակրթական, 30 անգամ ավելի միջնակարգ տեխնիկա-

կան և պրոֆտեխնիկական դպրոցներ, 9 անգամ ավելի բարձրագույն ուսումնական հաստատություն: Դրանցում սովորում են 1.400 հազար պատանիներ ու աղջիկներ: Միջնակարգ և բարձրագույն կրթություն ունեցողների թվով Վրաստանը աշխարհի առաջավոր երկրներից մեկն է:

Հանրապետության դպրոցներում ավանդումն իրականացվում է վեց տարբեր լեզուներով: Սովետական իշխանությունը հավասար հարգանքով է վերաբերվում բոլոր լեզուներին և դրանց զարգացման համար ստեղծում հավասար պայմաններ: Վրացական դպրոցներում գիտելիքներ են ձեռք բերում սովորող երիտասարդության 70 տոկոսը, մնացած մասը սովորում է ռուսերեն, հայերեն, ադրբեջաներեն, աբխազերեն և օսերեն լեզուներով:

Սովետական Վրաստանում լայնորեն զարգանում է գիտությունը: Հանրապետության գիտությունների ակադեմիան ընդգրկում է գիտա-հետազոտական ինստիտուտների, կայանների, լաբորատորիաների լայն ցանց: Այն սերտ կապված է ո՛չ միայն Վրաստանի, այլև մեր ողջ երկրի տնտեսական պրակտիկայի հետ: Գիտական կոլեկտիվները հաջողությամբ են լուծում գիտա-տեխնիկական առաջընթացի պրոբլեմատիկան և գիտությանը կյանքի առաջադրված ժամանակակից այլ խնդիրներ:

Հանրապետությունում զգալի չափով ծավալվել է բնակչության բուժսպասարկումը: Յուրաքանչյուր 10 հազար բնակչին ընկնում է 1,5—3 անգամ ավելի բժիշկ, քան Ամերիկայի Միացյալ Նահանգներում, Անգլիայում և բարձր զարգացած կապիտալիստական այլ երկրներում: Վրաստանը իրավամբ համարվում է համամիութենական առողջարան, աշխարհահռչակ կուրորտների և մասսայական տուրիզմի, երկարակեցության երկիր:

Հանրապետությունում օրըստօրե ընդլայնվում է կուլտուր-լուսավորական հիմնարկությունների ցանցը: Այսօր Վրաստանում գործում են 22 պրոֆեսիոնալ թատրոն, ավելի քան 7000 թանգարան, կուլտուրայի տուն, ակումբ, կինոսարքավորում և աշխատավորների դաստիարակության այլ օջախներ:

Լենինյան ազգային քաղաքականության հետևողական իրականացման, կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության մշտական, անխոնջ հոգատարության շնորհիվ աննախընթաց ծաղկեց վրաց ժողովրդի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան:

Վրաց կուլտուրայի դասական ժառանգության հետ մեկտեղ, սովետական ժողովրդի և աշխարհի ժողովուրդների կուլտուրայի գլուխ-գործոցների ոսկե ֆոնդն են մտել վրաց արդի գրականության ու արվեստի գործիչների բարձրարժեք ստեղծագործությունները:

Ժողովուրդների բարեկամությունը վրաց բազմադարյան գրականության հիմնական թեմաներից է: Բավական է հիշատակել վրացական վերածննդի հանճարեղ ստեղծագործությունը՝ Շ. Ռուսթավելու *Վագրենավորը*— ժողովուրդների բարեկամության անմահ հիմնը: Ով բարեկամ չի որոնում, նա իր ոխերիմ թշնամին է,— գրել է մեծ Ռուսթավելին դեռևս 800 տարի առաջ:

Ժողովուրդների բարեկամության թեման իր արժանի տեղն ունի վրաց սովետական գրականության մեջ: Մեր, ինչպես և ՍՍՀՄ մյուս ժողովուրդների ազգային գրականության մեջ համամարդկային այդ թեմայի գեղարվեստական մեկնաբանման գլխավոր, բնորոշ հատկանիշն ու առանձնահատկությունն այն է, որ վերջինս իրականացվում է սոցիալիստական ռեալիզմի մեթոդով, մարքսլենինյան էսթետիկայի նորագույն նվաճումների, արտացոլման լենինյան տեսության մակարդակով:



Վրաց գրողները ժողովուրդների բարեկամության վերաբերյալ ստեղծել են այնպիսի ստեղծագործություններ, որոնք մտել են ազգային գրականության ոսկե ֆոնդը: Չի կարելի այսօր չհիշել Գալակտիոն Տաբիձեի *«Դալանդ նավը»* սքանչելի բանաստեղծությունը, ուր վրաց գրականության մեջ առաջին անգամ հանդիպում ենք սովետական ժողովուրդների բարեկամության հանճարեղ ստեղծողի՝ մեծ Լենինի անմահ անվանը: Լենինը, Հոկտեմբերը, կոմունիստը, նոր տիպի աշխատավոր մարդը դարձան գեղարվեստական գլխավոր կերպարները, իսկ իրականության հեղափոխական վերափոխումները՝ վրաց գրականության և արվեստի պաթոսն ու հիմնական բովանդակությունը:

Այսօր վրաց գրականության ու արվեստի լավագույն ստեղծագործությունները հայտնի են աշխարհի շատ ժողովուրդներին: Մեր կուլտուրայի այդ մեծ հաղթանակը հնարավոր դարձավ միայն ժողովուրդների լենինյան բարեկամության պայմաններում: Վրաց գրականության և արվեստի մեջ պատմականորեն առանձնահատուկ տեղ է գրավում Անդրկովկասի ժողովուրդների բարեկամությունը:

Վրաստանը միշտ է եղել ժողովուրդների բարեկամության մեծ ավանդների երկիր: Այստեղ են աշխատել ու իրենց գլուխ-գործոցները ստեղծել Ռուսաստանի, Ուկրաինայի, Ադրբեջանի, Հայաստանի և այլ ժողովուրդների որդիներն ու դուստրերը՝ գրողներն ու արվեստի գործիչները: Այդ ավանդն այսօր որակական նոր շրջան է թևակոխել: Թբիլիսիում գործում են ռուսական և հայկական դրամատիկ թատրոններ, Վրաստանի գրողների միությանը կից ստեղծվել են ռուս, ադրբեջանական, հայ, քուրդ գրողների սեկցիաներ, հրատարակվում են ռուսերեն, ադրբեջաներեն, հայերեն և այլ լեզուներով թերթեր ու գրքեր:

Վրաստանում սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրերից կուսակցությունն ու կառավարությունը, իրականացնելով լենինյան ազգային քաղաքականությունը, բոլոր պայմանները ստեղծեցին վրացական թատերական և կիրառական արվեստի, երաժշտության ու կինոյի զարգացման և ծաղկման համար: Սովետական իշխանության տարիներին վրացական արվեստը դուրս է եկել իր ազգային շրջանակներից: Երջանիկ է վրաց սովետական ժողովուրդը, ինչպես և սովետական Կովկասի ողջ ժողովուրդները, որ կուլտուրայի բոլոր ոլորտներում ունի մեծատաղանդ վարպետների մեծ համաստեղություն: Վրաց կուլտուրայի երկինքը սփռված է մեծ ու փոքր աստղերով, որոնց ճաճանչների շնորհիվ առավել լուսավոր է դառնում մեր կյանքը:

Տարբեր ազգերի ու ազգությունների եղբայրության ու բարեկամության ամրապնդման ասպարեզում մեծ դեր են կատարում միութենական հանրապետությունների կուլտուրայի տասնօրյակները, ստեղծագործական կոլեկտիվների փոխանակումը, հոբելյանական տարեթվերի տոնակատարությունները, համատեղ ուժերով թատերական բեմադրությունների իրականացումը և կինոֆիլմերի ստեղծումը: Ուստի, բնական է, որ բազմազգ սովետական կուլտուրայի համընդհանուր տոն են դարձել վրաց մեծ պոետ Շոթա Ռուսթավելու 800-ամյա, վրաց ռոմանտիզմի նշանավոր ներկայացուցիչ Նիկոլոզ Բարաթաշվիլու 150, վրացական օպերային արվեստի հիմնադիր Զաքարիա Փալիաշվիլու 100, սո-

վետական թատրոնի գլխավոր բարենորոգիչներից մեկի՝ Կոտե Մարջանիշվիլու 100-ամյա և այլոց տարելիցները:

Միաժամանակ, վրաց գրականության սեփականությունն է դառնում եղբայրական սովետական ժողովուրդների հոգևոր կուլտուրաների ազգային դասական և ժամանակակից լավագույն ստեղծագործությունները: Վրաց աշխատավորները ծանոթանում են դրանց հետ և՛ բնագրի, և՛ ռուսերեն ու վրացերեն թարգմանությունների միջոցով:

Կյանքն ինքն է հարյուրավոր ու հազարավոր սերտ, անխախտ կապերի, անկեղծ բարեկամության օրինակներ ծնում եղբայրական հանրապետությունների կուլտուրայի գործիչների ու վրացական խոսքի վարպետների, տարբեր հանրապետությունների կուլտուրայի գործիչների ու գիտնականների միջև:

Սովետական մարդու հոգևոր կերպարի ձևավորման գործում վճռական դեր են կատարում քաղաքական գրականությունը, մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը: Մեծ հաջողություններ են ձեռք բերվել աշխատավորության կոմունիստական դաստիարակության մասսայական այդ միջոցների վարգացման ասպարեզում: Մինչև հեղափոխությունը, երկու դարի ընթացքում, Վրաստանում հրատարակվել է ընդամենը 6000 գիրք, մեկ միլիոն ընդհանուր տպաքանակով: Սովետական իշխանության տարիներին լույս է ընծայվել 400 միլիոն օրինակ, ավելի քան 75000 անուն գիրք: Ընդ որում, առավել մեծ թիվ են կազմում մարքսիզմ-լենինիզմի կլասիկների և հեղափոխականների լենինյան կոհորտայի նշանավոր ներկայացուցիչների ստեղծագործությունները, կուսակցության համագումարների ու նրա Կենտրոնական կոմիտեի որոշումները:

Ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների, ազգային կուլտուրայի աննախընթաց վերելքի համար վրաց ժողովուրդը պարտական է սովետական պետության բոլոր հաղթանակների ոգեշնչողին ու կազմակերպչին՝ կոմունիստական կուսակցությանը, նրա իմաստուն լենինյան ազգային քաղաքականությանը. և այսօր սովետական ամեն մի մարդ, բազմազգ սովետական հասարակայնությունը մեծ ոգևորությամբ և աշխատանքային բարձր նվաճումներով է դիմավորում լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի կենդանի, կատարյալ մարմնավորման՝ ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակը:

Վրաստանի աշխատավորները ևս ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակը դիմավորում են աշխատանքային նոր վերելքի, մասսաների քաղաքական ակտիվության պայմաններում: Մեր հանրապետությունում, ինչպես և ողջ երկրում իններորդ հնգամյակը լավ մեկնարկ է վերցրել: Այս տարի ևս նրանք հաջողությամբ են կատարում հնգամյակի երկրորդ տարվա պլանը և ՍՍՀՄ 50-ամյակի պատվին ստանձնած սոցիալիստական պարտավորությունները:

Այդ ամենը հուսալի երաշխիք է՝ ժողովուրդների լենինյան բարեկամության հետագա ծաղկման, մարդկանց պատմական նոր հանրության— սովետական ժողովրդի ձևավորման պրոցեսի ուժեղացման, ժողովուրդ, որի պատմական մեծ առաքելությունը— մարդկության պատմության մեջ ամենաարդարացի հասարակարգի՝ կոմունիզմի կառուցումն է:

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԿԱՌՈՒՑՎԱԾՔԱՅԻՆ ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳՈՒՄ

### ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՍՏՐԱՏԻՖԻԿԱՑԻԱՅԻ ՓՈՐՁԵՐԸ

Հ. Ռ. ՍԻՄՈՆՅԱՆ

*Բուրժուական գաղափարախոսները հետպատերազմյան շրջանում, գիտատեխնիկական առաջընթացի պայմաններում, հանդես են գալիս կապիտալիստական հասարակության դասակարգային կառուցվածքում տեղի ունեցող փոփոխությունների վերբերյալ բազմաթիվ տեսություններով, փորձելով ցույց տալ, թե դրանք արմատապես վերափոխել են Արևմուտքի հասարակությունը, նրան դուրս բերել իր օրգանիզմը ծվատող սոցիալական անհաշտելի հակասություններից։ Այդ գաղափարախոսների կարծիքով առաջացել է «ինդուստրիալ հասարակություն», որի դասակարգային կառուցվածքի մեջ տեղի ունեցող փոփոխություններն անխուսափելիորեն տանում են դեպի բուրժուական հասարակարգում «դասակարգային պայքարի մարում» և դասակարգային խաղաղության հաստատում։*

*«Ինդուստրիալ հասարակության» մեջ միմյանց դեմ-հանդիման կանգնած հասարակական հակամարտ ուժերի հարաբերություններում «խաղաղություն» փնտրող բուրժուական տեսաբաններն առաջ են քաշել, այսպես կոչված՝ «միջին դասակարգի» հասկացությունը՝ այդ ուժերի պայքարի սուր ծայրերը հատելու, դրանց միջև ընկած վիհը «լցնելու» համար։ Այդ նոր՝ «միջին դասակարգը», ըստ նրանց, առաջ է եկել ու ձևավորվել մի կողմից՝ բանվոր դասակարգի, մյուս կողմից՝ կապիտալիստների քանակական նվազեցմամբ։ Այդ «դասակարգը» մեծանում է և հնարավոր է, որ առաջիկայում կփոխարինի «ինդուստրիալ հասարակության» մյուս բոլոր դասակարգերին ու հասարակական շերտերին, կտարրալուծի ու վերջ կտա դասակարգային թշնամությանը, բաղձալի անդորրություն կհաստատի բուրժուական աշխարհում։*

*Իրականում ի՞նչ է այդ, այսպես կոչված՝ «միջին դասակարգը», որի գոյությունը ժխտում են մարքսիստները, զարգացման ինչպիսի՞ տենդենց ունի, որո՞նք են նրա բաղադրիչ մասերը, ո՞րն է նրա գրաված տեղը բուրժուական հասարակարգում։*

*Մարքսիզմ-լենինիզմը չի ժխտում հասարակական «միջին շերտի» գոյությունը։ Քննադատելով Ռիկարդոյին, Կ. Մարքսը «Հավելյալ արժեքի թեորիա-*

ներում» ցույց է տվել, որ նա մոռանում էր նշել միջին դասակարգերի մշտական ավելացումը (այստեղ Մարքսը «դասակարգ» տերմինը գործածել է «հասարակական շերտի» իմաստով— Հ. Ս.), որոնք կանգնած են մի կողմից բանվորների, մյուս կողմից՝ կապիտալիստների ու հողատերերի միջև (К. Маркс, Теории прибавочной стоимости, ч. II, М., 1957, стр. 577—578)։

Մարքսը գրում էր, որ բուրժուական հասարակության մեջ միջին շերտերի աճը նույնքան անխուսափելի է, որքան անխուսափելի է պրոլետարիատի քանակական աճը։ Ըստ որում, «միջին շերտեր» ասելով Մարքսը և Էնգելսը հիմնականում նկատի ունեին քայքայված գյուղացիներին, մանր առևտրականներին, արհեստավորներին, այսինքն՝ այն մանր սեփականատերերին, որոնք միջանկյալ շերտ էին կազմում պրոլետարիատի և բուրժուազիայի միջև։

Զարգացած կապիտալիստական երկրներում միջին շերտերի քանակական աճի անխուսափելիության մասին բազմիցս նշել է նաև Վ. Ի. Լենինը։ Ըստ որում, միջին շերտեր ասելով Լենինը նկատի ուներ քաղաքի ու գյուղի քայքայված մանր բուրժուազիային, մտավորականության ցածր ու միջին խավերին, ծառայողների հսկայական մեծամասնությանը, արհեստավորներին, սնանկացած առևտրականներին, տեխնիկներին, արվեստի մարդկանց և կապիտալիստական հարաբերությունների մշտական հարվածները կրող հասարակական մյուս միջանկյալ խավերին։ «Կապիտալիզմը,— գրել է Վ. Ի. Լենինը,— ժողովրդական աշխատանքի բոլոր բնագավառներում առանձին արագությամբ է բարձրացնում ծառայողների թիվը, առաջադրում է ինտելիգենցիայի ավելի մեծ պահանջ» (Երկեր, հ. 4, էջ 250)։

Տվյալները վկայում են, որ բարձր զարգացած կապիտալիստական մի շարք երկրների սոցիալ-դասակարգային կառուցվածքում, վերջին տասնամյակներին, խիստ մեծ չափով աճել է հասարակական միջին շերտերի տեսակարար կշիռը։ Այսպես, եթե 1870 թ. ծառայողները կազմել են ԱՄՆ-ի աշխատունակ բնակչության 6,6 տոկոսը, ապա 1954 թ.՝ 30,8 տոկոսը։ 1959 թ. Անգլիայում 24,9 միլիոն աշխատունակ բնակչությունից 5,8 միլիոնը ծառայողներ էին։ Արևմտյան Գերմանիայում միայն 1939—1950 թթ. ծառայողների թիվն աճել է 19,4 տոկոսով։ Ըստ որում, ծառայողների կատեգորիայում առանձնապես մեծ չափերով մեծանում է գրասենյակային աշխատողների, վաճառողների և առավել ցածր դրույքով վարձատրվողների թիվը։

Այսպես կոչված՝ «միջին դասակարգը» ոչ այլ ինչ է, քան սոցիալական բազմազան խմբերի մի յուրատեսակ կոնգլոմերատ, որի հիմնական կազմը բաղկացած է կապիտալիստական հարաբերությունների զարգացման զոհերից։ Այդ է պատճառը, որ «միջին դասակարգը» բնութագրելիս բուրժուական կարգերի պաշտպաններն ավելորդ են համարում այդ «դասակարգի» հասարակական դրությունը բացատրել նրա վերաբերմունքով դեպի արտադրամիջոցները։ Ելնելով մեթոդոլոգիական այդ հակագիտական, իդեալիստական սկզբունքից, նրանք կապիտալիստական հասարակության սոցիալական հարաբերությունները վերլուծում են ծայրահեղ սուբյեկտիվիզմի ու կամայականության դիրքերից, իսկ դասակարգը բնութագրելիս՝ սահմանափակվում արտաքին, մակերեսային նշաններով, ոչ էական կողմերով, որոնք բնորոշ են հասարակական շերտերին և սոցիալական խմբերին։ Այդ խմբերը, որոնք տարբեր տեղ են զբաղեցնում կապիտալիստական արտադրասիստեմում, տնտեսական տարբեր



ֆունկցիաներ և տարբեր դեր են կատարում կապիտալիստական արտադրահարաբերությունների մեջ։

Հասարակական միջին շերտերի տեսակարար կշռի աճը կապիտալիզմի զարգացման անխուսափելի արդյունքն է։ Դա ավելի է ընդգծում այն անողոք պայքարը, որը գոյություն ունի բուրժուական հասարակության մեջ։ Արտադրամիջոցների նկատմամբ իրենց վերաբերմունքով, աշխատանքի հասարակական կազմակերպման ոլորտում իրենց դերով, հասարակական հարստությունից ստացած բաժնեչափերով, միջին շերտերի մեծ մասը, ամենից առաջ, ծառայողները, համարվում են կապիտալի տերերի կողմից շահագործվող վարձու աշխատողներ։ Ինչ խոսք, որ սրանք շատ կողմերով տարբերվում են ֆաբրիկա-գործարանային բանվորներից, որոնց վարձու աշխատանքի շահագործումից է ստեղծվում կապիտալիստի կողմից յուրացվող հավելյալ արժեքի հիմնական զանգվածը։

Ինչպես ասվեց, գոյություն չունեցող «միջին դասակարգի» կազմավորման պրոցեսը հիմնավորելու նպատակով, կապիտալիզմի գաղափարախոսները ուժգին պրոպագանդում են բուրժուազիայի աստիճանական չքացման տեսակետը։

Այդ տեսակետի պաշտպանները մատնացույց են անում բուրժուական դասակարգի մեջ տեղի ունեցած քանակական որոշ փոփոխությունները, որոնց առջև մարքսիստները երբեք աչք չեն փակել։ Այսպես, հայտնի է, որ իմպերիալիզմի դարաշրջանում, վերջին 85—90 տարում, կապիտալիստական երկրների բնակչության ընդհանուր թվի մեջ բուրժուազիայի տեսակարար կշիռը զգալիորեն նվազել է։ Դա բացատրվում է կապիտալիզմի պայմաններում տեղի ունեցող արտադրության համակենտրոնացման անընդհատ պրոցեսով, մի պրոցես, որի ընթացքում մեծ թվով մանր, միջին, իսկ երբեմն նույնիսկ խոշոր կապիտալիստներ, չկարողանալով դիմանալ կատաղի մրցակցությանը և մոնոպոլիաների ճնշմանը, սնանկանում են, քայքայվում և աստիճանաբար անցնում պրոլետարիատի կամ հասարակության միջանկյալ խավերի շարքերը։

Բայց խնդիրն այն է, որ կապիտալիստական հասարակարգի սոցիալ-դասակարգային կառուցվածքում բուրժուազիայի տեսակարար կշռի պակասելը բնավ չի նշանակում, թե զուգահեռաբար փոքրանում են նաև կապիտալիստների դասակարգի քաղաքական ուժն ու տնտեսական հզորությունը։ Ընդհակառակը, որքան պակասում է բուրժուաների քանակը բնակչության ընդհանուր զանգվածի մեջ, այնքան մեծանում է նրանց ազդեցությունը հասարակության տնտեսական կյանքի վրա։ Եվ դա բնական է, քանի որ կապիտալիստական արտադրության համակենտրոնացումն ու մոնոպոլացումն անխուսափելիորեն հանգեցնում են ֆինանսական ամենազոր օլիգարխիայի ստեղծմանը, որն իր ձեռքն է գցում բուրժուական հասարակության ղեկավարման հիմնական լծակները։

Նշելով, որ ժամանակակից կապիտալիզմի ամենաբնորոշ գիծը մոնոպոլիաների մի փոքր խմբի ձեռքում երկրի տնտեսական ղեկավարման լծակների կենտրոնացումն է, Վ. Ի. Լենինը գրել է. «Կոնկուրենցիայի այս փոխակերպումը մոնոպոլիայի՝ իրենից ներկայացնում է նորագույն կապիտալիզմի էկոնոմիկայի կարևորագույն երևույթներից մեկը, եթե ոչ կարևորագույնը...» (Երկեր, հ. 22, էջ 254)։

Այստեղ չի կարելի չնշել մի կարևոր հանգամանք ևս։ Եթե կապիտալիզմի

զարգացմանը զուգընթաց բուրժուաների թիվը բնակչության ղանգվածի մեջ ընդհանուր առմամբ պակասում է, ապա դրա փոխարեն աճում է ֆինանսական արքաների թիվը։ Մի բևեռում կենտրոնանում են մանր ու միջին բուրժուաները, ինչպես նաև չմոնոպոլացված խոշոր կապիտալիստները, որոնք կորցնում են իրենց տնտեսական հզորությունը և նվազում քանակապես, իսկ մյուսում՝ մոնոպոլիստ միլիարդատերերը, որոնք ձեռք են բերում երկրի հարստությունների հսկայական մասը։ Կապիտալիստական արտադրության համակենտրոնացմանը զուգընթաց վերջիններիս թիվն անշեղորեն աճել է։ Եթե 1861 թվականին Ամերիկայի Միացյալ Նահանգներում ընդամենը երեք միլիոնատեր ու միլիարդատեր կապիտալիստ կար, ապա 1897 թ.՝ 3.800, 1914 թ.՝ 6.500, 1929 թ.՝ ավելի քան 40 հազար։

Ինչ վերաբերում է գյուղական բնակչությանը, որի նվազեցման փաստը բուրժուական գաղափարախոսները ձգտում են օգտագործել «միջին դասակարգի» առաջացումն ու ձևավորումը ապացուցելու համար, ապա պետք է ասել, որ կապիտալիզմի զարգացմանը զուգընթաց, գյուղացիական բնակչության թիվը իրոք մեծ մասշտաբներով կրճատվում է։ Դա, ամենից առաջ, գյուղատնտեսության մեջ կապիտալիստական հարաբերությունների խորացման հետևանք է, որի պատճառով գյուղացիական աշխատավոր լայն մասսաները, չդիմանալով մրցակցությանը, զրկվում են արտադրամիջոցներից և դառնում վարձու բանվորներ, համալրելով ոչ թե «միջին դասակարգի», այլ հիմնականում պրոլետարիատի շարքերը։ Այսպես, 1870 թվականին գյուղական բնակչությունը ԱՄՆ-ում կազմել է երկրի ողջ բնակչության 74 տոկոսը, Գերմանիայում՝ 1871 թ.՝ 64։ Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի բոլոր երկրներում այժմ նույնպես բնակչության բացարձակ մեծամասնությունը գյուղացիներ են։ Բայց կապիտալիստական զարգացած երկրներում անցած տասնամյակներին բնակչության սոցիալական կառուցվածքում գյուղացիության տեսակարար կշիռը խիստ նվազել է՝ հօգուտ քաղաքային բնակչության։ 1960—1962 թթ. տվյալներով քաղաքային բնակչությունը Ճապոնիայում կազմում էր երկրի ողջ բնակչության 64 տոկոսը, Ֆրանսիայում՝ 63, Անգլիայում և ԳՖՀ-ում՝ 78, ԱՄՆ-ում՝ 70 տոկոսը (տե՛ս «Коммунист», № 7, 1970, стр. 75)։ Եթե 1920 թվականին գյուղացիությունը կազմում էր կապիտալիստական զարգացած երկրների ինքնագործ բնակչության մոտ 40 տոկոսը, ապա 1950 թվականին՝ մոտ 30, իսկ 1970 թվականին՝ միայն 14 տոկոսը։

Առաջիկա տարիներին ու տասնամյակներին զարգացած կապիտալիստական երկրներում է՛լ ավելի արագ կընթանա գյուղացիական մասսաների քայքայման պրոցեսը։ ԱՄՆ-ի գյուղատնտեսության մինիստրության պրոգնոզների համաձայն 1980 թվականի մոտերքը «կչքանա» մոտ մեկ միլիոն ֆերմերական տնտեսություն, կամ այժմյան ֆերմերական տնտեսությունների մոտ $^{1}/_{3}$ մասը (տե՛ս «Экономическая газета», № 9, 1972, стр. 21)։

Սակայն, կապիտալիստական հասարակարգում «դասակարգային խաղաղություն» փնտրող բուրժուական գիտնականների հետազոտությունների հիմնական օբյեկտը, այնուամենայնիվ, շարունակում է մնալ բանվոր դասակարգը։

Բուրժուական գիտնականները, որպես կանոն, բացարձակացնում են բանվոր դասակարգի ներսում կատարվող փոփոխությունները, դրանք ներկայացնում որպես արմատական փոփոխություններ, որոնք, իբր, անխուսափելիորեն տանում են դեպի պրոլետարիատի տարրալուծում «միջին դասակարգի» մեջ։



Բանվոր դասակարգի օրգանական կառուցվածքի բուրժուական հետազոտողները հատկապես շատ են գրում այն մասին, որ կապիտալիստական հասարակության մեջ այդ դասակարգն արագորեն կորցնում է իր ազդեցությունը։ Դրա հիմնական պատճառը նրանք համարում են այն, որ, իբր, բանվոր դասակարգը նվազում է թվապես։

Ժամանակակից կապիտալիստական երկրների հասարակական կյանքի ուշադիր ուսումնասիրությունը, այդ երկրների սոցիալ-դասակարգային կառուցվածքի վերլուծությունն անկողմնակալ հետազոտողին այն եզրակացության է բերում, որ կապիտալիզմի զարգացմանը զուգընթաց բանվոր դասակարգը ոչ թե տարրալուծվում է հասարակական միջին շերտերի մեջ, այլ, ընդհակառակը, շարունակում է քանակապես աճել, ամրապնդվում է, դառնում է՛լ ավելի հաստատուն։

Բանվոր դասակարգի քանակական աճը ընդհանրապես տեղի է ունենում վարձու աշխատանքի մարդկանց թվական կազմի ավելացման զուգընթաց։ «Վարձու աշխատանքի մարդիկ» հասկացությունը, բնականաբար ավելի լայն է, քան «բանվոր դասակարգ» հասկացությունը։ Վերջինս կազմում է առաջինի բաղկացուցիչ, բայց հիմնական մասը։ Հետևապես, այդ երկու հասկացությունների ճիշտ բնութագրումը չափազանց կարևոր է՝ ըմբռնելու այն փոփոխությունների իմաստը, որոնք կատարվում են դրանց ընդերքում։

Պետք է նկատի ունենալ, որ վարձու աշխատանքի մարդկանց կատեգորիան դասակարգային տեսակետից բազմատարր է։ Նրանց մեծ մասը պատկանում է բանվոր դասակարգին, բայց վարձու աշխատանքի մարդկանց թվում կա նաև որոշակի շերտ, որը չի մտնում բանվոր դասակարգի կազմի մեջ։ Օրինակ, կապիտալիստական արտադրության կազմակերպիչների զգալի մասը՝ մենեջերները, չնայած վարձու աշխատողներ են, բայց գտնվում են բուրժուազիայի շարքերում։ Այս տեսակետից բնորոշ են ամերիկյան տնտեսագետ Գ. Միլլերի բերած տվյալները, որի համաձայն ԱՄՆ-ի բնակչության 5 տոկոսը կազմող ամենահարուստ մասի մեջ մենեջերների բաժինը 50-ական թվականներին 18 տոկոսից բարձրացել է մինչև 30 տոկոս (տե՛ս МЭ и МО, № 8, 1970, стр. 69)։

Վարձու աշխատանքի մարդկանց տեսակարար կշիռը (ներառյալ զինծառայողները) կապիտալիստական երկրների ինքնագործ բնակչության մեջ վերջին մեկ դարում մշտապես աճել է։

Հարյուր տարի առաջ աշխարհում կային 9—10 մլն վարձու աշխատողներ։ XX դարի սկզբին վարձու աշխատողների բանակը հասավ 85 միլիոնի։ 1970 թվականին աշխարհում արդեն կար 540 մլն վարձու աշխատող (տե՛ս МЭ и МО, № 7, 1970, стр. 152, 154)։ Դա նշանակում է, որ վարձու աշխատողների թիվն աշխարհում վերջին 100 տարում ավելացել է 60 անգամ այն դեպքում, երբ մարդկությունն ամբողջությամբ վերցրած աճել է միայն 3 անգամ։

Այս թվերը հաստատում են Մարքսի ձևակերպած կապիտալիստական արտադրության զարգացման օրենքը, որի համաձայն բուրժուական արտադրահարաբերությունների պայմաններում աշխատանքն ավելի ու ավելի շատ

է վերածվում վարձու աշխատանքի, իսկ արտադրամիջոցները՝ կապիտալի (տե՛ս Կ. Մարքս, Կապիտալ, հ. 3, Հայպետհրատ, էջ 425—426)։

Վարձու աշխատողների բանակի միջուկը արդյունաբերական պրոլետարիատն է, այդ թվում ինժեներա-տեխնիկական աշխատողները՝ մոտավորապես 100 մլն մարդ։

Կապիտալիստական առավել զարգացած երկրներում բանվորները կազմում են ինքնագործ բնակչության 60—70 տոկոսը և ավելին։ Մոտավոր հաշվումներով 1960 թ. ԱՄՆ-ի ինքնագործ բնակչության մեջ երկրի բանվոր դասակարգի բաժինը կազմել է 67 տոկոս, իսկ 1968 թ.՝ 73 (տե՛ս МЭ и МО, № 8, 1970, стр. 68)։ Արդյունաբերական բանվորները կազմում են նաև վարձու աշխատողների բանակի կեսից ավելին։

Վերջին տարիներին զարգացած կապիտալիստական երկրների արդյունաբերական բանվորների թիվը հատկապես արագ աճեց ինդուստրիայի նորագույն ճյուղերում (ատոմային, հրթիռային, էլեկտրոնային, նավթաքիմիական արդյունաբերություն, սինթետիկ նյութերի արտադրություն) և արդյունաբերության մի շարք այլ բնագավառներում, որոնք կապված են գիտության ու տեխնիկայի առաջընթացի հետ։ Տեխնիկապես ամենաառաջավոր ճյուղերում աշխատավորների տեսակարար կշռի մեծացումը նպաստում է կապիտալիստական տնտեսության հանգուցային տեղամասերում բանվոր դասակարգի հետագա կենտրոնացմանը։

Արդյունաբերական պրոլետարիատի առաջատար դերի մասին Վ. Ի. Լենինը գրել է. «...միայն որոշ դասակարգ, այն է՝ քաղաքային և առհասարակ ֆաբրիկա-գործարանային արդյունաբերական բանվորները, ի վիճակի են ղեկավարելու աշխատավորների և շահագործվողների ամբողջ մասսան կապիտալի լծի տապալման համար մղվող պայքարում, հենց տապալման ընթացքում, հաղթանակի պահպանման և ամրապնդման համար մղվող պայքարում, նոր սոցիալիստական հասարակարգի ստեղծման գործում, դասակարգերի լիակատար ոչնչացման համար մղվող պայքարում» (Երկեր, հ. 29, էջ 514)։

Արդյունաբերական բանվորներից հետո իրենց թվական կազմով կապիտալիստական զարգացած երկրների վարձու աշխատանքի բանակում երկրորդ տեղն են գրավում առևտրա-գրասենյակային բանվորները։ Առևտրում և ծառայությունների ոլորտում զբաղված մարդիկ կազմում են վարձու աշխատողների ընդհանուր կազմի 45 տոկոսը։ Առևտրա-գրասենյակային բանվորները վարձու աշխատողների արագ աճող ջոկատն են։ Վերջապես, բանվոր դասակարգի մյուս ջոկատը գյուղատնտեսական բանվորներն են։

Ինչպես տեսնում ենք, հակառակ «միջին դասակարգի» մեջ բանվոր դասակարգի տարրալուծման մասին բուրժուական կարգերի պաշտպանների բոլոր փաստարկումների, կյանքի իրական տվյալները անառարկելիորեն ապացուցում են, որ կապիտալիստական աշխարհի ամենահեղափոխական ուժի տեսակարար կշիռը բնակչության ողջ մասսայի մեջ ոչ միայն չի նվազել, այլև մեծապես աճել է այն դեպքում, երբ հասարակական միջին շերտերի աճը չափազանց աննշան է եղել (բացառությամբ ծառայողների կատեգորիայի)։

Ուստի, պատահական չէ, որ ինչպես նախկինում, մեր օրերում նույնպես աշխարհում ստեղծված հարստությունները, տեխնիկական վիթխարի նվաճումները կապիտալիստական երկրների պրոլետարների և սոցիալիստական երկրների բանվորների նյութականացված ու վերափոխված աշխատանքն է,



նրանց ֆիզիկական, բարոյական և մտավոր ուժի արդյունքը։ Մեր ժամանակներում բանվոր դասակարգը իր աշխատանքով արտադրում է համաշխարհային հասարակական արտադրանքի ավելի քան $^3/_4$-ը (տե՛ս «Красная звезда», 4 февраля, 1970 г.)։

Կարելի է ուղղակի ասել, որ մարդկությունը բնության հզոր տիրակալ է դարձել, ամենից առաջ, բանվոր դասակարգի աշխատանքի շնորհիվ։ «Ամբողջ մարդկության առաջին արտադրական ուժը բանվորը, աշխատավորն է»,— ասել է Վ. Ի. Լենինը (Երկեր, հ. 29, էջ 443)։

Վ. Ի. Լենինը բազմիցս ընդգծել է բանվոր դասակարգի թվական կազմի կարևորությունը, ցույց տվել, որ պրոլետարիատի, հատկապես նրա ֆաբրիկա-գործարանային կորիզի աճը հասարակության կյանքում նրա դիրքերի ամրապնդման անվիճելի վկայությունն է։ «Պրոլետարիատի հեղափոխական շարժումը կախված է թե՛ այդ բանվորների թվից, թե՛ նրանց համակենտրոնացումից, թե՛ նրանց զարգացման աստիճանից...» (Երկեր, հ. 1, էջ 395)։ «Նոր օրենքի նախագիծը գործադուլների մասին» հոդվածում (1902 թ.), նորից անդրադառնալով այդ հարցին, Լենինը նշել է, որ «Պրոլետարիատի ուժն էլ հենց այն է, որ նրա թիվն ու համախմբվածությունը մեծանում է տնտեսական զարգացման բուն իսկ պրոցեսի հետևանքով (Երկեր, հ. 6, էջ 275)։

Այսպիսով, ապացուցված է, որ կապիտալիզմի գերեզմանափորի՝ բանվոր դասակարգի, թիվը չի կրճատվում։ Չկարողանալով բացահայտորեն ժխտել բանվոր դասակարգի քանակական աճի օգտին իրականության բազմաթիվ ու համոզիչ փաստերը, բուրժուական գիտնականներն ու գաղափարախոսները ստիպված են բանն այնպես ներկայացնել, թե բանվոր դասակարգը, եթե այն նույնիսկ շարունակում է աճել թվապես, միևնույն է, միասնական դասակարգ չէ այլևս, այն, իբր, տրոհվել է միմյանցից խիստ տարբեր սոցիալական շերտերի, որոնք չունեն և չեն կարող ունենալ միասնական դասակարգային շահեր ու նպատակներ։

Այսպես, ֆրանսիական բուրժուական գործիչ Բերնասկոնը գտնում է, որ «բանվոր դասակարգ» և «պրոլետարիատ» հասկացությունները կարելի է համարել անցյալի ժառանգություն և, որ այդ տերմիններն այլևս կորցրել են իրենց նախկին իմաստը (տե՛ս Р. Ф. Матвеев. В поисках точки опоры (Политическая теория и практика французской буржуазии). Изд. «Межд. отнош.», М., 1965, стр. 112)։ Ինչո՞ւ։ Որովհետև,— ասում է նա,— պրոլետարիատը տրոհվել է այնպիսի խմբերի, որոնց շահերը ո՛չ միայն միասնական չեն, այլև որոշակի փուլերում նույնիսկ հակադրվում են միմյանց։

Բերնասկոնի այս խորհրդածությունը եզակի չէ։ Բանն այն է, որ Արևմուտքի սոցիոլոգիական, փիլիսոփայական ու տնտեսագիտական գրականության մեջ հաճախ կարելի է հանդիպել այս տեսակետի օգտին բերվող բազմաթիվ փաստարկների։ Ավելին, բուրժուական երկրներում ձևավորվել է սոցիալական ստրուկտուրայի մասին, այսպես կոչված՝ «ստրատիֆիկացիայի» տեսությունը, որը խարսխված է հասարակության մեջ անհատի ավտոնոմիայի և նրանում «ավտոնոմ խմբերի» «գոյության» վրա։

Այս տեսության էլակետն այն է, թե հասարակությունն արտակարգ դիֆերենցացված է, կազմված միլիոնավոր անհատներից և միմյանցից տարբեր մեծաթիվ սոցիալական շերտերից («ստրատ»-ներից) (տե՛ս МЭ и МО,

№ 12, 1970)։ «Ստրատիֆիկատորները» պնդում են, թե մեր ժամանակներում անհնարին է հասարակությունը բաժանել դասակարգերի, հիմք ընդունելով արտադրամիջոցների նկատմամբ նրանց վերաբերմունքը, հասարակական արտադրության մեջ իրենց զբաղեցրած տեղը։ Դրա փոխարեն նրանք առաջին պլան են մղում հասարակական տարբեր խմբերի (ստրատների) միջև եղած հարաբերությունները, դրանք դիտում որպես սոցիալական կյանքի վճռական գործոններ։

Ահա թե ինչու սոցիալական ստրատիֆիկացիայի բուրժուական տեսությունը մեծ նշանակություն է տալիս սոցիալական տարբեր խմբերի և կազմավորումների (ընտանիք, կլիկ, բյուրոկրատիա և այլն) ֆունկցիաների ու ստրուկտուրայի ուսումնասիրությանը։ Մարդու սոցիալական վիճակի բնորոշման համար «ստրատիֆիկատորները» կիրառում են այնպիսի կատեգորիաներ, ինչպիսիք են՝ զբաղմունքի տեսակը, կրթությունը, որակավորումը, եկամտի մակարդակը, կյանքի բնույթը, ազգային ծագումը, էթնիկական և ռասսայական հատկանիշները, նույնիսկ հասարակական հիերարխիայի մեջ իր սոցիալական դերի մասին անհատի սեփական պատկերացումը, բայց ոչ երբեք արտադրության գործիքների և միջոցների նկատմամբ այդ խմբերի վերաբերմունքը։ Զարմանալի չէ, որ նշանների նման հարուստ հավաքածուն բուրժուական գիտնականներին հնարավորություն է տալիս «վերացնելու» դասակարգերը և դրանք փոխարինելու ցանկացած «նոր դասակարգերով» և «ստրատներով»։ Դա նշանակում է, որ բուրժուական գիտնականների կողմից կապիտալիստական երկրների դասակարգային կառուցվածքի կոնկրետ հետազոտությունները չեն կարող դուրս գալ փաստական նյութի, դրանց զուտ էմպիրիկ վերլուծության սահմաններից։ (Սոցիալական ստրուկտուրայի բուրժուական տեսությունների քննադատական մանրամասն վերլուծությունը տրված է В. С. Семенов, Капитализм и классы. Исследование социальной структуры современного капиталистического общества, գրքում, М., 1969)։

«Ստրատիֆիկատորների» կողմից բանվոր դասակարգի կառուցվածքի առավել մոդայիկ բացատրությունը հանգում է հետևյալին. այդ դասակարգը, իբր, այն ժամանակ է միայն երևում հրապարակում, երբ հասարակական, տնտեսական, քաղաքական ինչ-որ պրոցեսներ նրա տարբեր խմբերին միավորում են հասարակական ավելի մեծ կազմավորման մեջ։ Այսպես, Դասակարգերը և դասակարգային կոնֆլիկտը ինդուստրիալ հասարակության մեջ գրքում, «ինդուստրիալ հասարակության» տեսաբաններից ու «ստրատիֆիկացիայի» տեսության խոշոր ներկայացուցիչներից մեկը՝ Ռ. Դերենդորֆը գրում է, որ բանվոր դասակարգը գտնվում է մշտական կազմավորման պրոցեսում։ Ինչպես մյուս դասակարգերին, բանվոր դասակարգին նույնպես նա համարում է «սիտուացիոն» կազմավորում, որը «առաջանում» և «ձևավորվում» է միայն սոցիալական սուր կոնֆլիկտների պայմաններում, ինչպես, ասենք, տնտեսական կամ քաղաքական ճգնաժամերի ընթացքում։ Այլ խոսքով, ստացվում է այնպես, որ, իբր, դասակարգը սոցիալական այս կամ այն կոնֆլիկտին մասնակցելու ընթացքում ժամանակավորապես միավորված սոցիալական խմբերի պարզ գումար է։

Նման տեսակետ իրենց աշխատությունների մեջ զարգացնում են բուրժուական ուրիշ շատ սոցիոլոգներ ու փիլիսոփաներ, այդ թվում Ս. Լիպսետը,



Դ. Կերշը, Հ. Հոմանսը, Ջ. Մորենոն և այլոք (տե՛ս «Коммунист», № 16, 1970, стр. 77)։

Սոցիալական «ստրատիֆիկացիայի» կոնցեպցիան իր արտացոլումն է գտել նաև Ջոն Գելբրեյտի Նոր ինդուստրիալ պետություն գրքում։

Գելբրեյտը այն տեսակետն է զարգացնում, թե իբր, տեխնիկական առաջընթացի ազդեցությամբ, կապիտալիստական երկրների բանվոր դասակարգը դիֆերենցացվել և բաժանվել է երկու մեծ խմբերի՝ կրթված ու որակյալ և անկիրթ ու ոչ որակյալ մասերի։ Առաջիններին Արևմուտքում ընդունված է անվանել «սպիտակ օձիքավորներ», իսկ երկրորդներին՝ «կապույտ օձիքավորներ»։

Գելբրեյտը «սպիտակ օձիքավորների» կատեգորիան անվանում է «նոր դասակարգ», որն ընդհանուր ոչինչ չունի «կապույտ օձիքավորների» «դասակարգի» հետ։ Բանվորի համար բնորոշը, ասում է նա, ծանր, ֆիզիկական աշխատանք կատարելու նրա պարտականությունն է։ Իսկ քանի որ «սպիտակ օձիքավորը» նման աշխատանք չի կատարում, ուստի, նրան բանվոր համարել չի կարելի։ Ավելին, Գելբրեյտը բանվորին ոչ միայն դիտում է որպես կոպիտ աշխատանքի մարդու, այլև նրան հակադրում է «սպիտակ օձիքավորին»։ Գելբրեյտը նույնիսկ հայտարարում է, թե այժմ «ինդուստրիալ հասարակության մեջ մասսաների զայրույթն այլևս ուղղված չէ կապիտալիստների կամ հարուստների դեմ։ Մեր օրերում, ասում է նա, առաջին պլան է մղված կրթված բանվորների («սպիտակ օձիքավորների») դեմ ոչ կրթվածների և կիսակրթվածների («կապույտ օձիքավորների») անվստահությունն ու զայրույթը։ Որքան տարօրինակ է, բայց փաստ է, որ Գելբրեյտը փորձում է ընթերցողին համոզել, թե միլիոնատերը, եթե նա կիսագրագետ կամ անկիրթ է, որպես կանոն, աջակցում է ոչ ուսյալ բանվորներին («կապույտ օձիքավորներին») «ինտելեկտուալ միլիոնատերերի» դեմ նրանց մղած պայքարում։

Իրականում իրենցից ի՞նչ են ներկայացնում «սպիտակ» և «կապույտ օձիքավորները», ինչպիսի՞ փոխհարաբերությունների մեջ են նրանք միմյանց հետ։ Ինչպիսի՞ն է նրանց վերաբերմունքը հասարակական-քաղաքական տիրող կարգերի նկատմամբ։

Ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության ազդեցությամբ էապես փոխվել և շարունակում են փոխվել բանվոր դասակարգի կառուցվածքը, նրա մասնագիտական կազմը։ Արտադրության մեքենայացման և ավտոմատացման աճի հետ նվազում է ոչ որակյալ կամ կիսաորակյալ ֆիզիկական աշխատանքներում զբաղված բանվորների թիվը։ Սակայն, որքան նվազում է ծանր, սև աշխատանքով իրենց գոյությունը պահպանող բանվորների թիվը, այնուամենայնիվ, նրանք այժմ էլ շարունակում են մեծ տոկոս կազմել կապիտալիստական երկրների վարձու աշխատողների ընդհանուր բանակում։ Դրան նպաստում է այն հանգամանքը, որ կապիտալիստները հաճախ շահագրգռված չեն լինում, որպեսզի իրենց ձեռնարկություններում լայնորեն ներդրվեն ժամանակակից տեխնիկան և տեխնոլոգիան, որպեսզի ավտոմատացվեն արտադրության օժանդակ տեղամասերի աշխատատար պրոցեսները։ Այլ խոսքով, այսպես կոչված՝ «կապույտ օձիքավորները» եղել և մնում են կապիտալիստական արտադրության անբաժանելի մասը։

Տեխնիկական առաջընթացն ավելի ու ավելի մեծ մասշտաբներով է առաջ քաշում վարձու աշխատողների, մասնավորապես բանվորների որակա-

վորման, նրանց կուլտուր-կրթական մակարդակի բարձրացման անհրաժեշտությունը։ Ժամանակակից արտադրության շատ տեղամասերում բանվորը չի կարող աշխատել, եթե նա չունենա տեխնիկի, իսկ առանձին դեպքերում նաև ինժեների գիտելիքներ։ Պատահական չէ, որ այժմ արտադրության մի շարք ճյուղերում բանվորների զգալի մասն ունի միջնակարգ կրթություն։

Միաժամանակ պետք է նկատի ունենալ, որ տեխնիկապես հագեցված ձեռնարկություններում բանվորական տեղերն ավելի ու ավելի հաճախ են զբաղեցնում դիպլոմավորված տեխնիկներն ու ինժեներները։ Այսպես, ԱՄՆ-ի էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ բանվորական տեղերի 25 տոկոսը զբաղեցրել են տեխնիկի և ինժեների դիպլոմ ունեցող մարդիկ։ Սրանց հիմնական մասը արտադրության մեջ աշխատում է որպես վարպետ։

Բանվոր դասակարգի օրգանական մասն է կազմում նաև կապիտալիստական արտադրության և սպասարկման ոլորտում զբաղված ծառայողների մեծ մասը։ Սրանք գտնվում են արտադրության մեջ անմիջականորեն զբաղված բանվորների կողքին և նրանց նման դաժանորեն շահագործվում են։ Ստորին ծառայողների աշխատավարձը սովորաբար հավասար, իսկ երբեմն էլ ցածր է լինում արդյունաբերական ձեռնարկությունների կիսաորակյալ բանվորների աշխատավարձից։ Պետք է նշել նաև, որ վերջին տարիներս գրասենյակային ծառայողների և առևտրական աշխատողների աշխատանքը լայն չափերով մեքենայացվել է և իր բնույթով ընդհուպ մոտեցել արդյունաբերական բանվորների աշխատանքին։ «Առևտրական պրոլետարիատի» աշխատանքը, Ֆ. Էնգելսի արտահայտությամբ, արտադրության շարունակությունն է շրջանառության մեջ։

Հանրակրթական և տեխնիկական բարձր գիտելիքներ ունեցող բարձրորակ բանվորներ, բանվորական տեղերն զբաղեցրած ինժեներներ ու տեխնիկներ, պրոլետարիատին պատկանող ստորին ծառայողներ— ահա բանվոր դասակարգի այն կրթված մասը, որին բուրժուական գիտնականները «սպիտակ օձիքավորներ» են անվանում։

Իսկ բանվոր դասակարգի, տիրապետող հասարակական հարաբերությունների նկատմամբ ինչպիսի՞ հարաբերության մեջ են գտնվում տեխնիկական կրթություն ունեցող այն մասնագետները՝ ինժեներներն ու տեխնիկները, որոնք ոչ թե զբաղեցնում են բանվորական տեղեր, այլ աշխատում են իրենց մասնագիտությամբ։

Ամենից առաջ, ասենք, որ տեխնիկական առաջընթացն ինժեների և տեխնիկի մասնագիտությունը դարձրել է մասսայական։ ԱՄՆ-ում այդ խավը 1910 թվականի 4,4 տոկոսից բարձրացել և 1965 թվականին հասել էր արդյունաբերության մեջ աշխատողների շուրջ 8 տոկոսին։ Նույն բանը մենք տեսնում ենք նաև կապիտալիստական մյուս երկրներում։

Ինժեներա-տեխնիկական աշխատողները, որոնց բուրժուական գիտնականները նույնպես «սպիտակ օձիքավորներ» են անվանում, սոցիալական դրությամբ, աշխատանքի բաժանման մեջ իրենց զբաղեցրած տեղով միատեսակ պայմաններում չեն գտնվում։ Այդ խավը, ամբողջությամբ վերցրած, կախման մեջ լինելով կապիտալիստներից, ինքն իր հերթին մի յուրատեսակ հիերարխիկ սանդուղք է։

Սանդուղքի վերին աստիճանը զբաղեցնում է տեխնիկական ինտելիգենցիայի այն մասը, որը վայելում է խոշոր բուրժուազիայի լիակատար վստա-



հությունը։ Սրանց առավել վարձատրվող մասը խոշոր կորպորացիաներում բաժնեթղթերի տեր է և իբրև դիվիդենտ ստանում է հավելյալ արժեքի ինչ-որ մասը։ Ավելին, նրանցից ոմանք ձուլվել են ֆինանսական օլիգարխիային։ Այդ իսկ պատճառով նրանք իրենց երբեք անկախ չեն պատկերացնում պետական-արդյունաբերական և ռազմա-արդյունաբերական ամենահզոր կոմպլեքսից, չնայած հակված են հասարակությունը ներկայանալ լիբերալիզմի թիկնոցով և տրադիցիոն բարոյականության դիրքերից հրապարակ նետել մարդկային իրավունքների մասին ամենատարբեր ամորֆ բանաձևումներ։ Պարզ է, որ տեխնիկական ինտելիգենցիայի այս մասը որևէ կապ չունի բանվոր դասակարգի հետ և չի կարող ունենալ։

Ինչ վերաբերում է տեխնիկական մտավորականության միջանկյալ խմբերին, ապա սրանց սոցիալական վիճակը երկակի բնույթ ունի։ Կապիտալիստների կամ պրոլետարների դասակարգին նրանց պատկանելությունը ուղղակի կախման մեջ է այն բանից, թե արտադրության կառավարման ու բանվորների նկատմամբ վերահսկողության նրանց ֆունկցիաները ինչպիսի գերակշռություն են ձեռք բերում արտադրության զուտ տեխնոլոգիական պրոցեսներն իրականացնելու նպատակին ծառայող ֆունկցիաների նկատմամբ։ Տեխնիկական մտավորականության այս շերտին պատկանող մասնագետները, բնականաբար, իրենց գիտելիքները և ունակությունները կարող են գործադրել կապիտալիստի սեփականությունը հանդիսացող ձեռնարկություններում, հետևապես նրանց կախվածությունը կապիտալիստների դասակարգից բացարձակապես անխուսափելի է։ Բացի այդ, դրանց մի մասը, կապիտալի թելադրանքով, արտադրությանը սպասարկող իր տեխնիկական ֆունկցիաների մի մասը փոխարինում է արտադրության կառավարման և բանվորների վրա հսկողության ֆունկցիաներով։

Այսպիսով, իր սոցիալական դրությամբ, տեխնիկական մտավորականության միջին շերտը գտնվում է սեփականատերերի և բանվորների միջև։ Բայց, չնայած դրան, տեխնիկական մտավորականության միջին շերտը, ամբողջությամբ վերցրած, բանվոր դասակարգի հետ է։ Աշխատանքի միևնույն պայմանները, ինժեներների ու տեխնիկների մեծագույն մասին հարազատեցնում է ոչ միայն բանվորական միջավայրից սերված տեխնիկական կրթություն ունեցող մասնագետների, այլև բանվոր դասակարգի հետ։ Ինժեներներն ու տեխնիկներն իրենց զգում են իբրև բանվոր դասակարգի օրգանական մասը։ Իսկ դա պատահական չէ, քանի որ նրանք արտադրող ուժ են, հետևապես շահագործվում են և իրենց աշխատանքի ծախսմամբ հավելյալ արժեք են ստեղծում կապիտալ ունեցողների համար։ Որքան էլ արտաքնապես թվա, թե իրենց գիտելիքների շնորհիվ տեխնիկական մասնագետները հասարակության մեջ ձեռք են բերել տնտեսական ու քաղաքական որոշ ինքնուրույնություն, այնուամենայնիվ, ճշմարտությունն այն է, որ նրանք կապիտալիստի առջև իրավական տեսակետից նույնքան անզոր են, որքան արտադրության մեջ զբաղված ավելի ցածր կատեգորիայի ամեն մի վարձու աշխատող։

Այսպիսով, այն հանգամանքը, որ «ավտոմատ ֆաբրիկայում առաջ է գալիս այն աշխատանքների հավասարեցման և համահարթման տենդենցը, որոնք պետք է կատարեն մեքենայի օգնականները» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 23, стр. 431), ո՛չ թե բաժանում, այլ ընդհակառակը, ին-

ժեներա-տեխնիկական աշխատողներին մերձեցնում ու միավորում է «կապույտ օձիքավորների» հետ։

Անհրաժեշտ է նաև ավելացնել, որ արտադրության կառավարումը Մարքսը համարել է արտադրողական աշխատանք, իսկ կապիտալիստական հասարակարգի բոլոր վարձու աշխատողներին, որոնք ուղղակի կամ անուղղակի ճանապարհով շահույթ են բերում, համարել է արտադրող բանվորներ։ Բացառություն են կազմում բուրժուական պետության բռնության ապարատը՝ բանակի հրամանատարական կազմը, ոստիկանությունը և այլն։

Ինչ վերաբերում է գիտնականներին, ապա նրանք նույնպես վարձու աշխատողներ են, քանի որ ինքը՝ գիտությունն անմիջական արտադրաուժ է դարձել և ծառայում է արտադրությանը, որը կապիտալիստի սեփականությունն է։

Իսկ հասարակական արտադրության մեջ ինչպիսի՞ տեղ են զբաղեցնում կապիտալիստական երկրների տեխնիկական մտավորականության ամենացածր շերտերը։

Գտնվելով հիերարխիկ սանդուղքի ստորին աստիճանի վրա, այս շերտը ուղղակի ձուլվում է ո՛չ միայն որակյալ, այլև ֆիզիկական աշխատանքով զբաղված բանվորությանը («կապույտ օձիքավորներին»), նրանցից տարբերվելով միայն իր տեխնիկական գիտելիքների մակարդակով։ Ուստի, պատահական չէ, որ կապիտալիստական ձեռնարկության շատ տեղամասերում չափազանց դժվար է միմյանցից տարբերել բարձրագույն կրթություն ունեցող ինժեներին, հատուկ կրթություն ստացած ծրագրավորողին և բանվոր-վերանորոգողին, չնայած իրականում նրանք մեկը մյուսից տարբերվում են և՛ իրենց գիտելիքներով, և՛ արտադրափորձով։

Ինչպես տեսնում ենք, կապիտալիստական երկրների տեխնիկական մտավորականության զգալի մասն ուղղակի միաձուլվել է բանվոր դասակարգին, իսկ, ամբողջությամբ վերցրած, կազմելով վարձու աշխատողների ջոկատներից մեկը, այդ դասակարգի դաշնակիցն է կապիտալիստական շահագործման դեմ մղվող պայքարում։

Այսպիսով, «ինդուստրիալ հասարակության» տեսաբանների բերած բոլոր փաստարկները, որոնցով ջանում են ապացուցել, թե գիտա-տեխնիկական առաջընթացի շնորհիվ բուրժուական հասարակության դասակարգային կառուցվածքի մեջ կատարվող որոշակի տեղաշարժերը դասակարգային խաղաղության են առաջնորդում բուրժուազիային և պրոլետարիատին, անհիմն են։

Իրականության տվյալները վկայում են, որ գիտա-տեխնիկական հեղափոխությունը չի կարող փոխել կապիտալիզմի բնույթը։ Բուրժուական արտադրահարաբերությունների պայմաններում տեխնիկայի բնագավառում կատարվող հեղափոխական գյուտերն ու հայտնագործությունները չեն կարող արմատապես բարելավել աշխատավորների սոցիալական վիճակը։ Այդ հեղափոխությունը, ընդհակառակը, է՛լ ավելի է խորացնում ու սրում բուրժուական հասարակարգի անլուծելի դասակարգային հակասությունները հատկապես աշխատանքի և կապիտալի միջև, հեղափոխականացնում է հասարակական կյանքը, հասարակական հարաբերությունները։ Իրականությունը նորից ու նորից հաստատում է մարքս-լենինյան այն դրույթը, որ տեխնիկան չի կարող անմիջական ազդեցություն ունենալ իշխանության վրա, որ այն ի վիճակի է այդ իշխանության վրա ազդել միայն միջանկյալ օղակի՝ արտադրահարաբերությունների միջոցով։

# ԵՐԵԿ ԵՎ ԱՅՍՕՐ

## Ս. Տ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

Պատմական օրեր են ապրում Սովետական Միության ժողովուրդները, ամբողջ առաջադեմ մարդկությունը։ Սովետական Միության կազմավորման 50-ամյակը, որի փառաշուք տոնակատարությանը նախապատրաստվում են մեր անծայրածիր հայրենիքի հարյուր միլիոնավոր մարդիկ, նշանավորվում է որպես համաշխարհային-պատմական իրադարձություն։

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի համար մղված մարտերում, քաղաքացիական պատերազմի ծանր տարիներին Ռուսաստանի ժողովուրդների գիտակցության մեջ տարեցտարի բնական պահանջ էր դառնում միավորվել մեկ միասնական ընտանիքի մեջ, մոբիլիզացնել Ռուսաստանի բոլոր ժողովուրդների տնտեսական, քաղաքական ու ռազմական ջանքերը, ամրապնդել սոցիալիստական հեղափոխության հաջողությունները, նոր սոցիալիստական կարգերը և դրանով իսկ ապահովել բոլոր ժողովուրդների տնտեսական, քաղաքական ու մշակութային զարգացումը իրավահավասար հիմունքների վրա։ Եվ երբ, 1922 թ. դեկտեմբերին, խորհուրդների համամիութենական առաջին համագումարում պետականորեն կազմավորվեց Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, դրանով իրականացավ Սովետական Միության ժողովուրդների վաղեմի իղձալը։

Հետագա ամբողջ ժամանակաշրջանը փայլուն ապացույցն էր կոմունիստական կուսակցության ազգային ճիշտ քաղաքականության։

Սովետական Միության մյուս ժողովուրդների հետ նորաստեղծ Միության մեջ մտավ Սովետական Հայաստանը, որն արդեն բոլորել էր իր ազգային ու սոցիալական վերածննդի երկրորդ տարին։ Բազմաչարչար հայ ժողովրդի արևելահայ հատվածն ստեղծել էր իր պետությունը և այժմ ապրում ու կառուցում էր իր նոր կյանքը Սովետական Միության եղբայրական ժողովուրդների անխախտ դաշինքի, տնտեսական լայն փոխօգնության ու համագործակցության պայմաններում։

Միանգամայն այլ ճակատագիր վիճակվեց մեր ժողովրդի արևմտահայ հատվածին, որը մեծ եղեռնից հետո շարունակում էր ապրել իր անօրինակ ողբերգությունը։ 1922 թվականին հայ ժողովրդի արևմտահայ հատվածի գլխին դեռևս կախված էր ֆիզիկական բնաջնջման ահավոր վտանգը։ Հարյուր հազարավոր հայեր, որոնք փրկվել էին մահից ու կախաղանից, դեգերում էին արաբական անապատներում, սովն ու համաճարակն ամեն օր հազարավոր մարդիկ էր տանում։ Խուճապահար հայ զանգվածները նոր հանգրվաններ էին փնտրում։ Հայ բեկորների նույնիսկ ֆիզիկական վերքերը դեռ չէին ապաքինվել։

Արևմտահայության ողբերգական կյանքի այս մռայլ երկնակամարում,

սակայն, կար արդեն մի լուսավոր ու կենսատու աստղ— կար հաղթական Սովետական Հայաստանը, կար դարերով կորսված հայ պետականությունը։ Թեև աննկարագրելի ծանր պայմաններում, բայց արևմտահայության բեկորներն ապրում էին նույն մոլորակի վրա և նրանց չէր կարող չհասնել ազատագրված Հայաստանի ձայնը, ըստ էության միակ ձայնը, որ բարոյական ուժ ու ներշնչանք պիտի հաղորդեր Միջին Արևելքի, Եվրոպայի ու Ամերիկայի տարագիր հայությանը, օգներ նրան վերստին ոտքի կանգնելու, ապրելու, գոյատևելու։ Հայ ժողովրդի բազմադարյան պատմության մատյանում ոսկե տառերով է գրված այն փաստը, որ Հայաստանի նորաստեղծ կառավարությունը, Հայաստանի ողջ ժողովուրդը հսկայական աշխատանք կատարեցին հարյուր հազարավոր գաղթականների տեղավորման և նրանց կյանքի ու ապրուստի համար անհրաժեշտ պայմաններ ստեղծելու և, դրան զուգահեռ, արդեն 1921 թվականին, իրականացրին արտասահմանյան հայերի առաջին խմբերի հայրենադարձությունը։

Այդ ամենը հնարավոր չէր լինի, եթե ինքը՝ Սովետական Հայաստանը, գտնվելով տնտեսական ծանրագույն պայմաններում, չստանար եղբայրական Ռուսաստանի բազմակողմանի օգնությունն ու աջակցությունը։ 1921—1925 թվականներին, այսինքն այն տարիներին, երբ բնաշխարհի ժողովուրդն իր հիմնական ջանքերն ուղղում էր երկրի քայքայված տնտեսության վերականգնմանը, արտասահմանից հայրենիք վերադարձավ մոտ 20 հազար մարդ։ Այս շրջանը միաժամանակ բնորոշվում է սփյուռքում Սովետական Հայաստանի հեղինակության ու ազդեցության աճով։

1926 թ. սփյուռքահայ մտավորականության անվանի ներկայացուցիչներ Արշակ Չոպանյանը, Տիգրան Կամսարականը, Լևոն Բաշալյանը, Վահան Մալեզյանը, Ռուբեն Որբերյանը, Էդգար Շահինը, Սարգիս Խաչատուրյանը և ուրիշներ հանդես եկան մի հայտարարությամբ, ուր ընդգծվում էր, որ Հայաստանի գոյությունն անվիճելի իրականություն է։ Հայտարարության մեջ հեղինակները համոզմունք էին հայտնում, որ Հայաստանն իր գոյությունը և բարգավաճումը կարող է ապահովել միայն Սովետական Միության հետ բարեկամության պայմաններում։ Սովետական Հայաստանի դիրքերի պաշտպանության օգտին արտահայտվեցին ռամկավարներն ու հնչակյանները, չհաշվելով առանձին գաղութներում տեղ գտած բացասական խմորումները։ Այսպիսով արդեն այդ շրջանում դաշնակցությունը միակ հակասովետական հոսանքն էր, որ շարունակում էր կատաղի պայքար մղել Սովետական Հայաստանի դեմ։

Հայ ժողովրդի ականավոր զավակ Ալեքսանդր Մյասնիկյանը 1924 թվականին հրապարակած «Կուսակցությունները գաղութահայության մեջ» գրքում գրում էր. «Թող գոռան ու սարսափեն դաշնակցականները։ Թող շարունակեն հորինել իրենց ստերը։ Մենք և գաղութահայ աշխատավորներն իրար հետ կապված ենք և ավելի ևս պիտի սեղմենք մեր շարքերը»։

Այդ տարիներին Հայաստանի և սփյուռքահայության միջև կապերն ամրապնդելու գործում շնորհակալ աշխատանք կատարեց Հայաստանի օգնության կոմիտեն, որի ներկայացուցիչներն արտասահմանի հայ գաղութներն էին տանում ճշմարտությունը Սովետական Հայաստանի մասին, սփյուռքահայության լայն զանգվածներին պատմում հայրենիքի անօրինակ վերելքի մասին, խանդավառում, հուսադրում նրանց։



1921 թվականին սկսված հայրենադարձությունը կարճատև դադարով շարունակվեց մինչև 1936 թվականը։ Հայրենադարձությանը զուգընթաց հնարավորին չափ ընդլայնվում էին մշակութային կապերն արտասահմանի հայ գաղութների հետ։

«Գաղութահայության նկատմամբ սովետական կառավարության ու կոմունիստական կուսակցության ճիշտ քաղաքականության մշակման ու իրագործման գործում,— կարդում ենք հայ ժողովրդի պատմության 7-րդ հատորում,— խոշոր ծառայություն մատուցեցին Ալ. Մյասնիկյանը (Մարտունի), Ս. Սրապիոնյանը (Լուկաշին), Ս. Համբարձումյանը, Ասք. Մռավյանը, Դ. Շահվերդյանը, Պ. Մակինցյանը, Աշ. Հովհաննիսյանը, Արտ. Կարինյանը, Ս. Փիրումյանը, Ս. Տեր-Գաբրիելյանը, Ար. Երզնկյանը, Ա. Եսայանը, Հովհ. Դուրգերյանը, Ն. Տեր-Ղազարյանը, Գր. Վարդանյանը, Աղ. Խանջյանը և պետական ու հասարակական ուրիշ գործիչներ»։

Ֆաշիստական Գերմանիայի դեմ սովետական ժողովրդի Հայրենական մեծ պատերազմը Սովետական Հայաստանի և սփյուռքի փոխհարաբերությունների ասպարեզում ամենալուրջ փորձաքարը հանդիսացավ։ Ինչպես և պետք էր սպասել, Միջին Արևելքում, Եվրոպայում ու Ամերիկայում ապրող հարյուր հազարավոր հայեր վճռականապես կողմնորոշվեցին հօգուտ Սովետական Միության և Սովետական Հայաստանի։ Չնայած պատերազմի առաջին էտապում սովետական բանակի կրած անհաջողություններին, սփյուռքահայությունն անսասան հավատում էր, որ սովետական ժողովուրդը պարտության կմատնի ֆաշիստական Գերմանիային։ Այդ հավատն էր արտահայտում այն ժամանակ Բեյրութում հրատարակվող «Ժողովրդի ձայն» թերթը, որը գրում էր. «Ինչ ալ որ խոսին, ինչ ալ որ գրեն ազգադավները, Խորհրդային Միությունը և անոր դաշնակիցները պիտի հաղթեն»։ Իսկ ի՞նչ էին գրում ազգադավները՝ դաշնակցական շեֆերը, որոնք ռազմագիտության մեջ նույնքան կույր ու բոբիկ էին, որքան քաղաքականության մեջ։ Տխրահռչակ Ռուբեն Դարբինյանը «Հայրենիք» թերթում գրում էր. «Բարեբախտաբար Խորհրդային Միությունը ոչ այնքան զորավոր է, որ կարողանա ջախջախել Գերմանիան, ոչ էլ այնքան ներքնապես զորավոր է, որ երկարօրեն կարողանա դիմանալ Գերմանիո հարվածներուն»։ Սփյուռքահայ առաջադիմական մամուլը հերքում էր այդ բարբաջանքները. «Եթե նացիները Մոսկվան իսկ գրավեն, Խորհրդային Միության կարմիր բանակին վիճակված է վերջնական հաղթանակը» գրում էր «Երիտասարդ Հայաստան» թերթը։

Սփյուռքահայության աշխատավոր լայն զանգվածները գիտակցում էին, որ ռազմաճակատներում վճռվում է Սովետական Միության եղբայրական ժողովուրդների ճակատագիրը, հայ ժողովրդի ճակատագիրը, ամբողջ առաջադեմ մարդկության ճակատագիրը։ Սովետական բանակի յուրաքանչյուր հաղթանակ, ֆաշիստական բանակի յուրաքանչյուր պարտություն անսահման ոգևորություն էր հարուցում սփյուռքում։ Հայրենական պատերազմի ճակատներում հայ գեներալների, սպաների ու զինվորների խիզախությունները հպարտությամբ էին համակում արտաշխարհի հայության սրտերը։ «Պրավդա»-ն 1941 թ. օգոստոսին գրել է. «Սովետական Միության վրա ավազակային ուխտադրուժ հարձակում գործելու լուրը ստիպեց զգոն և արթուն լինել հայ ժողովրդի նաև այն զավակներին, որոնք ապրում են Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների սահմաններից դուրս։ Նրանց ամբողջ սերը,

նրանց ամբողջ համակրանքը Սովետական Միության կողմն է...»։ Շուտով սփյուռքահայությունը տվեց հաղթանակին աջակցելու նաև իր գործնական ապացույցը։ Ռազմաճակատ եկան «Գեներալ Բաղրամյան» և «Սասունցի Դավիթ» տանկային շարասյուները, որոնք ստեղծվեցին սփյուռքում հավաքված միջոցներով։ Հայ ժողովրդի լավագույն զավակները Ֆրանսիայում, Բուլղարիայում, Հունաստանում և մյուս երկրներում մտան պարտիզանական ջոկատների մեջ, շատերն այդ դաժան պայքարում զոհաբերեցին իրենց կյանքը։ Միսաք Մանուշյանը և իր խումբը խիզախ պայքարի ելան հիտլերյան օկուպացիոն բանակի դեմ՝ Ֆրանսիայում։ Ընդհատակում գործող ֆրանսահայ ազգային ճակատի օրգան «Հայ ճակատ» թերթը գրում էր. «Հայ ազգային ճակատը հիտլերյան Գերմանիո լուծին տակ ու անոր դեմ՝ իր պայքարի դրոշին տակ պիտի համախմբի հայ բոլոր կենսունակ ուժերը, հանուն մեր հայրենիքին, մեր ազգին։ Մեր պետության գոյության այս 24 տարիները անվիճելիորեն ցույց տվին, որ Խորհրդային Միության ազգային քաղաքականությունը անշեղորեն կձգտեն Միության բաղկացուցիչ ժողովուրդներու ազգային բոլոր կարելիության առավելագույն զարգացումին։ Խորհրդային Հայաստանը ոչ միայն օրրան է Արարատի ստորոտը հավաքված մեր ժողովուրդի, այլև իր լույսով միակ ազդակն է գաղութահայության պահպանման։ Միայն անով կրնա խանդավառվիլ գաղութահայը։ Այս գիտակցությամբ է, որ անվերապահորեն կկանգնենք հայրենիքի պաշտպանության դրոշին տակ»։ Թերթը կոչ էր անում. «Պաշտպանեցեք մեր հայրենիքը, բոլոր միջոցներով վնասելով գերմանական բանակին»։ Հայրենական մեծ պատերազմի տարիներին, երբ ամբողջ առաջադեմ մարդկությունն ապագայի վերաբերյալ իր հույսը կապում էր սովետական ժողովրդի հերոսական պայքարի հետ, մի առանձին ուժով դրսևորվեց 1922 թվականին տեղի ունեցած մեծ իրադարձության ողջ նշանակությունը։ Սովետական Միության ժողովուրդների անխորտակելի բարեկամությունը դարձավ հիտլերյան ֆաշիզմի դեմ պատմական հաղթանակն ապահովող գրավական։ Այդ անխորտակելի դաշինքի ողջ նշանակությունը գիտակցում էին նաև սփյուռքահայ աշխատավորական զանգվածները։ Ո՛չ ֆաշիստական սանձազերծ պրոպագանդան, ո՛չ միջազգային ռեակցիայի ջատագովների հակասովետական ելույթները, ո՛չ դաշնակցության կատաղի հարձակումներն ի վիճակի չէին սասանելու մեր ժողովրդի սփյուռքահայ հայրենասիրական հատվածի դիրքավորումը։ Թերթելով սփյուռքահայ առաջադիմական մամուլը, ավելի ու ավելի ես համոզվում այն մեծ ճշմարտության մեջ, թե Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի պատմական հաղթանակը ինչպիսի խոշոր ազդեցություն ունեցավ սփյուռքահայ հասարակական-քաղաքական մտքի զարգացման վրա։ Սփյուռքահայ հասարակայնության ամենատարբեր խավեր, քաղաքական ամենատարբեր հոսանքների ներկայացուցիչներ նոր, ավելի իրատես մոտեցում դրսևորեցին Հայաստանում սովետական կարգերի հաստատման, հայ և ռուս ժողովուրդների դարավոր բարեկամության, Հայաստանում տեղի ունեցող պատմական վերափոխումների նկատմամբ։

Դրանով պետք է բացատրել այն փաստը, որ հետպատերազմյան շրջանում սփյուռքահայ հայրենակցական և մշակութային միությունների, ակումբների և կուլտուր-լուսավորական մյուս հաստատությունների գործունեությունն ավելի նպատակասլաց ու կոնկրետ բնույթ է ստանում, որը բա-



ցատրվում է նաև Սովետական Հայաստանի հետ իրականացվող բազմապիսի կապերի հետագա ընդլայնմամբ ու ամրապնդմամբ։ Սփյուռքահայ առաջադիմական մամուլն ընդառաջելով սփյուռքահայ հայրենասեր զանգվածների ցանկություններին, ավելի լայն ու բազմակողմանի է լուսաբանում Հայաստանի տնտեսական ու կուլտուրական կյանքը։ Սփյուռքահայ մտավորականներից շատերը, որոնք վերջին տարիներին այցելեցին Հայաստան, հրապարակեցին մենագրություններ կամ հոդվածաշարեր, որոնք ուշագրավ են մի շարք առումներով։ Սփյուռքահայ անվանի գիտնական Մանասե Սևակը իր «Առաքելություն մը ի Հայաստան» գրքում առանձին ուժով պաշտպանում է ճշմարիտ հայրենասիրությունը, կենդանի ու կոնկրետ գործերի մեջ արտահայտվող հայրենասիրությունը։ Իբրև գիտնական ու իրատես հայ, հեղինակը դեմ է դոն-քիշոտյան հոխորտանքներին, «արվեստական ստվերներու կախարդական ինքնախաբեության» մեզմե շատերուն խոր հավատն է, որ հայ ժողովրդի վերապրումի և անոր ցանկություններու իրականացման տեսակետեն մեզմե որևէ մեկուն պարարտացված թիզ մը հողը, որևէ բանաստեղծին և որևէ գիտնականին հոգիին հուրեն ստեղծված տող մը կամ պտուտակ մը ավելի կշիռ և արդյունավետություն ունի, քան սփյուռքի խմբագրատուներու մեջ բարձրացված բառակերտ ամրոցներու աշտարակներեն արձակված թղթաձույլ բթածայր նիզակներն ու հանդիսասրահներում մգլահոտ և արձագանքազուրկ միջավայրին մեջ ինքնաբույս հավակնություններու գոլորշիական քարոզչությունները»։ Գիտնականը գիտե, թե ում է ուղղում խոսքը։ Անթերի՞ է այսօրվա Հայաստանը։ Ո՛չ, պատասխանում է հեղինակը։ Բայց գիտնականին առաջին հերթին հետաքրքրում է թե՝ իսկ «մենք որչափո՞վ և ինչո՞վ մասնակցեր ենք Հայաստանի վերելքին։ Քանի՞ կաթիլ ջուր հայթհայթեր ենք Հայաստանի երաշտ տարածությունները ոռոգելու և արգասավորելու և այդ միջոցավ ալ կենցաղը աստիճան մը բարվոքելու։ Հետևաբար, ի՞նչ հիման վրա կպահանջենք պահանջվածը։ Մեր եսականացած ամուլ երևակայությունը գոհացուցած ըլլալո՞ւ համար...»։

Իր «Խոհեր» գրքում սփյուռքահայ գրող ու հրապարակագիր Անդրանիկ Անդրեասյանը, արտահայտելով սփյուռքահայ առաջադեմ մտավորականության մտածումներն ու կարծիքները, գրում է. «Տարակույս չկա, թե ներկա Հայաստանի ստեղծումին մեջ բախտորոշ ազդակ մը հանդիսացավ ռուսական հեղափոխությունը։ Որովհետև, Հոկտեմբերյան հեղաշրջումին արյունալի, ցավագին երկունքեն ծնավ նոյեմբերի 29-ը, որ 1920-ին Մոսկվայի ահով կասեցուց թրքական բանակին ջարդարար գրոհը Երևանի վրա և մահիկի ու յաթաղանի զարհուրելի, վերջնական բնաջնջումեն փրկեց հայ ժողովուրդը։ Առանց այդ դեպքին միջամտության՝ հայոց հնամյա, ստեղծարար ազգը և անոր օրրան՝ Հայաստանը սրբված, անհետացված պիտի ըլլային աշխարհի երեսեն, վերածվելով աճյունացած հիշատակի ու փոշիացած անկենդան ապագայի։ Անվիճելի է նույնպես, թե սովետական հանրապետությանց անդամի իր իրավունքները և ռուս ազնիվ ժողովուրդին ընծայած թանկագին օժանդակությունը հզոր գործոններ եղան Հայաստանի հրաշալի վերականգնումին մեջ»։

Սփյուռքահայ գրողի, գիտնականի, արվեստագետի յուրաքանչյուր այցելություն, յուրաքանչյուր հանդիպում հայրենիքի ու նրա ժողովրդի հետ ավելի է ամրապնդում նրա մեջ այն համոզումը, թե «բոլոր ջանքերում, բոլոր զոհողությանց վերջին հանգրվանը,— ինչպես գրում է Ստեփան Շահբազը,—

հոն է հայության համար։ Ժողովուրդ մը, ազգ մը, իր հայրենի հողին վրա միայն կրնա ապրիլ, տևել»։ Եվ ամեն անգամ նրանք իրենց աչքով տեսնում ու համոզվում են, թե ինչ վճռական, որոշիչ նշանակություն ունի Հայաստանի, հայ ժողովրդի համար եղբայրական ժողովուրդների բարեկամությունը։ «...Անհրաժեշտություն մըն էր,— գրում է նույն հեղինակը,— եղբայրական մեծ եղբոր ձեռքը՝ որուն մեջ կա իրենին պես խանդավառ, չսակարկող հոգի մը... առանց այդ եղբայրական ձեռքին՝ Հայաստան տակավին ի՞նչ խեղճ վիճակի մեջ պիտի գտնվեր, կարելի է երևակայել, եթե երբեք չկորսվեր իսկ, մի անգամ ընդմիշտ»։

Հայ ժողովրդի կյանքում պատմական նշանակություն ունեցող իրադարձություն էր 1946—1948 թթ. մասսայական հայրենադարձությունը։ Այդ շըրջանում աշխարհի տարբեր երկրներից Սովետական Հայաստան վերադարձան մոտ 100 հազար հայեր։ Այս միջոցառման նշանակությունն ընդգծվում է այն իրողությամբ, որ նման զանգվածային հայրենադարձությունն սկսվում էր պատերազմի ավարտից մեկ տարի անց։ Եվ, ինչպես մյուս քաղաքական ու ժողովրդա-տնտեսական կարևոր պրոբլեմների լուծման պարագայում, այս անգամ ևս վճռական նշանակություն ունեցան Սովետական Միության կոմունիստական կուսակցության և կառավարության ամենօրյա հոգատարությունն ու աջակցությունը։ Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության և Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի 50-ամյակի առթիվ ՀԿԿ և ՀՍՍՀ Գերագույն սովետի հանդիսավոր նիստում տված իր զեկուցման մեջ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Ա. Քոչինյանն ընդգծեց, որ «Մեր հայրենակիցների մասսայական հայրենադարձությունը հնարավոր եղավ սովետական կարգերի շնորհիվ, Սովետական Միության կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ։

Հայ ժողովուրդը անսահմանորեն շնորհակալ է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեից, նրա քաղբյուրոյից և սովետական կառավարությունից՝ Սովետական Հայաստան գալ ցանկացող աշխատավոր հայերի բախտի նկատմամբ մեծ հոգատարության և ուշադրության համար»։

Քառորդ դար է բաժանում մեզ այն տարիների մասսայական հայրենադարձությունից։ Սակայն այժմ էլ, ինչպես այն օրերին, մեզ խորապես հուզում է այն, հիրավի, վիթխարի աշխատանքը, որ Հայաստանի կոմունիստական կուսակցությունն ու կառավարությունը, կուսակցական ու սովետական օրգանները, քաղաքի և գյուղի աշխատավորությունն իրականացրին, որպեսզի ապահովեն տասնյակ հազարավոր հայրենադարձների ընդունումն ու տեղավորումը։ Հաշվի առնելով հայրենադարձության մասսայական բնույթը, կառավարության որոշմամբ ստեղծվեց հատուկ օրգան— ՀՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր արտասահմանից վերադարձող հայերի ընդունման ու տեղավորման կոմիտե։ Հատուկ մշակված ծրագրով մեծ չափերով ծավալվեց բնակարանային շինարարությունը։ Միայն 1946 թվականին պետական միջոցներով կառուցվեց և շահագործման հանձնվեց 135 հազար քառ. մետր բնակելի տարածություն։ Բացի դրանից կառավարությունը հսկայական միջոցներ տրամադրեց անհատական բնակարանային շինարարության համար։ Դեռևս 1925 թվականին Հայաստանի կառավարությունը որոշում ընդունեց քաղաքամերձ ավանների կառուցման մասին, որտեղ բնակություն էին հաստատում գլխավորապես արտասահմանից վերադարձող հայերը։ Այդ ավանների կառու-



ցումը մի առանձին թափով ծավալվեց 1946—1948 թթ. հայրենադարձության ժամանակ։ Այսպես, մոխիրներից ծնվեցին և Հայաստանի քարտեզի վրա հավերժորեն գրվեցին Նոր Արաբկիր, Նոր Զեյթուն, Նոր Կիլիկիա, Նոր Մալաթիա, Նոր Արեշ, Նոր Խարբերդ, Նոր Մարաշ, Նոր Հաճըն անունները։ Իսկ վերջերս երևան եկան նոր անուններ— Նոր Այնթապ, Բալահովիտ, Մուսա լեռ։ Այս ամենը հսկայական ոգևորություն է հարուցում արտասահմանի հայության շրջանում։ «Այնթապցիներ ի սփյուռս աշխարհի,— գրում է «Նոր Այնթապ» ամսագիրը,— գիտցեք թե զավակներն եք ժողովրդի մը, որ կրակի ու արյունի հրդեհներուն ընդմեջեն քալեց երեք առանց հուսահատվելու, քալեց անհողդողդ կամքով և այսօր հասած է հաղթական հանգրվանի մը։ Այդ հանգրվանը կբնորոշվի մեր վերածնված հայրենիքով, որ փառահեղ վերելքի ու վերածաղկումի հրաշալի շրջան մը կբոլորի»։ Հայրենադարձության չորրորդ փուլն սկսվեց 1962 թվականին։ Սովետական իշխանության տարիներին արտասահմանյան տարբեր երկրներից հայրենիք վերադարձան ավելի քան 225 հազար հայեր։ Յուրաքանչյուրի համար պարզ է, որ մեր փոքր հանրապետությունը նման միջոցառումը կարող էր իրականացնել միայն երկրի արդյունաբերության, գյուղատնտեսության ու մշակույթի բոլոր բնագավառների բուռն զարգացման պայմաններում, Սովետական Միության ժողովուրդների հետ սերտ համագործակցության ու փոխօգնության պայմաններում։ Եվ այս օրերին, երբ մեր ժողովուրդը հանդիսավոր իրադրության մեջ պատրաստվում է նշելու Սովետական Միության կազմավորման 50-ամյակը, հանրապետության տասնյակ հազարավոր քաղաքացիներ այդ մեծ հոբելյանը դիմավորում են այն գիտակցությամբ, որ իրենց հայրերի ու մայրերի հետ այն տարիներին գալով Հայաստան, հասակ են առել այստեղ և այժմ լիիրավ քաղաքացիներն են իրենց վերածնված հայրենիքի, ապրում են նրա ներկայով ու ապագայով, յուրաքանչյուրն իր տեղում բազմապատկելով հայրենիքի հզորությունը։

Անհրաժեշտ է շեշտել, որ թե՛ 1920-ական թվականներին, երբ Հայաստանում հիմնադրվում էին հայրենադարձների համար նորաստեղծ ավանները, թե՛ Հայրենական պատերազմի տարիներին, թե՛ 1946—1948 թթ. մասսայական հայրենադարձության շրջանում սփյուռքի հայրենակցական միությունները, ինչպես նաև անհատ մարդիկ իրենց նյութական համեստ օժանդակությունը բերեցին հայրենիքին։ Այդ օժանդակությունը գերազանցապես բարոյական նշանակություն ուներ, դրանով սփյուռքահայությունն իր սերն ու նվիրվածությունն էր արտահայտում հայրենիքի հանդեպ։ Իրավացի է «Պայքար» թերթը, գրելով. «Ինչ որ արտերկրի հայությունը ըրած է հայրենիքի համար իբրև հայրենասիրական պարտք, աննշան մեկ մասն է հայրենիքի մեջ ստեղծված իրականության։ Բայց հայրենիքի մեր եղբայրներն ու քույրերը գնահատանքով կնշեն իրենց ընծայվածը և անոր մեջ կտեսնեն անկեղծությունն ու նվիրումը մեր հայրենասիրության։ Մյուս կողմե՝ ինչ որ իրենք ստեղծած են իրենց եղունգներով ու արյունով, առաջին հերթին մատչելի կդարձնեն սփյուռքի հայության։ Այսպիսի վեհանձնության պայմաններուն տակ պատկառել պետք է գիտենալ ու գիտնալ մանավանդ, որ մենք ալ բաժին մը ունինք բերելիք հայրենակերտումին»։

Մեր օրերում սփյուռքում ամենուրեք խոսում ու գրում են սփյուռքահայության սպառնացող վտանգի մասին։ Սակայն հատկանշական է նաև, որ մարդիկ չեն կարող չնկատել նաև մի այլ, շատ կարևոր երևույթ։ Դա սփյուռ-

քի մի շարք գաղութներում հասարակական-քաղաքական կյանքի, դպրոցների, ակումբների, մշակութային ու հայրենակցական միությունների գործունեության զգալի աշխուժացումն է։ Ինչո՞վ բացատրել այդ։ Միայն սփյուռքահայ մտավորական խավերի համառ ջանքերո՞վ։ Դա հարցի սպառիչ պատասխանը չէր լինի։ Մեր կարծիքով նկատվող դրական երևույթների գլխավոր բանալին պետք է տեսնել Սովետական Հայաստանի և սփյուռքահայ գաղութների միջև տարեցտարի ծավալվող մշակութային կապերի մեջ, կապեր, որոնք ավելի ու ավելի բազմազան են դառնում։ Հենց այդ իրողությամբ էր պայմանավորված Սփյուռքահայության հետ մշակութային կապի Կոմիտեի ստեղծումը, որն այժմ լայն ու բազմապիսի կապեր ունի սփյուռքահայ մշակութային, հայրենասիրական, բարեգործական բազմաթիվ միությունների, ակումբների, դպրոցների, գրադարանների և այլ կազմակերպությունների, ինչպես նաև սփյուռքահայ մտավորականության հարյուրավոր ներկայացուցիչների հետ։ Այդ կազմակերպություններն ու անհատ գործիչներն իրենց առօրյա բազում հոգսերով ու հուզող հարցերով այդ ընկերությանն են դիմում։ Այդ Կոմիտեի միջոցով են իրականացվում պատվիրակությունների հրավիրումը, Հայաստանի արվեստի, մշակութային ու գիտության գործիչների ուղևորությունները սփյուռքահայ գաղութներ, մամուլի ու գրականության առաքումը և բազմապիսի այլ միջոցառումներ։ Բերենք մի քանի փաստ անցյալ տարվա պրակտիկայից. 1971 թվականին սփյուռքահայ դպրոցների համար առաքվել է 50 հազար օրինակ դասագիրք։ Դասագրքերի հայթայթումը վերջին տասնամյակների ընթացքում միշտ եղել է սփյուռքահայության գլխավոր հոգսը։ Այդ հոգսը նա իր սեփական միջոցներով երբեք չպիտի կարողանար հոգալ։ Այդ իմաստով էլ դժվար է գերագնահատել սփյուռքահայ դպրոցներին ցույց տրվող օգնության նշանակությունը։ Նույն թվականին սփյուռք է առաքվել 29 հազար 864 օրինակ գեղարվեստական և գիտական գրականություն, 132 հազար 232 օրինակ ամսագիր, 845 հազար օրինակ թերթ։ 1971 թ. Սիրիայի և Լիբանանի հայությունը հյուրընկալեց մի խումբ հայ կոմպոզիտորների, որ կարևոր իրադարձություն էր այդ գաղութների մշակութային կյանքում։ Այդ գաղութներում խաղերով հանդես եկավ «Արարատ» ֆուտբոլային խումբը։ Հարավային Ամերիկայի հայ գաղութներում ելույթներ ունեցավ Հայաստանի պարի պետական անսամբլը։

Ավելի հաճախակի են դառնում Հայաստանի անվանի գիտնականների այցելությունները, նրանց հանդիպումները սփյուռքահայության լայն խավերի հետ։ Անցյալ տարի ԱՄՆ-ում եղան Հայաստանի գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ Վիկտոր Համբարձումյանը, բիոքիմիայի ինստիտուտի դիրեկտոր, պրոֆեսոր Հր. Բունիաթյանը, Երևանի համալսարանի ռեկտոր Մ. Ներսիսյանը։

Արդեն ավանդություն են դարձել սփյուռքահայ արվեստագետների ելույթները Հայաստանում, մի երևույթ, որը ո՛չ միայն խրախուսիչ նշանակություն ունի սփյուռքահայ արվեստագետների համար, այլև բարերար ազդեցություն է գործում նրանց արվեստի կատարելագործման վրա։ Անցյալ տարի Երևանում կազմակերպվեցին ամերիկաբնակ քանդակագործ Խորեն Տեր-Հարությանի, ֆրանսաբնակ նկարիչներ Զարեհ Մուտաֆյանի և Ռիչար Ջերանյանի, լիբանանաբնակ նկարիչ Հարություն Թորոսյանի ցուցահանդեսները։

Հայաստանում իրենց համերգներով հանդես եկան ամերիկահայ երգիչ



Մայքլ Քրմոյանը, դաշնակահարուհի Լյուսի Իշխանյանը, լիբանանահայ երգիչ Վարդերես Անթոսյանը և ուրիշներ։ Ամեն տարի սփյուռքահայ ամենատարբեր գաղութներից ուսուցիչների մեծ խումբ է գալիս Հայաստան։ Վերապատրաստման դասընթացներին զուգընթաց նրանք այցելում են հայրենի քաղաքներն ու ավանները, արդյունաբերական, գիտական ու մշակութային հաստատությունները։

Ավելորդ է նշել այդ միջոցառման մեծ նշանակությունը։ Անցյալ տարի Հայաստան ժամանած ուսուցիչների խումբը բաղկացած էր 33 հոգուց։ Վերջին տարիներին Հայաստան են գալիս նաև երիտասարդական խմբեր, որոնք հայրենիքում անցնում են մայրենի լեզվի, հայկական երգի ու պարի դասընթացներ։

Աննախընթաց չափերով զարգանում է տուրիզմը։ Վերջին հինգ տարում արտասահմանյան երկրներից ժամանող տուրիստների թիվը մեծացել է ավելի քան 3,5 անգամ։ Նույն 1971 թվականի տվյալներով Հայաստան են այցելել 40 հազար օտարերկրացիներ, որոնց զգալի մասը՝ սփյուռքահայեր։ Զբոսաշրջիկները Հայաստանը տեսնելու են գալիս սոցիալիստական երկրներից, ԱՄՆ-ից, ԳՖՀ-ից, Անգլիայից, Ֆրանսիայից և այլ երկրներից։

Որքա՜ն անձուկ, աղքատ ու անհրապույր պետք է լիներ գաղութահայ կյանքը առանց Հայաստանից ստացվող գրքերի, թերթերի, ամսագրերի, առանց հայկական կինոֆիլմերի, Հայաստանի տնտեսական ու մշակութային հաջողություններն արտացոլող ցուցահանդեսների, առանց փոխայցելությունների, պատկերավոր ասած՝ առանց Հայաստանի մշտական ներկայության։

Կես դարից ավելի է, ինչ սփյուռքահայությունն ուշի ուշով հետևում է հայրենիքում տեղի ունեցող իրադարձություններին, առավել կարևոր առիթներով արտաշխարհի հայության ներկայացուցիչները գալիս են Հայաստան, մասնակցում հայրենիքում տեղի ունեցող համաժողովրդական տոնակատարություններին։ Սփյուռքի ամենատարբեր գաղութներում կազմակերպվել են հոբելյանական երեկոներ՝ նվիրված Հոկտեմբերյան հեղափոխության 50-ամյակին, Սովետական Հայաստանի 50-ամյակին, Հովհաննես Թումանյանի, Սայաթ-Նովայի և մեր ժողովրդի մյուս ականավոր գործիչների հոբելյաններին։ Այդպես է և այժմ։ Սովետական Հայաստանի աշխատավորների հետ միասին սփյուռքահայությունն այս օրերին նշում է Սովետական Միության կազմավորման 50-ամյակը։ Սփյուռքահայ դպրոցներում ու ակումբներում տեղի կունենան երեկույթներ, կկարդացվեն դասախոսություններ և կկազմակերպվեն այլ միջոցառումներ։ Սփյուռքահայ մամուլը հրապարակում է սփյուռքահայ անվանի մտավորականների ելույթները, տպագրում այդ հոբելյանի առթիվ Հայաստանից ստացված հոդվածներ ու այլ թղթակցություններ։ Ֆրանսիայում լույս տեսնող «Աշխարհ» թերթը հրապարակել է սփյուռքահայ գիտնական ու հասարակական գործիչ Զատիկ Խանզադյանի հոդվածը, որտեղ հեղինակը բացահայտում է 1922 թվականին տեղի ունեցած ակտի պատմական նշանակությունը, մասնավորապես հայ ժողովրդի համար։ «Բնական է ուրեմն,— գրում է հեղինակը,— որ Հայաստանի հանրապետությունը գուրգուրանքով պատրաստվի տոնել Ս. Միության 50-րդ տարեդարձը, արժան և իրավ փառքով։ Ս. Հայաստան կտածե մասնահատուկ սեր, ջերմեռանդ պաշտամունք մը Հայաստանի անվտանգությունը ապահովող ռուս ժողովրդի հանդեպ... Սովետական միասնականությունը անխախտելի և անոր բարոյա-

կան և ֆիզիկական միահզոր ուժը անպարտելի է։ Հայաստան անբաժանելի մեկ անդամն է այդ միության»։

Սովետական Միության կազմավորման 50-ամյակի տոնակատարությունը Սովետական Միության բոլոր ժողովուրդների պատմության մեջ կմտնի որպես կեսդարյա եղբայրության մեծ ու փառավոր մի հանդիսավորություն։ Սովետական Միության ժողովուրդների դաշինքը, նրանց անխորտակելի բարեկամությունը մեր մեծ երկրի հզորության ու անպարտելիության գրավականն է։ «Այդ բարեկամությունը,— ասվում է ՍՍՀՄ-ի կազմավորման 50-ամյակի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— սոցիալիզմի ամենախոշոր հաղթանակներից մեկն է, սովետական հասարակության շարժիչ ուժը։ ՍՍՀՄ բոլոր ազգերի աշխատավորների ստեղծագործական անսպառ աղբյուրը՝ հանուն ամենանվիրական նպատակի՝ կոմունիզմի կառուցման»։

Սովետական Միության կազմավորման 50-ամյակի տոնակատարությունը հայրենասիրական նոր, հզոր ալիք կառաջացնի արտաշխարհի հայության ամենալայն զանգվածների շրջանում, ավելի ամուր ու անխորտակելի կապերով կկապի սփյուռքը մայր հայրենիքի հետ։ Սփյուռքահայության առաջադիմական, հայրենասիրական խավերը լավատես են իրենց վաղվա օրվա նկատմամբ։ Այդ լավատեսության գլխավոր աղբյուրը, ոգեշնչող ուժը այսօրվա Հայաստանն է՝ սփյուռքահայ աշխատավորության հույսն ու ապավենը։ «Այսօր Հայաստանը կներկայանա մարդկության,— գրում է «Երիտասարդ Հայաստան» թերթը,— իր նորոգ կյանքի բոլոր հարստություններով, հին գանձերու շռայլությամբ, նոր կոթողներու վսեմությամբ, շինարարական իր արդար վաստակի վսեմությամբ։ Իսկ գալիք հնգամյակին, այն հոյակապ հեռանկարները որ կբացվին մեր մայր Հայրենիքի առջև, երաշխիք կտանան վաղվան մեր նաիրյան երկիրը տեսնելու ավելի զարգացած, ավելի զորավոր, ավելի հարուստ ու երջանիկ»։

Հայրենիքի ու սփյուռքի փոխհարաբերությունների կեսդարյա պատմությունը լավագույն երաշխիքն է վաղվա ավելի սերտ միասնության, ավելի սերտ կապերի, նոր հայրենաշեն գործերի և սխրանքների։



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՄԵՐ ՀԱՐՑԱԶՐՈՒՅՑԸ

## ԿՈՒՍՇԱՐՔԵՐԻ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՄԻՋՈՑԸ

Կուսակցական փաստաթղթերի փոխանակության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան (1972 թ.) պլենումի որոշումը, որը բխում է կուսակցության XXIV համագումարի պահանջից, լայն արձագանք գտավ Հայաստանի կուսակցական կազմակերպությունում, արժանացավ նրա անդամների ջերմ հավանությանը։ Կուսակցական փաստաթղթերի փոխանակությունը դիտելով որպես կուսակցության շարքերի ամրապնդմանը, ներկուսակցական կյանքի աշխուժացմանը, կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացմանը, կոմունիստների ակտիվության և նախաձեռնության զարգացմանն ուղղված քաղաքական-կազմակերպական կարևորագույն կամպանիա՝ Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմը, շրջանային ու քաղաքային կոմիտեները և սկզբնական կուսկազմակերպությունները նախապատրաստական բազմակողմանի աշխատանք են ծավալել՝ այն բարձր մակարդակով ու կազմակերպված անցկացնելու համար։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը քննարկվել է ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի ու պլենումի, քաղաքային ու շրջանային կոմիտեների պլենումների նիստերում, սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում։ ՀԿԿ Կենտկոմը մշակել է միջոցառումների լայն ծրագիր՝ կուսակցական փաստաթղթերի փոխանակությունը հաջողությամբ նախապատրաստելու և անցկացնելու համար։ Դրան համապատասխան՝ Կենտկոմում անցկացվել է կուսակցության քաղկոմների ու շրջկոմների կազմակերպական բաժինների վարիչների հրահանգչական խորհրդակցություն, որտեղ նրանց պարզաբանվել են ինչպես կուսակցության կյանքում կենսական նշանակություն ունեցող այդ կամպանիայի հույժ կարևորությունը, այնպես էլ նրա նախապատրաստման ու անցկացման հետ կապված բազմաբնույթ խնդիրները։ Կուսակցության քաղկոմ-շրջկոմներում կազմվել են գրաֆիկ-պլաններ՝ կոնկրետ կուսկազմակերպություններում կուսփաստաթղթերի փոխանակություն անցկացնելու համար։

Յուրաքանչյուր կամպանիայի հաջողությունը պայմանավորված է նրա խելացի նախապատրաստությամբ, դրան նախորդած կազմակերպչական աշխատանքի բարձր մակարդակով։ Քաղկոմ-շրջկոմները նախապես առանձնաց-

*րել և կահավորել են հատուկ սենյակներ, որտեղ տեղի է ունենալու կուսփաստաթղթերի փոխանակությունը։ Ներկայումս այդ սենյակներում, կուսակցական ակտիվից ընտրված մարդիկ անցկացնում են կուսակցական և քաղաքացիական փաստաթղթերի համեմատություն։ Այդ գործը առավել լավ է կազմակերպված ՀԿԿ Երևանի Սպանդարյանի, 26 կոմիսարների շրջկոմներում, Կիրովականի և Լենինականի քաղկոմներում և այլուր։*

*Այժմ շատ կարևոր է հաշվառման դրվածքի բարելավումը։ Դրա համար սկզբնական կուսկազմակերպություններն անցկացնում են իրենց փաստական անդամների և հաշվառման գրքերի համեմատություն։ Քաղկոմ-շրջկոմների հաշվառման սեկտորները հետաքրքրվում են այն կոմունիստների հարցով, ովքեր բացակայում են տվյալ բնակավայրից, բայց դեռևս մնում են հաշվառման մեջ, պարզում նրանց նոր բնակավայրի ու աշխատանքի տեղը, հաշվառման քարտերն ուղարկում համապատասխան շրջկոմներ ու քաղկոմներ։*

*ՀԿԿ Կենտկոմի, քաղկոմ-շրջկոմների կազմակերպական բաժինների աշխատողները պարբերաբար լինում են տեղերում, ուսումնասիրում կուսփաստաթղթերի փոխանակության նախապատրաստման ընթացքն ու վիճակը, ցույց տալիս գործնական օգնություն։*

*Իհարկե, զգալի գործ է արվել կուսակցական փաստաթղթերի փոխանակությունը նախապատրաստելու և պատշաճ կերպով անցկացնելու համար։ Սակայն, անելիքները դեռևս ավելի շատ են։ Ինչպես ՀԿԿ Կենտկոմը, այնպես էլ քաղկոմ-շրջկոմներն ու սկզբնական կուսկազմակերպությունները մինչև փոխանակությունն սկսելը իրականացնելու են մի շարք միջոցառումներ։ Նախատեսվում է, օրինակ, ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի և քարտուղարության նիստերում լսել մի քանի քաղկոմ-շրջկոմների հաշվետվությունը՝ կուսակցական փաստաթղթերի փոխանակության նախապատրաստության, ապա՝ անցկացման ընթացքի մասին։ Կուսփաստաթղթերի փոխանակության հետ կապված մի շարք ներկուսակցական հարցեր կքննարկվեն ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի, քաղկոմ-շրջկոմների բյուրոների նիստերում։*

* * *

*Կուսակցական փաստաթղթերի փոխանակության նախապատրաստման վիճակին ծանոթանալու համար մեր ամսագրի խմբագրությունը հարցազրույց անցկացրեց ՀԿԿ Կիրովականի քաղկոմի երկրորդ քարտուղար Հ. Օհանյանի և քաղաքի մի քանի խոշոր սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների հետ։*

*Ստորև հրապարակում ենք այդ հարցազրույցը։*

**ՀԱՐՑ.— Ինչպե՞ս է նախապատրաստվում ձեր քաղաքի կուսկազմակերպությունը կուսակցական փաստաթղթերի փոխանակությանը, ինչպե՞ս է կենսագործում այդ առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի որոշումը։**

*ՊԱՏԱՍԽԱՆ.— (ՀԿԿ Կիրովականի քաղկոմի երկրորդ քարտուղար Հ. Օհանյան)։*

*Կուսակցական փաստաթղթերի նախորդ փոխանակությունից հետո քաղաքի կուսակցական կազմակերպությունն աճել ու ամրապնդվել է և՛ քանակապես, և՛ որակապես։ Կոմունիստների թիվը 1870-ից հասել է 5215-ի, սկզբնական կուսկազմակերպությունների թիվը 86-ից՝ 153-ի։ Այժմ կոմունիստների կեսից ավելին բանվորներ են, իսկ ծառայողների զգալի մասը՝ ինժեներա-*



*տեխնիկական աշխատողներ։ Վերջին տարիներին բարելավվել է կուսակցության շարքերն ընդունվածների որակական կազմը։ 1971 թ. և ընթացիկ տարվա 8 ամիսներին ընդունված ՍՄԿԿ անդամության 185 թեկնածուներից բանվորներ են 135-ը, կոմերիտականներ՝ 96-ը, կանայք՝ 53-ը, ծառայողների գերակշռող մասը ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների մասնագետներ են։ Բարելավվել է արտադրության վճռական տեղամասերում կոմունիստների ուժերի տեղաբաշխման գործը, բարձրացել է նրանց ավանգարդային դերը արտադրության մեջ։ Այդ ամենը դրականորեն է անդրադարձել տնտեսական հարցերի լուծման վրա։*

*Այժմ քաղաքի բոլոր սկզբնական կուսկազմակերպություններում լայն աշխատանք է ծավալվում փաստաթղթերի փոխանակումը նախապատրաստելու համար։ Այդ հարցը ժամանակին բազմակողմանիորեն քննարկվել է քաղկոմի պլենումում և սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում։ Մշակվել են կոնկրետ միջոցառումների պլաններ, որոնք կենսագործվում են մեծ հաջողությամբ։ Բոլոր կոմունիստներին պարզաբանվել է այդ քաղաքական մեծ կամպանիայի նշանակությունը։*

*Յուրաքանչյուր ամիս քաղկոմի բյուրոյի նիստում լսվում է քաղկոմի հաշվառման սեկտորի վարիչի, կուսկոմիտեների ու կուսբյուրոների ինֆորմացիաները՝ կուսփաստաթղթերի փոխանակության նախապատրաստման ասպարեզում կատարվող աշխատանքի վերաբերյալ։ Սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում կոմունիստներին տեղյակ է պահվում կուսակցական փաստաթղթերի փոխանակության նախապատրաստության ընթացքի մասին։ Պլանավորված կարգով տեղերում կոնկրետ օգնություն է ցույց տրվում այն կուսկազմակերպություններին, որոնք դեռևս բավարար ակտիվությամբ չեն աշխատում։*

*Լայն է կուսփաստաթղթերի փոխանակության նախապատրաստման խնդիրների շրջանակը։ Գործի հաջողությունը պահանջում է համակողմանի աշխատանք, ջանքերի մոբիլիզացում։ Հարկավոր է ամեն ինչ անել պարզ ու հստակ։ Հաշվի առնելով այս կարևոր հանգամանքը և կուսկազմակերպություններին օգնելու նպատակով՝ ՀԿԿ քաղկոմի անդամ-թեկնածուները, ապարատի աշխատողները, հին կոմունիստները ամրացվել են սկզբնական կուսկազմակերպություններին։ Արտադրամասային սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների և ամրացված կոմունիստների համար անցկացվել է հրահանգչական խորհրդակցություն։*

*Տեղերում նախօրոք պատրաստվել է այն կոմունիստների ցուցակը, ում կուսակցական կազմակերպությունը անելիք ունի, ովքեր տույժեր են ստացել, թերանում են աշխատանքում, պասսիվ են մասնակցում հասարակական կյանքին, չեն զբաղվում իրենց քաղաքական մակարդակի բարձրացմամբ, կենցաղում վատ են պահում իրենց։ Նրանց հետ զրուցում են քաղկոմի քարտուղարները, բաժնի վարիչները, քաղկոմի անդամները, կուսկազմակերպությունների քարտուղարները, ձեռնարկության ղեկավարները, աշխատանքի վետերանները, հին կոմունիստները։ Այդ զրույցները մեծ չափով կօգնեն նաև կուսկազմակերպությունների աշխատանքի բարելավմանը։*

*Քաղաքի կուսկազմակերպությունները ճիշտ հետևություն են արել ՍՄԿԿ XXIV համագումարի ցուցումներից և սկսել են ավելի վճռականորեն ազատվել նրանցից, ովքեր խախտում են ՍՄԿԿ ծրագիրն ու կանոնադրությունը, իրենց*

*վարքագծով արատավորում կոմունիստի բարձր կոչումը: 1971 թ. և անցած 8 ամիսներին կուսակցության շարքերից վտարվել է 43 մարդ, կուսկազմակերպությունների հետ կապը կտրելու համար կուսակցության շարքերից հանարվել են դուրս մնացած 26 կոմունիստներ, որոնցից 3-ը ՍՄԿԿ անդամության թեկնածու:*

*Սակայն կուսփաստաթղթերի փոխանակությունը չպետք է դիտել որպես կուսակցության զտում: Միաժամանակ այն զուտ տեխնիկական գործ չէ: Կուսկազմակերպությունները պարտավոր են յուրաքանչյուր կուսակցական կոլեկտիվում ստեղծել փոխադարձ պահանջկոտության, սկզբունքային քննադատության և ինքնաքննադատության մթնոլորտ: Քաղաքի կուսկազմակերպությունները կուսփաստաթղթերի փոխանակությունը նախապատրաստելու և անցկացնելու ժամանակաշրջանում չեն նվազեցնի իրենց պահանջկոտությունը, կազատվեն նրանցից, ովքեր արժանի չեն կրելու ՍՄԿԿ անդամի բարձր կոչումը:*

*Քաղկոմի կուսակցական հաշվառման սեկտորում, համաձայն նախօրոք կազմած գրաֆիկի, սկզբնական կուսկազմակերպությունների անդամների կազմը համեմատվում է հաշվառման քարտերի հետ, որոնցում մտցվում են ՍՄԿԿ անդամների կենսագրական տվյալների բոլոր փոփոխությունները, կուսակցական հաշվառման են վերցվում նոր եկած բոլոր կուսանդամ-թեկնածուները, ճշտվում են նրանց հասցեները, հաշվառումից հանվում դուրս եկածները: Պարզ է, որ այս հարցը մեկ կազմակերպության շրջանակներում լուծել հնարավոր չէ, որովհետև կապված է հանրապետության և նույնիսկ Միության շատ կազմակերպությունների աշխատանքի հետ, ուստի, այստեղ պահանջվում է բոլոր կազմակերպությունների հստակ աշխատանքը և փոխադարձ օգնությունը:*

*Մեծ պարզություն և հստակություն է պահանջում բուն փոխանակության գործի կազմակերպումը: Այն հաջողությամբ անցկացնելու համար արդեն առանձնացվել են հարմարավետ աշխատասենյակներ, որոշվել է փոխանակման ժամանակ կուսակցական հաշվառման սեկտորում աշխատողների կազմը, լուծվել է նաև կոմունիստների լուսանկարվելու հարցը:*

*Կուսակցական փաստաթղթերի փոխանակությունը կլինի կոմունիստների կազմակերպական ու քաղաքական հատկանիշների խիստ ստուգում, այն բանի ստուգումը, թե ինչպես ենք կենսագործում ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները:*

ՀԱՐՑ— Կուսկազմակերպությունն ամբողջությամբ վերցրած և յուրաքանչյուր կոմունիստ պարտավոր են պատասխանատու զգալ իրենց կոլեկտիվի գործերի վիճակի համար, ապահովել ավանգարդային դերը արտադրության մեջ: Այս կապակցությամբ ի՞նչ է արվում ձեզ մոտ՝ կուսփաստաթղթերի փոխանակությունը նախապատրաստելու ընթացքում:

*ՊԱՏԱՍԽԱՆ— (Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատի կուսկոմիտեի քարտուղար Գ. Խաչատրյան): Կուսակցական փաստաթղթերի փոխանակության հետ կապված քաղաքական-կազմակերպական գործունեության նպատակն է՝ զարգացնել կոմունիստների ակտիվությունը, ապահովել նրանց ավանգարդային դերն արտադրության մեջ, նրանց դաստիարակել կազմակերպության ու հասարակության առջև կոլեկտիվի գործերի վիճակի համար բարձր*



*պատասխանատվության ոգով: Այս խնդիրները միշտ, առավել ևս ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումից հետո, գտնվել են մեր կուսկոմիտեի և սկզբնական կուսկազմակերպությունների տեսադաշտում: Կոմբինատի ավելի քան երեք ու կես հազարանոց կոլեկտիվին առաջնորդող մեր կուսկազմակերպությունը իր շարքերում միավորում է ՍՄԿԿ 575 անդամ ու անդամության թեկնածու: Նրանցից 470-ը աշխատում են անմիջականորեն արտադրության մեջ, բանվորական տեղերում, կամ արտադրամասերի ու գործամասերի ղեկավարներ են: Կոմբինատի 21 արտադրամասային սկզբնական կուսկազմակերպությունները և 28 կուսակցական խմբերը զբաղվում են ոչ միայն արտադրական-տնտեսական, այլև կոմունիստների հետ տարվող անհատական-դաստիարակչական աշխատանքի, կոլեկտիվի արտադրական ու քաղաքական ակտիվության ու նախաձեռնության զարգացման հարցերով: Այդ ամենի շնորհիվ կոմունիստները հանդես են գալիս որպես սոցիալիստական մրցության առաջամարտիկներ, լավ նախաձեռնությունների հեղինակներ: Այդպիսին է, օրինակ, կորունդագործ կոմունիստ Կ. Խառատյանը: Նա խոստացել է հնգամյակը կատարել չորս տարում: Նրա օրինակին հետևեցին կոմունիստներ Ս. Սմբատյանը, Հ. Մուկուչյանը, Լ. Գասպարյանը, անկուսակցական հարյուրավոր բանվորներ:*

*Կուսկոմիտեն, դիրեկցիայի հետ միասին, մեծ ուշադրություն է նվիրում արտադրության ոլորտում կոմունիստների ուժերի խելացի տեղաբաշխմանը: Սովորաբար նրանք ուղարկվում են ետ մնացող տեղամասերը: Այսպես, երկար ժամանակ կարբամիդի արտադրամասը չէր կատարում արտադրական պլանները: Կուսկոմիտեի որոշմամբ կոմունիստ Մ. Յանաշյանն ուղարկվեց այնտեղ: Վերջինս, առաջին հերթին, զբաղվեց աշխատանքային կարգապահության ամրապնդմամբ և կոլեկտիվի պատասխանատվության բարձրացմամբ: Շուտով արտադրամասում շոշափելի տեղաշարժ նկատվեց: Կոմունիստներ Ա. Թամրազյանը, Ա. Հարությունյանը, Անահիտ Մկրտչյանը, Արաքսյա Թովմասյանը, Ժ. Խաչատրյանը, Հ. Կոստանյանը, Հ. Հարությունյանը և շատ ուրիշներ լավագույն օրինակ են ծառայում, իրենց վստահված արտադրական գործերը կատարում բարեխղճությամբ, իրենց պատասխանատու զգում կոլեկտիվի գործերի վիճակի համար: Նրանցից Ա. Թամրազյանն իր անբասիր աշխատանքի համար արժանացել է Լենինի շքանշանի, ընտրվել ՀԿԿ քաղկոմի անդամ, բազմիցս առաջադրվել կուսբյուրոյի և կուսկոմիտեի կազմում: Նա արտադրության առաջավոր է և հասարակական ակտիվ աշխատող:*

*Ամոնիակի, կորունդի, մելամինի արտադրամասերի կուսկազմակերպությունների ուշադրությունից չի վրիպում ոչ մի խախտում և թերություն: Նրանք անհանդուրժողականության մթնոլորտ են ստեղծում բոլոր նրանց նկատմամբ, ովքեր թերանում են իրենց արտադրական և կուսակցական պարտականությունների կատարման մեջ, չեն ապրում կոլեկտիվի հոգսերով, կտրվում են նրանից, խախտում կուսակցական կարգապահությունը և ստվեր գցում կուսկազմակերպության գործունեության վրա: Կոմունիստներ Վ. Մովսիսյանն աշխատանքային կարգապահության խախտման ու կոպիտ վարվեցողության, Ն. Մուրադյանը՝ օրվա առաջադրանքների կատարումը լրիվ ցույց չտալու և հերթափոխի պետին խաբելու համար ստացել են կուսակցական տույժ:*

ՀԱՐՑ— Կուսակցական փաստաթղթերի փոխանակության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի որոշմամբ ավելի մեծ պահանջներ են

ներկայացվում կուսշարքերի որակական կազմի բարելավմանը: Ի՞նչ է արվում ձեզ մոտ այս ասպարեզում:

ՊԱՏԱՍԽԱՆ— («Հայէլեկտրալույս» հանրապետական միավորման մասնաճյուղի կուսբյուրոյի քարտուղար Ս. Միքայելյան)։ ՍՄԿԿ շարքերի որակական կազմի բարելավումն առաջնահերթ խնդիր է կուսկազմակերպությունների համար բոլոր ժամանակներում, առավել ևս այսօր։ Այդ հարցի պատշաճ լուծման միջոցներն են ընդունելության գործի խելացի կազմակերպումը, մարդկանց ճիշտ ընտրությունը, նրանց գաղափարական համոզվածությունը։ Կուզեի համառոտ պատմել, թե ինչպես է այդ գործի դրվածքը մեզ մոտ։ Նախ, ասեմ, որ կուսբյուրոն ստեղծել է երիտասարդ կոմունիստների շրջանում աշխատանք տանող հանձնաժողով, որի օբյեկտը մեկ-երկու տարվա ստաժ ունեցող ՍՄԿԿ անդամներն ու անդամության թեկնածուներն են և կուսակցության շարքերը նոր ընդունվողները։ Հանձնաժողովի խնդիրն է բարձրացնել նրանց քաղաքական-գաղափարական մակարդակը, զարգացնել ակտիվությունը։

ՍՄԿԿ շարքերն ընդունելիս մենք ցուցաբերում ենք անհատական մոտեցում, առաջին հերթին հաշվի առնում բանվորի կամ ծառայողի հասարակական ու արտադրական ակտիվությունը, հանրակրթական մակարդակը, գաղափարական համոզվածությունը։ Այլ կերպ ասած, մեր մարտական ջոկատի մեջ ենք ընդունում լավերից լավին։ Այդպիսին էր, օրինակ, հավաքման արտադրամասի հավաքող-փականագործ Մ. Ոփյանը։ Երբ նա դիմեց ՍՄԿԿ շարքերը որպես անդամության թեկնածու ընդունվելու համար, հանձնաժողովն անհատական զրույց ունեցավ նրա հետ, տվեց կոնկրետ հանձնարարություն։ Երբ կրկին համոզվեցինք, որ արժանավոր է, ընդունեցինք մեր շարքերը։ Մ. Ոփյանն այժմ կոմունիստ է, հավաքման արտադրամասի կոմերիտական-երիտասարդական բրիգադի անդամ, պայքարում է իններորդ հնգամյակը 50 ամսում կատարելու համար։

Կամ մեկ ուրիշ օրինակ։ Մեխանիկական-հավաքման արտադրամասի բանվորուհի, ՀամԼԿԵՄ անդամ Վալենտինա Ավերկինան մշտապես կատարում էր արտադրական նորմաները։ Նա դիմեց ԼԿԵՄ կոմիտեին՝ երաշխավորություն ստանալու՝ ՍՄԿԿ շարքերն ընդունվելու համար։ ԼԿԵՄ կոմիտեն, բացի անհատական զրույց ունենալուց, նրան տվեց հասարակական հանձնարարություններ՝ արտադրամասում ծաղիկներ աճեցնել, կազմակերպել հանգստի երեկո և այլն։ Այնուհետև նրա հետ զրույց ունեցան երիտասարդ կոմունիստների հետ աշխատանք տանող հանձնաժողովի անդամները։ Այդ զրույցի ժամանակ պարզվեց, որ Վալենտինան տնտեսագիտական կրթություն ստանալու մեծ ձգտում ունի։ Նա ընդգրկվեց տնտեսագիտական ուսուցման խմբակում, գործարանի դիրեկցիան նրան գործուղեց հեռակա կարգով սովորելու այդ մասնագիտությամբ, ապա՝ պլանային բաժնում նշանակեց համապատասխան գործի։ Այժմ Վ. Ավերկինան ուսումը հաջողությամբ զուգակցում է աշխատանքին։

Կուսկոմիտեն հոգատարություն է ցուցաբերում երիտասարդ կոմունիստների նկատմամբ, շնորհալիների համար ստեղծում կրթություն ստանալու, իրենց մասնագիտական որակավորումը բարձրացնելու լավ պայմաններ, առաջ քաշում առավել պատասխանատու աշխատանքի։ Գործարանի առաջատար մասնագետների 80 տոկոսը նախկին բանվորներ են։

Մեր կոմունիստները լավ են ըմբռնում կուսակցական փաստաթղթերի



փոխանակության կարևորությունը։ Նրանք համոզված են, որ այդ միջոցառումը է՛լ ավելի կնպաստի կուսակցության շարքերի որակական կազմի բարելավմանը։ Կուսակցական փաստաթղթերի փոխանակման ընթացքում ոչ թե կդադարի ՍՄԿԿ շարքերի աճը, այլ կընթանա իր բնական հունով։ Անտարակույս, կմեծանա կուսակցության մեջ ընդունվողներին ներկայացվող պահանջները։

ՀԱՐՑ— Բացառված, չէ, որ կուսակցության շարքերում դեռևս կան մարդիկ, որոնք վատ են կատարում իրենց կանոնադրական պահանջները, թույլ տալիս զանցանքներ ու հանցանքներ, որոնց համար ենթարկվում են կուսակցական տույժի: Ինչպիսի՞ պայմաններ եք ստեղծում այդպիսի կոմունիստներին դաստիարակելու և նրանց տույժերը վերացնելու համար:

ՊԱՏԱՍԽԱՆ— (Կիրշինտրեստի կուսկոմիտեի քարտուղար Կ. Թումանյան)։

Իր պատմության բոլոր էտապներում կուսակցությունը պահանջել է իր անդամներից՝ պատվով կատարել իրենց կանոնադրական պարտականությունները, արտադրության մեջ ու հասարակական աշխատանքում լինել առաջավոր, սկզբունքային պայքար ծավալել թերությունների, մեր հասարակությանը խորթ երևույթների դեմ։ Մեր սկզբնական կուսկազմակերպություններն ու կուսկոմիտեն հոգում են, որպեսզի կոմունիստները գտնվեն իրենց կոչման բարձրության վրա, ամենուրեք դրսևորեն իրենց ավանգարդային դերը։ Սակայն, ցավոք, մեր շարքերում դեռևս կան մարդիկ, որոնք արատավորում են կուսակցության մարտիկի պատիվը, թերանում իրենց կանոնադրական ու աշխատանքային պարտականությունների կատարման մեջ, դիմում հանցանքների ու զանցանքների։ Պարզ է, նրանց նկատմամբ պետք է խիստ վարվել։ Նախընթաց տարիներին զանազան պատճառներով կուսակցական տույժ է ստացել մեր կուսկազմակերպության 19 անդամ։

ՍՄԿԿ Կենտկոմը գտնում է, որ տույժերի վերացման մասին պետք է հոգան ոչ միայն կոմունիստները, այլև կուսկազմակերպությունները։ Նրանք պարտավոր են տույժեր ստացած կոմունիստներին ներգրավել հասարակական ակտիվ աշխատանքի, պայմաններ ստեղծել նրանց համար՝ դրսևորելու իրենց և վերացնելու տույժերը։ Այսպես, տրեստի գլխավոր ինժեներ Լ. Տեր-Սիմոնյանը 1962 թ. նկատողություն էր ստացել Նովոսելցովո—Կիրովական ջրատարի շինարարության ժամանակ անպատասխանատվություն ցուցաբերելու համար։ Կուսկազմակերպությունը հոգատար գտնվեց նրա նկատմամբ. հետագայում առաջադրեց շինարարության էկոնոմիկայի հարցերն ուսումնասիրող սեմինարի ղեկավար և տրեստի որակի հանձնաժողովի նախագահ։ Ընկ. Տեր-Սիմոնյանն սկսեց իրեն լավ դրսևորել նաև աշխատանքում, կատարել հասարակական այլ հանձնարարություններ։ 1971 թ. հանվեց նրա կուսակցական տույժը։ Նա պարգևատրվեց Լենինի շքանշանով։ Հասարակական ու արտադրական աշխատանքում ակտիվություն հանդես բերելու, կուսակցական մշտական ու ժամանակավոր հանձնարարությունները պարտաճանաչորեն կատարելու համար հանվել են նաև Ա. Թումանյանի, Գ. Խաչատրյանի, Ս. Վարդանյանի կուսակցական տույժերը։ Այժմ նրանք կարող են հանգիստ խղճով իրենց հին փաստաթղթերը փոխանակել նորով։

Կուսակցական տույժ ստացած մարդու հետ հարկավոր է համակողմանի աշխատանք տանել, նրան ընդգրկելով հասարակական ակտիվ գործունեության մեջ, չպետք է մոռանալ, թե նա ինչպես է իրեն դրսևորում արտադրու-

*թյան՝ իրեն վստահված տեղամասում, կամ ընդհակառակը։ Այլ խոսքով, կոմունիստի պարտքն է սրբությամբ կատարել իր կանոնադրական պարտականությունները և լավի օրինակ ծառայել։ Ահա այդ հանգամանքները հաշվի չառնելու հետևանքը. Հ. Մնացականյանը, որն այժմ կաhույքի ֆաբրիկայի շինարարության ավագ աշխղեկն է, 1964 թ. կուսակցական խիստ նկատողություն էր ստացել։ Կուսկոմիտեն նրան առաջադրեց քաղինֆորմատոր։ Այս պարտականությունը նա վատ չի կատարում, և սկզբնական կուսկազմակերպությունն ու կուսկոմիտեն, ընդառաջելով նրա խնդրանքին, գտան, որ ժամանակն է հանելու տույժը։ Սակայն, կուսքաղկոմը չհաստատեց մեր որոշումը՝ աշխղեկության կողմից շինմոնտաժային աշխատանքի պլանները չկատարելու պատճառով։ Ես գտնում եմ, որ քաղկոմի բյուրոն ճիշտ վարվեց, պարզապես մենք հապճեպություն էինք հանդես բերել։ Աշխղեկությանն օգնելու և թերությունները վերացնելու նպատակով կուսկոմիտեն վերջերս քննարկեց ֆաբրիկայի շինարարության ընթացքը։ Պարզ է, մենք դրանով ուզում ենք օգնել նաև կոմունիստ Հ. Մնացականյանին՝ ապահովելու իր ավանգարդային դերը և վերացնելու կուսակցական տույժը։ Նույնը կարելի է ասել նաև ավտոբազայի գլխավոր ինժեներ Ս. Վարդանյանի մասին։ Կուսակցական խիստ նկատողությունը վերացնելու մասին նրա դիմումը մերժվել է կուսկազմակերպության և կուսկոմիտեի կողմից այն բանի համար, որ ավտոբազայում գործերը բարեհաջող չեն։*

*Երբեմն առանձին կոմունիստներ թեթևորեն են նայում իրենց կատարած զանցանքին, մինչև վերջ մնալով այն համոզման, թե իրենց տույժը տրվել է անհիմն կերպով։ Այսպես, շինբանվածքային կոմբինատի բանվոր Վ. Ղևոնդյանը 1965 թ. խիստ նկատողություն էր ստացել՝ գինարբուքի նպատակով բանվորներից դրամ հավաքելու համար։ Վերջերս, երբ նա դիմել էր կուսկազմակերպությանը նկատողությունը վերացնելու հարցով, 57 կոմունիստները մերժեցին Վ. Ղևոնդյանի խնդրանքն այն պատճառով, որ նա մինչև այժմ էլ չի ընդունում իր կատարած հանցանքը։ Եզրակացությունը պարզ է, բոլոր պարագաներում կոմունիստը պետք է ազնիվ լինի կուսակցության հանդեպ, հրավանդագին չընդունի իր հասցեին արված քննադատությունը, իրեն տրված տույժը դիտի որպես օգնության և դաստիարակության միջոց, ջանա արդարացնել իրեն, մաքրել կուսակցական խիղճը և պարզերես դուրս գալ ընկերների առջև։*

Հարցազրույցը վարեց Ա. ՍԱՔԱՆՅԱՆԸ։




Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ

# ՆԻԺՆԻ ՆՈՎԳՈՐՈԴՈՒՄ*)

Մեր ամսագրի այս համարից սկսած «Новый мир» ամսագրից շարունակաբար արտատպելու ենք կոմունիստական կուսակցության և սովետական պետության ականավոր գործիչներից մեկի՝ Ա. Ի. Միկոյանի տպագրության պատրաստվող հուշերի երկրորդ գրքի որոշ հատվածներ։— **Խմբ.:**

*Ինձ Նիժնի Նովգորոդ փոխադրելու վերաբերյալ Կենտկոմի որոշումը հնչեց ինչպես պարզ երկնքից ճայթած ամպրոպ...*

*Պետք էր գնալ մի նոր, անծանոթ երկրամաս, որի մասին ես այն ժամանակ, իամոթ ինձ, ունեի ամենաընդհանուր պատկերացում, որը դուրս չէր գալիս աշխարհագրության դպրոցական դասագրքի սահմաններից։*

*Իհարկե, ես գիտեի, որ Նիժնի Նովգորոդը գտնվում է Վոլգայի ափին, որ այն հայտնի է իր տոնավաճառներով, բայց, ճիշտն ասած, չափազանց աղոտ էի պատկերացնում, որ դա բանվորական խոշոր կենտրոն է՝ զարգացած արդյունաբերությամբ և փառապանծ հեղափոխական ավանդույթներով...*

*Այդ ժամանակ Կոմինտերնի պատվիրակության (Բելա Կուն, Ջոն Ռիդ, Կարլ Ռադեկ և ուրիշներ) հետ Բաքու՝ Արևելքի ժողովուրդների համագումարին եկած Զինովևը, անդրադառնալով իմ փոխադրման հարցին, ամեն կերպ «քաջալերում» էր ինձ, ասելով, թե այդպես ավելի լավ կլինի կուսակցության և ինձ համար։ Ի միջի այլոց, նա ասաց, որ Լենինը, նկատի ունենալով երկաթուղային վատ հաղորդակցությունը Մոսկվայի և Բաքվի միջև, հանձնարարել է իրեն Մոսկվա վերադառնալիս ինձ վերցնել Կոմինտերնի պատվիրակների գնացքը, որը երթևեկում էր հատուկ չվացուցակով։*

*...Ես քանիչորս տարեկան էի, երբ պետք է բաժանվեի Բաքվից։ Հեռանում էի մեծ ափսոսանքով. հարկավոր էր հրաժեշտ տալ Բաքվի շատ ընկերների, որոնց հետ ապրել էինք բազում դժվարին փորձություններ, որոնք մեզ հարազատացրել էին իբրև ընդհանուր պայքարի եղբայրների...*

*Մոսկվա տանող ճանապարհը մեր գնացքի համար ամենուր բաց էր։ Եվ, այնուամենայնիվ, մենք շարժվում էինք չափազանց դանդաղ, և այստեղ բանը միայն երկաթուղիներում այն ժամանակվա փոքր արագությունը կամ էլ ինչ-որ տեխնիկական պատճառները չէին...*

*Ճանապարհը վտանգավոր էր։ Մի շարք շրջաններում, որոնցով պետք է անցնեինք, դեռևս գործում էին սպիտակգվարդիական հակահեղափոխական հրոսակախմբերի մնացորդները, ո-*

*) «Новый мир», 1972, № 9:

անց նա նորից անդրադառնում է այդ հարցին և 1920 թվականի հոկտեմբերի 26-ին գրում է կուսակցության Կենտկոմի քաղբյուրոյի որոշման նախագիծը, որտեղ անհրաժեշտ է համարում «...որպես հատուկ առաջադրանք վերահսկիչ հանձնաժողովին հանձնարարել ուշադիր-անհատականացնող վերաբերմունք, հաճախ նույնիսկ ուղղակի յուրատեսակ բուժում այսպես կոչված օպոզիցիայի այն ներկայացուցիչների նկատմամբ, որոնք հոգեբանական ճգնաժամ են ապրել իրենց սովետական կամ կուսակցական կարիերայում ունեցած անհաջողությունների կապակցությամբ։ Պետք է ջանալ հանգստացնել նրանց, ընկերաբար բացատրել նրանց գործը, նրանց համար գտնել (առանց հրամայելու եղանակի) իրենց հոգեբանական առանձնահատկություններին համապատասխան գործ, այդ կետում խորհուրդներ ու ցուցումներ տալ Կենտկոմի կազմբյուրոյին և այլն» (նույն տեղը, էջ 394)։

Այս տողերը չի կարելի առանց հուզմունքի կարդալ... Դրանցում Լենինն է՝ իրեն հատուկ այն կարողությամբ, որը թույլ էր տալիս կուսակցական սկզբունքայնությունը զուգակցել հոգատար և ուշադիր վերաբերմունքի հետ այն կոմունիստների նկատմամբ, որոնք հեղափոխության այս կամ այն շրջանում սխալվում էին և, մոլորվելով, տարաձայնվում էին կուսակցության հետ, նրա հանդեպ կազմելով օպոզիցիա։

Այդպիսի մարդկանց կուսակցությունից մեխանիկորեն կտրելու փոխարեն Լենինն անհրաժեշտ էր համարում ո՛չ թե վարչարարություն անել, այլ ուշադիր կերպով մոտենալ նրանցից յուրաքանչյուրին, նրանց նկատմամբ կիրառել «յուրատեսակ բուժում», ջանալ «հանգստացնել նրանց, ընկերաբար բացատրել նրանց գործը», նրանց համար գտնել այնպիսի աշխատանք, որը համապատասխաներ նրանց «հոգեբանական առանձնահատկություններին»...

Հենց դա էր կուսակցական կադրերի նկատմամբ լենինյան վերաբերմունքի էությունը։

Լենինյան այդպիսի մոտեցումն ազդեց Կենտրոնական վերահսկիչ հանձնաժողովի աշխատանքի պրակտիկայի վրա նրա գոյության գրեթե ամբողջ ժամանակաշրջանում (մինչև 1934 թվականը)։

Որքան ջանքեր և խսկական կուսակցական ոգի ներդրեցին այդ գործում Կույբիշևը, Օրջոնիկիձեն, Ռուձուտակը, Յարոսլավսկին, Սոլցը...

Հիրավի, քանի՜-քանի բանվոր և հին հեղափոխական կոմունիստների նրանց հաջողվեց անջատել օպոզիցիայից և վերադարձնել կուսակցության գիրկը...

(Շարունակելի)

Թարգմ. Վ. Գ. ԱՎԱԳՅԱՆ



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԱՎԵԼԻ ՇԱՏ, ԱՎԵԼԻ ՈՐԱԿՈՎ

Ե. Լ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

Մեր հայրենիքը պատրաստվում է նշելու պատմական փառավոր տարելիցը՝ ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակը։ Սովետական մարդիկ դրսևորում են քաղաքական ու աշխատանքային բարձր ակտիվություն, հետևողականորեն կենսագործում են ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները։

Համագումարն առաջնահերթ համարեց ավելացնել լայն սպառման ապրանքների արտադրությունը, ընդլայնել դրանց ասորտիմենտը, բարձրացնել որակը և լիովին բավարարել ժողովրդի պահանջմունքները։ Այդ ասպարեզում անցած ժամանակաշրջանում շատ բան է արված միութենական բոլոր հանրապետություններում, այդ թվում և Հայկական ՍՍՀ-ում։ ՍՍՀՄ կազմավորման 50 տարվա ընթացքում Սովետական Հայաստանում թեթև արդյունաբերության համախառն արտադրանքը ավելացել է ավելի քան 333, սննդի և մսի-կաթնեղենի արդյունաբերությանը՝ 145 անգամ։ Աշխատանքի արտադրողականությունը թեթև արդյունաբերության մեջ բարձրացել է 4, սննդի արդյունաբերության մեջ՝ 3 անգամ։ 1970 թ. թեթև արդյունաբերության ճյուղերում հիմնական ֆոնդերը, 1960 թ. համեմատությամբ, մեծացել են 245, սննդինը՝ 273 տոկոսով։

Թեթև արդյունաբերության զարգացման ասպարեզում առավել խոշոր առաջընթաց քայլ կկատարվի ընթացիկ հնգամյակում։ Բավական է ասել, որ նոր հնգամյակում Հայկական ՍՍՀ-ում ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը կաճի 68 տոկոսով։

ՀՍՍՀ-ում ժողովրդական սպառման ապրանքների («Բ» խմբի) արտադրության տեսակարար կշիռը արդյունաբերական ապրանքների արտադրության ընդհանուր ծավալում 1975 թվականին կկազմի 35 տոկոս, 1970 թ. 32-ի փոխարեն։ Ընդ որում, եթե ութերորդ հնգամյակում «Բ» խմբի արտադրանքի բացարձակ աճը կազմել է 423 մլն ռուբլի, ապա ընթացիկ հնգամյակում այն կհասնի 650,6 մլն ռուբլու։

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին ենթակա արդյունաբերության սիստեմում ժողովրդական սպառման ապրանքների հիմնական արտադրողներն են թեթև, սննդի, մսեղենի և կաթնեղենի, փայտամշակման և տեղական արդյունաբերության մինիստրությունների ձեռնարկությունները։ Նշված մինիստրությունները 1975 թ. թողարկելու են 1.289 մլն ռուբլու արտադրանք, որն նրանց ընդհանուր արտադրանքի 80 տոկոսն է կազմում։

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին ենթակա արդյունաբերության ճյուղերում արտադրանքի հիմնական տեսակների աճը 1975 թ., 1970 թ. համեմատությամբ, նախատեսվում է. բամբակե գործվածքեղենինը՝ 23,3, բրդե գործվածքեղենինը՝ 35,7, կաշվե կոշկեղենինը՝ 22,1, տրիկոտաժե սպիտակեղենինը՝ 22,1, տրիկոտաժե վերնազգեստինը՝ 69,4, պահածոներինը՝ 67,2, մսինը՝ 46,7, կաթնամթերքինը՝ 59,3 տոկոսով, իսկ տնտեսական գործածության ապրանքների արտադրության ծավալը հնգամյակում կավելանա 2,6, կահույքինը՝ 1,9, ճենապակե-հախճապակե ամանեղենինը՝ 2,4 անգամ։

Մեր հանրապետությունում միութենական ենթակայության արդյունաբերության ձեռնարկություններում ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը առավելապես լայն չափերով է զարգանալու ՍՍՀՄ էլեկտրաարդյունաբերության օբյեկտներում։ Բավական է ասել, որ ընթացիկ հնգամյակում հիշյալ մինիստրության ձեռնարկությունների թողարկած լայն սպառման ապրանքների արտադրությունը կաճի 2,8 անգամ։ 1975 թ. կարտադրվի 2,5 անգամ ավելի շատ սառնարան, քան 1970 թ., մեծ չափով կավելանա հովհարիչների, լուսատեխնիկական սարքավորումների, խաղալիքների, պլաստմասե իրերի թողարկումը։ Կավելանա նաև կուլտ-կենցաղային և տնտեսական գործածության ապրանքների արտադրությունը՝ ՍՍՀՄ սարքաշինության մինիստրության ձեռնարկություններում բոլոր տեսակի ժամացույցների արտադրությունը կավելանա 34 տոկոսով, ոսկերչական իրերինը՝ 2,9 անգամ։

Ժողովրդական սպառման և կուլտուր-կենցաղային ապրանքների թողարկման նպատակով նախատեսվող օբյեկտների շինարարության համար ընթացիկ հնգամյակում կապիտալ ներդրումները կազմելու են 312,3 մլն ռուբլի, անցյալ հնգամյակում յուրացված 218 մլն ռուբլու դիմաց։ Նախատեսվող վերահիշյալ գումարից ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրությանը կհատկացվեն 75 մլն ռուբլի (աճ՝ 33 տոկոս), սննդարդյունաբերության մինիստրությանը՝ 109 մլն ռուբլի (աճ՝ 49 տոկոս), անտառային և փայտամշակման արդյունաբերության մինիստրությանը՝ 20,55 մլն ռուբլի (աճ՝ մոտ 4 անգամ), ձկնատնտեսության միավորմանը՝ 11 մլն ռուբլի (աճ՝ 2,5 անգամ)։

Ընթացիկ հնգամյակում մեր հանրապետությունում ժողովրդական սպառման առարկաներ թողարկող ձեռնարկությունները մեծ մասամբ կկառուցվեն շրջաններում։ Կկառուցվեն՝ Լուսավանի հախճապակե ամանեղենի, գործիքաշինական գործարաններ, Արարատում՝ գործվածքեղենի-գալանտերեայի, Ղափանում՝ ձեռնոցների, Զարենցավանում՝ կանացի արդուզարդի առարկաների ֆաբրիկաներ, Ջրվեժում՝ ցինկապատ ամանեղենի, Էջմիածնում՝ մետաղյա իրերի, Լենինականում՝ հեծանիվի նոր գործարաններ և այլն։

Շահագործման կհանձնվեն Կիրովականի, Հոկտեմբերյանի կահույքի ֆաբրիկաները, Ախթալայի, Արարատի պահածոների, Արզնիի, Ջերմուկի, Հանքավանի, Բժնիի հանքային ջրերի, Հոկտեմբերյանի կոնյակի, Լենինականի, Աբովյանի գարեջրի նոր գործարանները։ Մի շարք տեղերում շահագործման կհանձնվեն կարի, տրիկոտաժի նոր ֆաբրիկաներ, հացի, պանրի գործարաններ և այլ օբյեկտներ։ Երևանում շարք կմտնի հրուշակեղենի փորձագործարանը, հագուստի ու կոշիկի մոդելների տունը և այլ օբյեկտներ, Մասիսում՝ մանածագործական ֆաբրիկան։

Մեր հանրապետության սննդի, մսեղենի և կաթնեղենի, փայտամշակման և տեղական արդյունաբերության մինիստրություններին ենթակա ձեռնարկու-



թյունների կոլեկտիվները լուծելով ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խնդիրները, անցյալ տարի զգալի հաջողությունների հասան ժողովրդական սպառման ապրանքների թողարկումն ավելացնելու, ասորտիմենտն ընդլայնելու և արտադրանքի որակը բարձրացնելու գործում։

Սննդի արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները պլանից ավելի իրացրել են 21 մլն ռուբլու արտադրանք, մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները տվել են 10 մլն ռուբլու ավելի արտադրանք։

Հետևելով երկրի առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվների օրինակին, մեր հանրապետության արդյունաբերության աշխատողները սոցիալիստական մրցությամբ պարտավորվել են 1972 թվականին պլանից ավելի թողարկել 22,6 միլիոն ռուբլու ժողովրդական սպառման այնպիսի ապրանքներ, որոնք լայն պահանջարկ ունեն։

Սննդի արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունների կոլեկտիվները պարտավորվել են դեկտեմբերի 25-ին կատարել արտադրանքի իրացման տարեկան պլանը, համախառն արտադրանքի աճը, պլանավորված 6,2 տոկոսի փոխարեն, հասցնել 7 տոկոսի, պլանից ավելի ստանալ 150 հազար դեկալիտր խաղողի գինի, 15 հազար դեկալիտր կոնյակ, 3 միլիոն պայմանական տուփ պահածո, 120 միլիոն հատ ծխախոտ և սիգարետ։ Նրանք խոստացել են արտադրանքի աճի 80 տոկոսը ձեռք բերել աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։

Կատարելով իրենց խոստումը, նրանք արդեն յուրացրել են արտադրանքի բազմաթիվ նոր տեսակներ։ Դրանցից են «Գայանե», «Հոբելյանական», «Նաշելի» գինիները, «50 տարվա պահված» կոնյակը և այլն։ Սննդարդյունաբերության մինիստրության ձեռնարկությունների թողարկած արտադրանքից 19 տեսակ, այդ թվում «Հոբելյանական», «Երևանյան», «Նաիրի» կոնյակները կներկայացվեն «Որակի նշանի»։

Թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունների կոլեկտիվները պարտավորվել են 1972 թվականի ապրանքների արտադրանքի իրացման պլանը կատարել դեկտեմբերի 28-ին, պլանից ավելի թողարկել գործվածքեղեն 500 հազար քառակուսի մետր, տրիկոտաժեղեն՝ 350 հազար հատ, նասկի-գուլպեղեն՝ 250 հազար զույգ, ստանալ 800 հազար ռուբլու արտապլանային շահույթ, տնտեսել 25 տոննա մանվածք, 40 տոննա բամբակ, 50 տոննա կաշվե հումք և այլ նյութեր։

Նրանք միաժամանակ պարտավորվել են 1972 թվականին արտադրության մեջ ներդնել 210 նորորակ ու նորանախշ գործվածք, 12 տեսակի գորգ, 250 նորաձև կոշիկ, 300 նոր մոդելի կարի արտադրանք, 170 տեսակի տրիկոտաժի արտադրանք։

Կատարելով իրենց խոստումը, մինիստրության ձեռնարկությունների կոլեկտիվները այս տարվա առաջին կիսամյակում պլանից ավելի թողարկել են 1,5 միլիոն հատ գործվածք, 1,5 միլիոն զույգ նասկի-գուլպեղեն, 124 հազար ռուբլու կարի արտադրանք։ Տեքստիլ արդյունաբերության ձեռնարկությունները արդեն արտադրում են նոր տեսակի բրդյա գործվածք՝ օգտագործելով սինթետիկ թելեր։ Նրանք արտադրում են նաև կիսաբրդյա ծածկոցներ, մետաքսե գեղեցիկ գործվածքներ, կանացի տրիկոտաժե կոստյումներ և այլն։

Տեղական արդյունաբերության ձեռնարկությունների կոլեկտիվները պարտավորվել են ընթացիկ տարվա արտադրական պլանը կատարել դեկտեմբերի 25-ին։ Նրանք պլանից դուրս արտադրելու են մեկ միլիոն ռուբլու զանազան տեսակի ապրանքներ և յուրացնելու են ժողովրդական լայն սպառման 300 նոր տեսակի արտադրանքի մասսայական թողարկումը։ Անցած կիսամյակում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, մինիստրության ձեռնարկություններում, ամբողջությամբ վերցրած, արտադրության աճը կազմել է 7,8 տոկոս, պլանից ավելի թողարկվել է 360 հազար ռուբլու լայն սպառման ապրանքներ։ Արդեն մշակվել, ընդունվել ու յուրացվել է 150 տեսակի այնպիսի իրերի սերիական արտադրությունը, որոնք մեծ պահանջարկ ունեն բնակչության կողմից։ Այդպիսի իրերից են էմալապատված թեյնիկները, չժանգոտվող մետաղից դանակները, պատառաքաղները, գդալները, ինչպես նաև մաքուր բրդից գուլպաները, նորածինների բարուրների կոմպլեկտները, վերմակի մետաքսե ծածկոցները։

Մեծ հոբելյանին նախապատրաստվելու այս եռուն շրջանում լարված աշխատանք են կատարում նաև մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունների կոլեկտիվները։ Նրանք համառորեն պայքարում են տարեկան պլանը դեկտեմբերի 25-ին կատարելու և պլանից դուրս թողարկելու 2,5 միլիոն ռուբլու արտադրանք, ընդ որում միս՝ 1000 տոննա, պանիր՝ 1000 տոննա։ Բանվորները, ինժեներա-տեխնիկական աշխատողները և մյուս մասնագետները իններորդ հնգամյակի երկրորդ տարին հայտարարել են գերազանց որակի արտադրանքի թողարկման տարի՝ «Որակի» նշանի ներկայացնելով «Լոռի», «Շվեցարական» պանիրները, համապխտած «Սովետական» և «Ստալինի» երշիկները։

Որոշակի տեղաշարժեր են կատարվում նաև հանրապետության անտառային և փայտամշակման մինիստրության ձեռնարկություններում։ Նրանց կոլեկտիվները յուրացրել և պետք է արտադրեն մի շարք նոր իրեր ու կահույքի հավաքածու, որոնք իրենց գեղեցկությամբ ու այլ ցուցանիշներով ետ չեն մնում հայրենական լավագույն նմուշներից։ Հոբելյանական տարում կարտադրվեն «Անահիտ» կահույքի հավաքածուն (երկու սենյականոց բնակարանի համար), որը ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսում արժանացել է երկրորդ կարգի դիպլոմի։ Արտադրության է պատրաստվում գերազանց գնահատականի արժանացած «Կոմիտաս» դաշնամուրը, ընդլայնվում է էլեկտրաերաժշտական գործիքների և հարմարանքների արտադրման նոմենկլատուրան։

Կուսակցական կազմակերպությունների ամենօրյա օգնությամբ սոցիալիստական մրցությունում լավագույն ցուցանիշների են հասել Ստ. Շահումյանի անվան կաշեմշակման արտադրական միավորման, Երևանի կարի № 4 և գլխարկների ու դեկորատիվ գործվածքների ֆաբրիկաների, Սովետաշենի տրիկոտաժի ֆաբրիկայի, Երևանի ու Լենինականի մսի կոմբինատների և այլ ձեռնարկությունների կոլեկտիվները։ Երևանի «Պլաստիկ», կաթի, Կամոյի պանրի գործարանների, Սովետաշենի տրիկոտաժի ֆաբրիկայի կոլեկտիվները բազմիցս մրցանակներ են շահել հանրապետական ու միութենական մրցություններում։ Զբավականանալով ձեռք բերված նվաճումներով, առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվները բոլոր ռեզերվները գործի են դնում աշխա-



տանքի արտադրողականությունը բարձրացնելու և բնակչությանը ավելի շատ ու ավելի որակյալ ապրանքներ տալու համար։

Լենինականի տեքստիլ կոմբինատի վարպետի օգնական, առաջավոր Միհրան Ստեփանյանի նախաձեռնությունը՝ իններորդ հնգամյա պլանը կատարել երեք տարի ինն ամսում, ջերմ ընդունելություն գտավ թեթև արդյունաբերության ձեռնարկությունների կոլեկտիվներում։ Մոտ 2000 առաջավոր բանվոր մրցում են այդ ժամկետում առաջադրանքը կատարելու համար։ Երևանի մետաքսի կոմբինատի վարպետի օգնական Մկրտիչ Փափազյանի օրինակով ավելի քան երկու հազար բանվոր սոցիալիստական մրցության մեջ է մտել հանուն արտադրության բարձր արդյունավետության։

Թեթև արդյունաբերության ոլորտի ավելի քան 12 հազար բանվոր, հետևելով ՍՄԿԿ XXIV համագումարի պատգամավոր Յակովլևի վուշակոմբինատի ջուլհակուհի Ա. Վ. Սմիռնովայի օրինակին, մրցում են գերազանց որակի արտադրանքի թողարկման և աշխատանքի բարձր արտադրողականության, ինչպես և հումքի ու նյութերի համակողմանի տնտեսման, արտադրական հզորությունների յուրացման սահմանված ժամկետների կրճատման համար։

Ակտիվ մասնակցություն և մեծ հետաքրքրություն են ցուցաբերում սոցիալիստական մրցության մասնակիցները ձեռնարկություններում անցկացվող բանվորի վարպետության մրցույթներին և առաջավոր փորձի փոխանակման դպրոցի հանդեպ։ Դրանց նպատակն է՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման, հումքի խնայողաբար օգտագործման, գերազանց որակի ապահովման առաջավոր մեթոդները հաղորդել մյուս բանվորներին։

Թեթև արդյունաբերության ձեռնարկություններում արդեն անց են կացվել 68 բանվորական վարպետության և 17 միջֆաբրիկային դպրոցների մրցույթ՝ առաջավոր փորձի հաղորդման նպատակով, որոնց մասնակցել են 3 հազար հոգի։

Սիսիանի պանրի գործարանի կուսկազմակերպության նախաձեռնությամբ մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում շարժում է ծավալվել կաթի տնտեսման համար՝ շրջանային զանգվածում յուղի կորստի կրճատման և տեխնոլոգիական պրոցեսների բարելավման հաշվին։ Այդ շարժման շնորհիվ, որը տարածվել է պանրագործական մյուս ձեռնարկություններում ևս, 1971 թ. տնտեսվել է 800 տոննա կաթ։ Երևանի մսի կոմբինատում ծավալվել է մասսայական շարժում՝ հանուն արտադրության առավել լավ կազմակերպման, և յուրաքանչյուր պրոցեսում, արտադրամասում ու տեղամասում աշխատանքի արտադրողականության բարձրացման։

Երևանի մետաղեղենի գործարանի կոլեկտիվի նախաձեռնությամբ տեղական արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում սոցիալիստական մրցություն է ծավալվել՝ մետաղի թափոնի ժողովրդական սպառման ապրանքների արտադրման նպատակով օգտագործման, տնտեսված նյութերի հաշվին կուլտուր-կենցաղային ապրանքների թողարկման համար։

Սակայն անհրաժեշտ է նշել, որ մեր հանրապետությունում ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ընդլայնման և բնակչության կարիքների լրիվին բավարարման համար դեռևս բոլոր հնարավորությունները չեն օգտագործվում։ Առանձնապես մեծ հնարավորություններ ունեն միութենական ենթակայության ձեռնարկությունները, որոնք հագեցած են բարդ տեխնիկայով, ունեն որակյալ բանվորական և ինժեներա-տեխնիկական կադրեր։

*Այստեղ առաջանում է զգալի քանակությամբ թափոն, որը կարելի է օգտագործել մասսայական պահանջարկ ունեցող ապրանքների արտադրության համար։*

*Երևանի մահուդի կոմբինատում, կարի առաջին, կոշիկի առաջին, կարամելի ֆաբրիկաներում, Արզնու, Կամոյի հանքային ջրերի, Սպիտակի շաքարի գործարաններում, Մասիսի տեղարդկոմբինատում և մի շարք այլ ձեռնարկություններում անբավարար աշխատանք է տարվում արտադրության տեխնիկական մակարդակի և արտադրանքի որակի բարձրացման համար, դանդաղ են յուրացվում ներդրված կարողությունները։*

*Արտադրության աճի համեմատաբար բարձր տեմպերի առկայության և կարողությունների ներդրման պայմաններում դանդաղ է յուրացվում նոր իրերի և արտադրանքի թողարկումը։ Դեռևս մի շարք ձեռնարկություններ շարունակում են թողարկել ցածրորակ, հնացած մոդելի, ստանդարտից և տեխնիկական պայմաններից շեղված արտադրանք։ Դրա հետևանքով բնակչությունը դժգոհ է կահույքի, տրիկոտաժեղենի, հրուշակեղենի և այլ արտադրանքների ցածրորակությունից։*

*Արտադրանքի որակի բարձրացման համար մղվող պայքարը իններորդ հնգամյակում՝ սոցիալիստական արտադրության զարգացման կարևորագույն խնդիրներից մեկն է։ Այն պետք է ապահովվի ձեռնարկությունների կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների և ադմինիստրացիայի միացյալ ակտիվ ջանքերով։ Այժմ առավել կարևոր է յուրացնել և ընդօրինակել լավագույնը, նորը, սովորել աշխատանքի առաջավոր մեթոդները։ Ինչպես նշեց Լ. Ի. Բրեժնևը արհմիությունների XV համագումարում, ընթացիկ հնգամյա պլանը կազմված է նկատի ունենալով այն հանգամանքը, որ մենք բոլորս այսօր և վաղը պետք է աշխատենք երեկվանից ավելի լավ։ Եթե մենք չենք սովորել առաջվանից ավելի լավ աշխատել, ապա պլանը խիստ լարված կթվա, իսկ եթե սովորենք, կարող ենք ձեռք բերել պլանում եղածից նույնիսկ ավելին, կարող ենք ստեղծել արտադրանքի անհրաժեշտ պաշար ապագայի առավել արագ առաջընթացի համար։*

*Չնայած ժողովրդական սպառման ապրանքների թողարկման ավելացման, ասորտիմենտի ընդլայնման և որակի բարձրացման նպատակով հանրապետության կուսակցական կազմակերպությունների կատարած որոշակի աշխատանքին, դեռևս մեզ մոտ թեթև, սննդի, տեղական և փայտամշակման արդյունաբերական մի շարք ձեռնարկություններ չեն կատարում արտադրական պլանները և թողարկում են ժողովրդական սպառման ցածրորակ ապրանքներ։*

*Արտադրության ներկայիս մակարդակը և մասշտաբները պահանջում են կուսակցական, սովետական և տնտեսական աշխատողներից, որպեսզի յուրաքանչյուր հարց վճռելիս, նրանք, ամենից առաջ, նկատի ունենան իններորդ հնգամյակում նախանշված կոնկրետ պլանների իրականացումը, արտադրանքի որակի և արտադրության արդյունավետության բարձրացումը։ Այդ իսկ պատճառով կուսակցական կազմակերպությունների կազմակերպական և գաղափարա-դաստիարակչական աշխատանքը, զուգակցված արտադրության կատարելագործման հետ, պետք է ուղղված լինի սոցիալիստական կարգապահության, կոմունիստական գիտակցականության, աշխատանքային կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի հոգում հանձնարարված գործի նկատմամբ բարձր պատասխանատվություն դաստիարակելուն։*

---

*Հոբելյանական*

# ՏԱՐԵԹՎԵՐ

## ՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ-ԼԵՆԻՆՅԱՆ ՀԱՅԵՐԵՆ ԱՌԱՋԻՆ ԹԵՐԹԸ

Վ. Ա. ԱՎԵՏԻՍՅԱՆ

Յոթանասուն տարի առաջ, 1902 թ. նոյեմբերին, Թիֆլիսում անլեգալ լույս տեսավ «Պրոլետարիատ» հայերեն առաջին մարքսիստական-լենինյան թերթը։ Դա պատմական մեծ իրադարձություն էր Անդրկովկասի բանվորական շարժման և սոցիալ-դեմոկրատիայի, մասնավորապես հայ հասարակական-գաղափարական կյանքում։


ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏ

1902 | № 1

XX դարի արշալույսին Անդրկովկասի բազմազգ պրոլետարիատը հեղափոխական բուռն պայքարի շրջան էր մտել։ Ռուսաստանի արդյունաբերական կենտրոններում գրեթե չկար աչքի ընկնող որևէ հեղափոխական ելույթ, որին չարձագանքեին Անդրկովկասի բանվորները։ Նրանց ելույթները, սոցիալ-դեմոկրատիայի ղեկավարությամբ, բացահայտ քաղաքական բնույթ ստացան։ 1901 թ. Թիֆլիսի բանվորների մայիսմեկյան ցույցին և դրան հաջորդած Բաքվի ու Բաթումիի բանվորների գործադուլներին ու քաղաքական ցույցերին բացառիկ ակտիվությամբ մասնակցեց հայ բանվորությունը։ Չնայած ազգայնական կուսակցությունների դիմադրությանը, որոնց կարծիքով հայ պրոլետարիատի մասնակցությունը համառուսական հեղափոխական շարժմանը իբր կձախողեր Արևմտյան Հայաստանի ազատագրության գործը, նա զանգվածաբար ու անձնվեր պայքարի նետվեց հանուն սոցիալական ու քաղաքական ազատությունների՝ Ռուսաստանում։ Հայ պրոլետարիատն ինտերնացիոնալ սոցիալ-դեմոկրատիայի դրոշի ներքո սկսեց պայքարել, որպես համառուսական հեղափոխական շարժման մարտական ջոկատներից մեկը։ Այս պայմաններում առավել կարևոր նշանակություն էր ստանում բանվորությանն իր համար հասկանալի լեզվով սոցիալ-դեմոկրատիայի գաղափարներին ծանոթացնելը, բանվորական շարժմանը սոցիալիստական գիտակցականություն հաղորդելը։ ՌՍԴԲԿ Թիֆլիսի և Բաքվի կոմիտեները 1901—1902 թթ. մասամբ կանոնավոր հունի մեջ դրեցին

վրացերեն, հայերեն և ռուսերեն թերթիկների ու թռուցիկների հրատարակությունը: 1901 թ. սեպտեմբերից Թիֆլիսի կոմիտեին հաջողվեց Բաքվում գաղտնի լույս ընծայել վրացերեն առաջին մարքսիստական-լենինյան թերթը՝ «Բրձոլան» (խմբագրում էր Վ. Կեցխովելին, իսկ նրա ձերբակալվելուց հետո՝ Դ. Թոփուրիձեն): Օրակարգում էր հայկական անլեգալ թերթի հրատարակման հարցը: 1902 թ. հունվարի 12-ին ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեն որոշեց «Բրձոլա»-ին զուգահեռ լույս ընծայել հայերեն անլեգալ թերթ:

1902 թ. գարնանը ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեն իր տրամադրության տակ ուներ արդեն զգալի թվով մարքսիստորեն պատրաստված հայ մտավորականներ: Թիֆլիսում էին հեղափոխական շարժումներին մասնակցելու պատճառով Ռիգայից արտաքսված Ստ. Շահումյանը, զինվորական ծառայությունն ավարտած Ա. Զոհրաբյանը, Ա. Խումարյանը, նրանց շուրջն էին համախմբված մի շարք սոցիալ-դեմոկրատներ՝ Ռ. Դաշտոյանը, Ա. Երզնկյանը, Ս. Խանոյանը, Դ. Շահվերդյանը, որոնք պատրաստ էին իրենց ողջ եռանդը ներդնելու հայկական սոցիալ-դեմոկրատական մամուլի ստեղծման գործին:

Նույն թվականի մայիսին, Թիֆլիսում, Ղազարոս Աղայանի գրական ու հասարակական գործունեության 40-ամյակի առթիվ պատրաստած իր հոբելյանական ճառում (որն այնուհետև խմորատիպ բազմացվեց ու անլեգալ տարածվեց) Ստ. Շահումյանը հրապարակորեն առաջ քաշեց անլեգալ գրականություն ու մամուլ ստեղծելու հարցը: «Մեր կարծիքով,— հայտարարեց նա,— ներկա պայմաններում անհնարին է որևէ առաջադիմական հասարակական գործ կատարել խաղաղ, օրինական ճանապարհով, լեգալ գրականության միջոցով» (Ստ. Շահումյան, Երկ. հ. առաջին, 1955, էջ 35):

Պետք է նշել, որ հայերեն սոցիալ-դեմոկրատական թերթ հիմնելու ուղղությամբ տարվող ողջ աշխատանքին իրազեկ էր և դրան մեծապես օժանդակում էր Բ. Կնունյանցը. այդ ժամանակ նա գործում էր Բաքվում, գլխավորում ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեն: Նա պարբերաբար այցելում էր Թիֆլիս, մասնակցում հայկական թերթի ստեղծման հարցերի քննարկմանը: Ստեղծվող թերթի խմբագրական աշխատանքը վարում էին Ստ. Շահումյանը, Ա. Զոհրաբյանը, Բ. Կնունյանցը: Անլեգալ տպարանի կազմակերպումը և թերթի տպագրությունը հանձնարարված էր Ա. Խումարյանին, (նրան օժանդակելու էին Ռ. Դաշտոյանը և Դ. Շահվերդյանը), դրամական միջոցների հայթայթումը՝ Ա. Երզնկյանին:

Գաղտնի տպարան հիմնելու համար տառեր և տպագրական այլ պարագաներ հայթայթելու նպատակով Ա. Խումարյանը, որպես գրաշար, աշխատանքի է մտնում Հ. Մարտիրոսյանի տպարանում: Այնուհետև, նույն նպատակով, նա մեկնում է Բաքու՝ ունենալով իր ձեռքում Ս. Շահումյանի նամակը Բ. Կնունյանցին:

«Բաքվում,— գրում է իր հուշերում Ա. Խումարյանը,— Բոգդան Կնունյանցը մեծ հավանություն տվեց մեր ձեռնարկությանը, աջակցեց ինձ ձեռք բերել անհրաժեշտ պարագաները ու մի նամակ տալով Թիֆլիսի «Կվալի»-ի խմբագիր Դիոնիդ Թոփուրիձեի անունով, խոստացավ շուտով Թիֆլիս գալ ու կապ հաստատել Թիֆլիսի կազմակերպության հետ... Կնունյանցի նամակով ես և Արշակ Զոհրաբյանը Թոփուրիձեի հետ, որ այն ժամանակ վրացերեն անլեգալ «Բրձոլա» թերթի խմբագիրն էր, վճռեցինք կոնտակտ կերպով գործել»[1]:

Մեծ դժվարությունները հաղթահարելով՝ անլեգալ տպարանը կազմակերպվում է: Այդ ընթացքում պատրաստվում է նաև թերթի առաջին համարը: Որոշվում է այն անվանել «Պրոլետարիատ»— օրգան հայ սոցիալ-դեմոկրատների միության:

Պատմական տվյալ ժամանակաշրջանում, երբ հայ իրականության մեջ սոցիալ-դեմոկրատիան, որպես քաղաքական մտքի հոսանք և կազմակերպություն նոր էր մուտք գործում, հայ իսկրայականները ՌՍԴԲԿ Թիֆլիսի և Բաքվի կոմիտեների համաձայնությամբ, հարմար սեպեցին հայերեն առաջին սոցիալ-դեմոկրատական անլեգալ թերթը հրատարակել «հայ սոցիալ-դեմոկրատների միության» անունից, նրանում հռչակել քաղաքական-հասարակական խնդիրների նկատմամբ հայ սոցիալ-դեմոկրատների հայացքները, հայտարարել Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության հետ նրանց գաղափարական լիակատար համերաշխությունը և կազմակերպական միաձուլությունը:

[1] *«Մարտակոչ», № 3, 1924, Ա. Խումարյանի հուշերը:*

*Հայ սոցիալ-դեմոկրատների միության (ՀՍԴՄ), գաղտնի տպարանի, «Պրոլետարիատ» թերթի ստեղծման պատմության մասին տեղեկություններ են հաղորդել իրենց հուշերում Ա. Խումարյանից բացի Ռ. Դաշտոյանը («Խորհրդային Հայաստան», № 105, 1927), Ա. Երզնկյանը (նույն թերթը, № 110, 1927), Ա. Զոհրաբյանը («Տարազ», № 8, 1919):*



Համարում զետեղվում են Հայ սոցիալ-դեմոկրատների միության մանիֆեստը, Սոցիալ-դեմոկրատիա և իրականություն հոդվածը, թղթակցություններ (նամակներ Թիֆլիսից, Բաքվից, Գուրիայից), Ներքին տեսություն, «Իսկրա»-ի № 23-ից արտատպված Բաթումի բանվորների նամակը ՌՍԴԲԿ Պետերբուրգի կոմիտեին և պատասխանը, Դեպի մարտ արձակ բանաստեղծությունը և մի հաղորդում Բաքվից: Բոլոր հոդվածներն ու թղթակցությունները անստորագիր են, բացի արձակ բանաստեղծությունից, որ ստորագրված է «Մրրիկ»: Ա. Խումարյանի հուշերի համաձայն «Մրրիկը» ինքն է: Նույն հուշերում նշված են, որ «Պրոլետարիատ»-ում հոդվածներ ունեն Ստ. Շահումյանը, Ա. Զոհրաբյանը, Բ. Կնունյանցը:

«Պրոլետարիատ»-ը բաղկացած էր 24 էջից: Գաղտնապահության նպատակով թերթերի շարվածքը և տպագրությունը կատարվում էին տարբեր վայրերում: Թերթը հանձն էր առել շարել գրաշար Արտաշես Օհանջանյանը: Տպագրությունը կատարում էին Ա. Խումարյանը, Ռ. Դաշտոյանը և Դ. Շահվերդյանը, նրանց օգնում էին Ստ. Շահումյանի կրտսեր եղբայրը՝ Նիկոն, Ստ. Մուրադյանը, Նինա Ալաջալովան:

«Պրոլետարիատ»-ը լույս տեսավ 1902 թվականի հոկտեմբերի վերջերին: Ճակատին գրված էր սոցիալ-դեմոկրատիայի նշանաբանը՝ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք», մի տող ներքև՝ «Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցություն» մակագրությունը: Թերթի անունից ներքև նշված էր՝ «Օրգան հայ սոցիալ-դեմոկրատների միության», վերջին էջում, գաղտնապահության նպատակով, տպարանի հասցեն ցույց էր տրված՝ Ժնև: Նույն տեղում զետեղված էր հետևյալ ուշագրավ ազդը.

«Թղթակցություններ, հոդվածներ, նամակներ Ռուսիայից խնդրում ենք ուղարկել արտասահմանի Ձեր ծանոթներին, որպեսզի սոքա էլ կրկնակի ծրարով ուղարկեն հետևյալ հասցեով SNW Dietr, Nachf (C. m. в. н.) in Stuttgart), իսկ միջին ծրարի վրա գրել միայն «Իսկրային», «Պրոլետարիատի» համար»:

«Պրոլետարիատը» ըստ հիշողությունների, տպագրվել է 250—270 օրինակ և գաղտնի տարածվել Անդրկովկասում: Դրանից 10 օրինակ Ռ. Դաշտոյանը Շահալի կայարանից փոստային ծանրոցով ուղարկում է Բեռլին՝ Ս. Շահումյանին[1]:

Հայատառ առաջին սոցիալ-դեմոկրատական իսկրայական թերթի երևան գալը մեծ տպավորություն գործեց Անդրկովկասի հեղափոխական շրջանների վրա: Առաջավոր բանվորները ու ինտելիգենցիան այն դիմավորեցին ցնծությամբ: «Պրոլետարիատ»-ի ծնունդը ջերմորեն ողջունեցին ռուս, վրացի և ադրբեջանական սոցիալ-դեմոկրատները: «Բրձոլա» թերթը գրեց.

«Ողջույն Ձեզ, ընկերներ, ողջույն եղբայրական: Շնորհավորում ենք Ձեր նոր օրգանը, որը մեծ ծառայություն պիտի մատուցի մեզ՝ ազատագրական շարժման մեջ» («Բրձոլա», № 4, 1902):

«Պրոլետարիատ»-ն անմիջապես գրավեց Վ. Ի. Լենինի ուշադրությունը: 1903 թ. հունվարի վերջերին, Լոնդոնում, Լենինն ստացավ թերթը և մի հոդված՝ «Իսկրա»-ում զետեղելու համար: Ծանոթանալով նյութերին՝ Իլյիչը վճռեց «Իսկրա»-ի առաջիկա համարում անպայման հոդված տպել «Պրոլետարիատ»-ի մասին: Սակայն գրված հոդվածը նրան չէր բավարարում: Ուստի, հունվարի 28-ին նա Ժնև՝ Գ. Վ. Պլեխանովին ուղարկեց ստացված հոդվածը և «Պրոլետարիատ» թերթը:

«Հայկական «Պրոլետարիատ»-ը (Ռուս. ՍԴԲԿ մակագրությամբ),— գրում էր Վ. Ի. Լենինը,— ես այստեղ արդեն մի քանի օր է ստացել եմ, ինչպես նաև՝ մի ձեռագիր (հոդված նրա մասին), կաշխատեմ զետեղել № 33-ում:

Ուղարկում եմ Ձեզ նաև «Պրոլետարիատ»-ը: Բարի եղեք խնդրել Լալայանցին կամ ուրիշ որևէ մեկին թարգմանելու այստեղից ամբողջովին այն ամենը, ինչ վերաբերում է նացիոնալիզմին ու ֆեդերալիզմին և շուտափույթ ուղարկել ինձ: Հարկավոր է դրանց մասին հոդված զետեղել անպայման (ուղարկված հոդվածն ուղղումների կարիք ունի, իսկ դրա համար հարկավոր է տեքստը) (ПСС, т. 46, стр. 261):

Իր պատասխան նամակում[2] Պլեխանովը

[1] Ռ. Դաշտոյան, *Թռուցիկ հիշողություններ, «Խորհրդային Հայաստան», № 105, 1927: (Շահումյանը 1902 թ. ամռան վերջին մեկնել էր Բեռլին և ընդունվել համալսարանի փիլիսոփայական ֆակուլտետի պետական իրավունքի բաժինը: Նույն թվականի աշնանը «Պրոլետարիատ»-ի հիմնադիրներից Ա. Երզնկյանը նույնպես մեկնել էր արտասահման, Ժնև, ուսանելու):*

[2] *Տե՛ս* Ленинский сборник, т. IV, стр. *211—212:*

նույնպես անհրաժեշտ էր գտնում «Հայկական Bruder organ -ի» (եղբայրական օրգանի) «Պրոլետարիատ»-ի մասին «Իսկրա»-ում հոդված զետեղել, սակայն ուղարկված հոդվածը նրան ևս չէր բավարարում, մանավանդ հոդվածի հեղինակն իր կուսակցական վարքագծով վստահություն չէր ներշնչում նրան: Գ. Վ. Պլեխանովի նամակից կարելի է եզրակացնել, որ «Պրոլետարիատ»-ի մասին հոդվածի հեղինակը Ա. Տեր-Հարությունյանն էր:

Իր նամակում Պլեխանովը «Պրոլետարիատ»-ի գրախոսականի հեղինակի մասին տողատակում նշում է.

«N. B: Նա հավատացնում է, որ Թիֆլիսի շարժումների մասին մեր հրատարակած գրքույկը պատկանում է իրեն»:

Հայտնի է, որ Ա. Տեր-Հարությունյանն է շարունակ պնդել, թե ինքն է 1902 թ. «Իսկրա»-ի կողմից հրատարակված Из Тифлисского рабочего движения գրքույկի հեղինակը (Տե՛ս «Пролетарская революция», № 11, 1924, էջ 270):

Իր նամակում Գ. Վ. Պլեխանովը Լենինին հայտնում է, որ ինքը Ժնևում մարդ կգտնի, որը հոդված կգրի «Պրոլետարիատ»-ի մասին: Բայց դրա կարիքը չեղավ: Ստանալով «Պրոլետարիատ»-ում զետեղված իրեն հետաքրքրող նյութերի ռուսերեն թարգմանությունը, Լենինն անձամբ գրեց Հայ սոցիալ-դեմոկրատների միության մանիֆեստի մասին խորագրով հոդված, որը լույս տեսավ «Իսկրա»-ի, ինչպես և նախատեսված էր, 33-րդ համարում, 1903 թ. փետրվարի սկզբին (Տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 6, էջ 408—412):

Նշելով Կովկասում «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» կիսամյա պրակտիկ գործունեության փաստը, նրա կողմից «Պրոլետարիատ» թերթի լույս ընծայումը, Վ. Ի. Լենինը գրում էր. «Մենք ամբողջ հոգով ողջունում ենք «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» Մանիֆեստը և մանավանդ ազգային հարցին ճիշտ դրվածք տալու նրա ուշագրավ փորձը» (Երկեր, հ. 6, էջ 411):

Համառոտակի շարադրելով, «Պրոլետարիատ»-ում որպես առաջնորդող տպագրված «Հայ սոցիալ-դեմոկրատների միության մանիֆեստ»-ի բովանդակությունը, Վ. Ի. Լենինը, որպես կարևոր միտք, քաղվածաբար բերեց «Մանիֆեստ»-ի այն խոսքերը թե՝

«Մեր «Միությունը» Ռուսիայի ամեն ծայրերում իր ցանցերը լայն տարածող «Ռուսիայի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության» ճյուղերից մեկը լինելով, միանգամայն համերաշխ է նրա հետ և նրա հետ միասին կռվելու է հանուն Ռուսիայի պրոլետարիատի շահերի ընդհանրապես և հայկական մասնավորապես»:

«Պրոլետարիատ»-ը հետևողականորեն պաշտպանում էր բանվորական կուսակցության լենինյան կազմակերպական սկզբունքները, պրոպագանդում բանվորներին (անկախ ազգությունից) մեկ միասնական համառուսաստանյան սոցիալ-դեմոկրատական կուսակցության մեջ համախմբելու գաղափարը:

«Մենք,— ասվում էր մանիֆեստում,— պիտի ձգտենք բոլոր սոցիալիստական տարրերին և զանազան ազգությանց պատկանող բանվորներին իմի ժողովել, մեկ ընդհանուր սոցիալ-դեմոկրատական մարմին կազմակերպել, միապետության դեմ ավելի հաջող մաքառելու համար»:

Հակառակ բեռնշտայնականների և էկոնոմիստների, որոնք դեմ էին սոցիալական հեղափոխությանը և բանվոր դասակարգի գլխավոր խնդիրն էին համարում միայն տնտեսական պայքարը, պայքարը ռեֆորմների համար, «Մանիֆեստը պարզ ու որոշակի հայտարարում էր, որ պրոլետարիատը չի կարող ազատագրվել կապիտալիզմից և կառուցել սոցիալիզմ առանց սոցիալական հեղափոխության ու պրոլետարիատի դիկտատուրայի:

Սոցիալիստական իդեալի իրականացմանը,— ասված էր «Մանիֆեստում»,—«չի կարելի հասնել մեր կարծիքով, ո՛չ բանվոր դասակարգի տնտեսական ինքնագործունեությամբ, և ոչ մասնակի սոցիալական ու քաղաքական ռեֆորմների միջոցով, այլ լոկ արմատական հեղաշրջման— սոցիալական հեղափոխության միջոցով, որի անհրաժեշտ նախաքանը պետք է լինի պրոլետարիատի քաղաքական իշխանություն ձեռք բերելը»:

«Իշխանություն» բառը պետք է հասկանալ «դիկտատուրա» իմաստով, Վ. Ի. Լենինի մոտ բերված այս քաղվածքում «իշխանություն» բառը հենց այդպես էլ թարգմանված է՝ «դիկտատուրա»:

Այսպիսով «Մանիֆեստը» լենինյան հետևողականությամբ անց էր կացնում պրոլետարիատի դիկտատուրայի գաղափարը, որը մարքսիզմի հիմնական բովանդակությունն է կազմում և որի դեմ առաջին հերթին ծառանում էին բոլոր օպորտունիստները, մարքսիզմի բոլոր թշնամիները:

«Պրոլետարիատ»-ը հայ սոցիալ-դեմոկրատիայի մերձավորագույն խնդիրն էր համարում հայ պրոլետարիատի քաղաքական դաստիարակությունը և նրան ամբողջ ռուսաստանյան պրոլետարիատի պայքարին մասնակից դարձնելը, ցարական ինքնակալությունը տապալելու համար:



«Պրոլետարիատ»-ը խոշոր նշանակություն էր տալիս մարքսիստական տեսության հարցերին: Այնտեղ, Լենինի խոսքերով ասած՝ ուշագրավ փորձ էր արվում տալու ազգային հարցի ճիշտ դրվածքը:

Այս տեսակետից, ինչպես նկատում էր Լենինը, «Երկու հիմնական սկզբունք, որոնցով պետք է ղեկավարվեն Ռուսաստանի բոլոր սոցիալ-դեմոկրատներն ազգային հարցում, Միությունը միանգամայն ճիշտ է նշել: Այդ, նախ, ոչ թե ազգային ավտոնոմիայի, այլ քաղաքական ու քաղաքացիական ազատության և լիակատար իրավահավասարության պահանջն է. այդ, երկրորդ, պետության կազմի մեջ մտնող յուրաքանչյուր ազգության ինքնորոշման իրավունքի պահանջն է» (Երկեր, հ. 6, էջ 411):

Ազգային հարցում այս երկու հիմնական սկզբունքները ճիշտ նշելով հանդերձ, Միությունը, այնուամենայնիվ, հանդես էր բերել անհետևողականություն, գտնելով, որ «Մենք անհրաժեշտ ենք համարում ազատ Ռուսաստանում դաշնակցային (ֆեդերատիվ) հասարակապետության կազմակերպությունը»:

Լենինը, քննադատելով «Մանիֆեստ»-ի այդ կետը, գրում էր.

«Հիրավի, կարելի՞ է արդյոք նրանց տեսակետից խոսել ֆեդերատիվ հանրապետության պահանջի մասին. ֆեդերացիան ենթադրում է ավտոնոմ ազգային քաղաքական ամբողջություններ, իսկ Միությունը հրաժարվում է ազգային ավտոնոմիա պահանջելուց: Լիովին հետևողական լինելու համար Միությունը պետք է իր ծրագրից հանի ֆեդերատիվ հանրապետության պահանջը, սահմանափակվելով առհասարակ դեմոկրատական հանրապետության պահանջով: Պրոլետարիատի գործը չէ ֆեդերալիզմ և ազգային ավտոնոմիա քարոզելը, պրոլետարիատի գործը չէ նման պահանջներ առաջադրել, որոնք անխուսափելիորեն հանգում են ավտոնոմ դասակարգային պետություն ստեղծելու պահանջին: Պրոլետարիատի գործն է ավելի սերտորեն համախմբել բոլոր և ամեն տեսակ ազգությունների բանվորների որքան կարելի է ավելի լայն մասսաներին, համախմբել՝ հնարավորին չափ ավելի լայն ասպարեզում պայքարելու համար հանուն դեմոկրատական հանրապետության և հանուն սոցիալիզմի» (Երկեր, հ. 6, էջ 411):

Լենինի այս ցուցումները մեծ նշանակություն ունեցան Անդրկովկասի իսկրայականների գործունեության համար: Նրանք ֆեդերացիայի պահանջը հանեցին իրենց ծրագրից, որպես այդ ժամանակաշրջանի դասակարգային պայքարի պայմաններին անհամապատասխան պահանջ: Անդրկովկասի հեղափոխական սոցիալ-դեմոկրատների համար ղեկավար սկզբունք հանդիսացավ լենինյան ազգային ծրագիրը:

Թեորիական և տակտիկական այս սկզբունքների պրոպագանդայով չի սպառվում առաջին հայկական լենինյան-իսկրայական թերթի բովանդակությունը: Այն իր էջերում քննարկեց հայկական իրականության, ինչպես նաև Ռուսաստանի և Անդրկովկասի բանվորական ու գյուղացիական շարժումներին վերաբերող մի շարք կարևորագույն հարցեր, հրապարակեց ցարական ինքնակալության քաղաքականությունը մերկացնող նյութեր:

Թերթը հետևողական պայքար հայտարարեց բուրժուական-նացիոնալիստական գաղափարախոսությանը, մասնավորապես դաշնակցությանը, որը խոչընդոտներ էր հարուցում հայ բանվորների ու գյուղացիների դասակարգային գիտակցության զարգացման ճանապարհին:

Այսպիսով «Պրոլետարիատ» թերթը գաղափարապես ամբողջովին կանգնած էր լենինյան «Իսկրա»-ի դիրքերում, պրոպագանդում էր նրա սկզբունքները, կոչ անում Անդրկովկասի հայ բանվորությանը՝ կանգնելու համառուսական հեղափոխական սոցիալ-դեմոկրատիայի ընդհանուր դրոշի տակ:

Հայ սոցիալ-դեմոկրատների միության հրապարակումը և նրա անունից «Պրոլետարիատ» թերթի լույսընծայումը նոր էտապ էր հայ ժողովրդի կյանքում, այդ նշանակում է, որ մարքսիզմ-լենինիզմը արմատներ էր ձգել հայ հասարակական մտքի մեջ, դարձել էր հասարակական լուրջ և հարանուն շարժում: Հայ պրոլետարիատը, սոցիալ-դեմոկրատիայի ղեկավարությամբ, ճեղքում էր ազգային մեկուսացման պատնեշը, ձուլվում համայն Ռուսաստանի մարտնչող պրոլետարիատի հզոր բանակի հետ:

Մենք տեսանք, որ հայ սոցիալ-դեմոկրատների միության անունից «Պրոլետարիատ»-ի լույս ընծայումը հեղափոխական մարքսիստները ամենուրեք հրճվանքով ընդունեցին և ջերմորեն ողջունեցին:

«Պրոլետարիատ»-ի հանդեպ այլ դիրք գրավեցին ազգայնական տարրերը: Առաջինը հանդես եկավ Ժնևում 1900 թ. հրատարակվող «Հանդես» ամսագրի խմբագիր Եր. Պալյանը, որը հրեական բունդականների նման պաշտպանում էր ազգային սկզբունքով սոցիալիստական կուսակցությունների կազմակերպման տեսակետը: Ըստ նրա, հայ բանվորները, որտեղ էլ որ նրանք գտնվեն՝ Ռուսաստանում, Թուրքիայում, Պարսկաստանում, Եգիպտոսում, Եվրոպայի երկրներում, ԱՄՆ-ում, պետք է միաձուլվեն և կազմեն մեկ ընդհանուր հայկական առանձին սոցիալիստական կուսակցու-

թյուն: Պալյանը 1903 թվականին Բուլղարիայում (Ռուսչուք քաղաքում) հրատարակեց մի գրքույկ՝ «Հայ սոցիալ-դեմոկրատ միությունը» և իր «Պրոլետարիատ» օրգանը» վերնագրով, որի մեջ հարձակումներ գործեց ՀՍԴՄ մանիֆեստի դեմ, հատկապես նրա կողմից պաշտպանվող սոցիալ-դեմոկրատական կուսակցության կառուցման ինտերնացիոնալ սկզբունքի դեմ: Առարկելով մանիֆեստին՝ Ե. Պալյանը շարունակում էր պնդել զուտ հայկական սոցիալ-դեմոկրատական կուսակցության կազմակերպման մասին իր փայփայած նացիոնալիստական, ուտոպիստական տեսակետը:

Ե. Պալյանը մեղադրում էր ՀՍԴՄ մանիֆեստը նաև այն «մեղքի» համար, որ նա պաշտպանում էր ազգերի ինքնորոշման իրավունքի վերաբերյալ «Իսկրա»-ի ծրագրային դրույթը:

Հայ սոցիալ-դեմոկրատների միությանը և նրա «Պրոլետարիատ» թերթին հետագայում շատ անգամ անդրադարձան «Բունդը» և հայ բունդականները («Սպեցիֆիկները»): Սրանք, սակայն, ի տարբերություն բունդական Ե. Պալյանի, աշխատում էին քողարկել ՀՍԴՄ մանիֆեստի այն կետը, որը մերժում էր սոցիալ-դեմոկրատիայի՝ ըստ ազգությունների կազմակերպման սկզբունքը, և պաշտպանում իրենց ֆեդերալիստական տեսակետը «Իսկրա»-ի գովասանքին արժանացած «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» փաստը վկայակոչելով: Հայ բունդականները հասան մինչև այնտեղ, որ հայտարարեցին, թե իբր հայկական ինքնուրույն բանվորական կազմակերպության անհրաժեշտության գաղափարը առաջինը հուշել է «Պրոլետարիատ» թերթը և որ «Սոցիալ-դեմոկրատական բանվորական հայ կազմակերպության» ծագումն սկսվում է այդ ժամանակաշրջանից (տե՛ս «Вестник Бунда», № 3, 1904):

Ինչպես տեսնում ենք, Ե. Պալյանը ճիշտ էր հասկացել հայ սոցիալ-դեմոկրատների միության մանիֆեստի իմաստը, ուստի և խստորեն հարձակվել էր նրա վրա, իսկ բունդի հայ նոր դաշնակիցները միտումնավոր կերպով աղավաղում էին ՀՍԴՄ մանիֆեստի ոգին՝ իրենց նացիոնալիզմը և սեպարատիզմն արդարացնելու համար:

Իրականում հայ իսկրայականները 1902 թվականին, ձեռնարկելով «Պրոլետարիատ» թերթի հրատարակությունը և այն անվանելով Հայ սոցիալ-դեմոկրատների միության օրգան, բնավ էլ նպատակ չունեին անջատ հայկական բանվորական կազմակերպություն ստեղծել: Ահա թե ինչու ՌՍԴԲԿ II համագումարում, երբ բունդականները ուզում էին կուսակցության վզին փաթաթել ՌՍԴԲԿ կառուցման իրենց ազգային ֆեդերատիվ սկզբունքը և այդ արդարացնելու համար վկայակոչում էին «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» գոյությունը, նրանց դեմ վճռականորեն հանդես եկան համագումարի պատգամավորներ Բ. Կնունյանցը, Ա. Զուրաբյանը և Դ. Թոփուրիձեն: Արշակ Զուրաբյանը (Բեկով), համագումարում պատասխանելով բունդական Լիբերին հայտարարեց. «Ի միջի այլոց պետք է ասեմ, որ «Հայ սոցիալ-դեմոկրատների միություն» գոյություն չի ունեցել և չունի: Դա միայն ցուցանակ էր» (Второй съезд РСДРП, протоколы, М., 1959, стр. 79):

Այս նույնը նա գրեց 1904 թվականին «Իսկրա»-ում՝ «Բունդի նոր դաշնակիցները» հոդվածում («Искра», № 72. 1904):

Որ «Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը» միտում չուներ վերածվելու Կովկասում հայկական ինքնուրույն կազմակերպության, ցույց է տալիս և այն փաստը, որ նրա անունը «Պրոլետարիատ»-ի առաջին համարը լույս տեսնելուց հետո, ոչ մի պաշտոնական փաստաթղթում չհիշատակվեց այլևս:

Սովետահայ պատմագիտության մեջ Հայ սոցիալ-դեմոկրատների միության և ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեի փոխադարձ կապի ու հարաբերությունների հարցում կան տարակարծություններ: Որոշ պատմաբաններ գտնում են, թե «Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը» ՌՍԴԲԿ-ի մեջ մտնող, առանձին, ինքնուրույն կազմակերպություն էր և լոկ փոխադարձ կապի մեջ էր ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեի հետ: Այսպես՝ Կ. Ս. Մամիկոնյանը Հայ սոցիալ-դեմոկրատների միության մասին իր արժեքավոր գրքույկում[1] առարկում է պատմաբանների այն տեսակետին, թե ՀՍԴՄ-ն ստեղծվել է Թիֆլիսի կոմիտեի գիտությամբ, գործել է նրան կից և 1902 թ. վերջին ձուլվել նրա մեջ: Նա գտնում է, որ «Իսկրա»-ի 1903 թ. հունվարի 15-ի № 32-ում տպագրված Գործադուլները Թիֆլիսում թղթակցության մեջ ասված այն խոսքերը, թե «դերձակների գործադուլը ղեկավարում էին կուսակցական կոմիտեն և կոմիտեի մեջ ավելի ուշ մտած հայկական սոցիալ-դեմոկրատների խումբը» հիմք չի տալիս պնդելու, թե մի ամբողջ համակովկասյան միություն կարող է ձուլվել մի կոմիտեի մեջ: «Իսկրա»-ում խոսքը Թիֆլիսի խմբի մասին է, որից Թիֆլիսի կոմիտեի մեջ է մտել Ա. Զուրաբյանը (տե՛ս վերոհիշյալ աշխատությունը, էջ 122—

[1] *Կ. Մամիկոնյան, Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը, 1902—1903, Երևան 1969:*



123): Կ. Մամիկոնյանի կարծիքով, ՀՍԴՄ-ը կարող էր միաձուլվել ոչ թե Թիֆլիսի կոմիտեի հետ, այլ միայն կովկասյան միության մեջ: Իր կարծիքը հիմնավորելու համար նա բերում է նաև հետևյալ պատճառաբանությունը. եթե ՀՍԴՄ-ը ձուլված լիներ ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեի հետ, Վ. Ի. Լենինը 1903 թվականի փետրվարի սկզբին հանդես չէր գա «Իսկրա»-ում հոդվածով, հայտնելով կուսակցությանը, որ Կովկասում երևան է եկել մի նոր սոցիալ-դեմոկրատական կազմակերպություն՝ «Հայ սոցիալ-դեմոկրատների միություն», որն ավելի քան կես տարի է, ինչ սկսել է իր պրակտիկ գործունեությունը, Լենինը չէր ողջունի մի կազմակերպության, որը հինգ ամիս առաջ դադարել էր գոյություն ունենալուց, ձուլվելով մեկ ուրիշ[1] կազմակերպության մեջ:

Կ. Մամիկոնյանի փաստարկումները մեր կարծիքով, բավարար չեն հերքելու այն, որ իրոք ՀՍԴՄ-ը ստեղծվել է ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեի գիտությամբ ու համաձայնությամբ, գործել նրա հետ սերտորեն կապված և 1902 թ. աշնանը «ձուլվել է» նրա մեջ, կազմել նրա բաղկացուցիչ մասը: Այս հաստատվում է հետևյալ փաստերով.

1. Հայ սոցիալ-դեմոկրատների խմբի («միության») մեջ մտնող գործիչները ՌՍԴԲԿ անդամներ էին, հիմնականում գործում էին Թիֆլիսում և նրանց վերադաս կուսակցական օրգանը՝ ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեն էր: «Միության» գործունեությանն ակտիվ մասնակցում էր Բ. Կնունյանցը, որը ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեի անդամ էր: Հետևապես ՀՍԴՄ-ը կուսակցության կողմից պաշտոնապես ճանաչված, Թիֆլիսի կոմիտեից անկախ, ուրիշ կազմակերպություն չէր կարող լինել: Դա կհակասեր հենց իր, միության մանիֆեստի ոգուն, որը կտրականապես ժխտում էր առանձին հայկական սոցիալ-դեմոկրատական կազմակերպության գոյության միտքը: Հայ սոցիալ-դեմոկրատների խումբը ՌՍԴԲԿ Թիֆլիսի, ինչպես նաև Բաքվի կոմիտեների գիտությամբ և օժանդակությամբ կազմվեց ՌՍԴԲԿ գաղափարների հայերեն պրոպագանդման, գլխավորապես մամուլ ու գրականություն ստեղծելու համար:

2. Պատահական չէ, որ «Իսկրա»-ի 1903 թ. № 32-ում տպագրված Թիֆլիսից ուղարկված թղթակցության մեջ ասված էր, որ 1902 թ. սեպտեմբերին դերձակների գործադուլը ղեկավարում էին կուսակցության կոմիտեն և կոմիտեի մեջ ավելի ուշ մտած հայկական սոցիալ-դեմոկրատական խումբը: Անշուշտ «Խումբը» դա հայ սոցիալ-դեմոկրատների միությունն էր, և ոչ այլ բան: Ի դեպ Ա. Զուրաբյանը, Ա. Խումարյանը, Ա. Երզնկյանը, Ռ. Դաշտոյանը, Ս. Խանոյանը իրենց հիշողություններում, որոնց մասին մենք վերն ակնարկեցինք, խուսափում են «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» անունից, գործածում են միայն «Պրոլետարիատի խումբ», «Հայ իսկրայականների խումբ» անունները: Դա պատահական չէ:

Ն. Կ. Կրուպսկայան իր նամակներից մեկում նույնպես գրել է, որ «Թիֆլիսյան հայկական խումբը Թիֆլիսի կոմիտեի մեջ է մտել և նրա բաժինն է»[1]:

Ց. Ա. Խումարյանը մեզ հետաքրքրող հարցի մասին իր Անցած օրերից թռուցիկ հիշողություններում գրել է. «Պետք է այստեղ նկատեմ, որ հենց «Պրոլետարիատ»-ը լույս տեսավ, մեր խմբագրության կողմից Արշակը (Զուրաբյանի մասին է խոսքը— Վ. Ա.) մտավ Թիֆլիսի կոմիտեի մեջ ու նրա ամենաառանդուն անդամներից մեկն էր» («Մարտակոչ», № 3, 1924):

3. Ա. Զուրաբյանը գրել է. «1902 թ. նոյեմբերին լույս տեսավ «Պրոլետարիատ»-ի առաջին համարը: ...Այդ համարից հետո թերթը դառնում է ՌՍԴԲԿ Թիֆլիսի կազմակերպության պաշտոնական օրգանը» («Կայծ» (Կ. Պոլիս), 1913, 12 հունիսի):

Ավելի վաղ, 1904 թ., պատասխանելով բունդի հայ դաշնակիցներին, որոնք պնդում էին, թե իբր սոցիալ-դեմոկրատական բանվորական հայ կազմակերպության անհրաժեշտության մասին տեսակետը տակավին 1902 թ. հուշել էր «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» օրգան «Պրոլետարիատ»-ը, Զուրաբյանը «Իսկրա»-ում գրել է.

«Ես, որպես այդ գործերին անմիջականորեն մասնակցած անձ, կտրականապես հայտարարում եմ, որ այդ բոլորը լոկ բունդի դաշնակիցների հնարանքն է: Հայ սոցիալ-դեմոկրատների ոչ մի միություն երբեք գոյություն չի ունեցել, հետևապես նա ոչ մի թերթ չէր կարող հրատարակել և «Պրոլետարիատ»-ի առաջին համարներում ոչ մի նման բան չի «հուշվել»: Գործը հետևյալումն է. 1902 թվականի աշնանը կուսակցության Թիֆլիսի կոմիտեն որոշեց վերսկսել տպալումների հետևանքով ընդհատված վրացական սոց. դեմ. «Բրձոլա» (կռիվ) թերթի հրատարակությունը և սկսել նման թերթի հրատարակությունը նաև հայերեն լեզվով: Ընտրվեց ընդհանուր խմբագրություն, որը և լույս ընծայեց երկու հրատարակությունները, ընդ որում զուտ պատահական պատճառով ա-

[1] *Ընդգծումն իմն է (Վ. Ա.):*

[1] *ՄԼԻ ԿԿԱ., ֆ. 29, ց. 1, գ. 57, թ. 4 (Քաղվածքը բերում ենք Կ. Մամիկոնյանի գրքույկից, էջ 123):*

նունները տարբեր եղան՝ վրացերեն «Բրձոլա», հայերեն «Պրոլետարիատ»: Հայ ընկերները, որոշ ագիտացիոն նկատառումներով գերադասեցին լույս ընծայել հայ սոցիալ-դեմոկրատական թերթի առաջին համարը «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» անունից: Թեպետ և նման միություն գոյություն էլ չուներ. ինքնըստինքյան հասկանալի է, որ կուսակցության կոմիտեի թերթում չէր կարող «հուշվել» կազմակերպչական առանձնացածություն: Ահա թե ինչ էր գրված թերթում այդ հարցի մասին. «Ինչ վերաբերում է Կովկասին, ապա նկատի ունենալով նրա բնակչության ծայրահեղ բազմացեղությունը, մենք պետք է ձգտենք միավորելու տեղական բոլոր սոցիալիստական տարրերին և տարբեր ազգություններին պատկանող բոլոր բանվորներին, մենք պետք է ձըգտենք ստեղծելու միասնական, ամրակուռ սոցիալ-դեմոկրատական կազմակերպություններ, — ինքնակալության դեմ ավելի հաջող պայքար մղելու համար» («Իսկրա», № 33): Սրանից հետո ասել, թե «Պրոլետարիատ»-ում «հուշվում էր» հայկական սեպարատ կազմակերպություն ստեղծել, չի՞ նշանակում արդյոք գիտակցորեն ոչ ճիշտ բան ասել» («Искра», № 72, 1904):

Մենք կարծում ենք, որ Ա. Զոհրաբյանը, որը լավատեղյակ էր «Պրոլետարիատ»-ի հրատարակման հետ կապված անց ու դարձերին, չէր կարող այն սխալ վերարտադրել[1]: Ճիշտ է, Ա. Զոհրաբյանի սույն հոդվածը լույս է տեսել մենշևիկյան «Իսկրա»-ում, բայց, կարծում ենք, որ այդ հանգամանքը տվյալ հոդվածի վրա չի կարող անդրադարձած լինել այն աստիճան, որ մենք ժխտենք նրանում նկարագրված եղելությունների իսկությունը, ինչպես այդ անում են որոշ պատմաբաններ:

Ա. Զոհրաբյանի այստեղ բերված այն միտքը, թե «Պրոլետարիատ»-ի և «Բրձոլա»-ի համար ընտրվեց ընդհանուր խմբագրություն, հաստատվում է նաև Ա. Խումարյանի հիշողություններով, ուր նա գրում է, թե «Կնունյանցի նամակով ես ու Արշակ Զոհրաբյանը Թոփուրիձեի հետ, որ այն ժամանակ վրացերեն անլեգալ «Բրձոլա» թերթի խմբագիրն էր, վճռեցինք կոնտակտ կերպով գործել»: Մենք մեր թերթի անունը դրինք «Պրոլետարիատ» և տակն էլ «Օրգան հայ սոցիալ-դեմոկրատների միության», իհարկե նկատին ունենալով մեր կուսակցության լոզունգը և անունը:— Պետք է այստեղ շեշտեմ, որ «Բրձոլա»-ն ևս, որ մինչ այդ ոչ մի ցուցանակ չուներ, իր № 5-ին ավելացրեց «Օրգան վրաց սոցիալ-դեմոկրատների միության» (Մարտակոչ, № 3, 1924: Պետք է լինի ոչ թե «Բրձոլա»-ի № 5, այլ № 4-ը, որը լույս տեսավ 1902 թ. դեկտեմբերին, որպես «վրաց սոցիալ-դեմոկրատների միության» օրգան):

Ն. Ցխակայան նույնպես Կովկասյան միության մասին ՌՍԴԲԿ III համագումարին ներկայացրած իր զեկուցման մեջ նշել է, որ վրացական «Բրձոլա»-ն (№ 4) և հայկական «Պրոլետարիատ»-ը (№ 1) հրատարակվում էին Թիֆլիսի կոմիտեին առընթեր (տե՛ս Третий съезд РСДРП, протоколы, М., 1959, стр. 607):

4. Վերջապես չի կարելի անտեսել մի հանգամանք ևս: «Պրոլետարիատ» թերթի ճակատի ձախ անկյունում, վերնագրի կողքին դրոշմված է ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեի կնիքը: Այն դըրվում էր բոլոր այն հրատարակությունների վրա, որոնք լույս էին ընծայվում Թիֆլիսի կոմիտեի կողմից:

Այս բոլոր փաստերը չե՞ն ասում արդյոք այն մասին, որ Թիֆլիսում գործող հայ իսկրայականների խումբը, «Հայ սոցիալ-դեմոկրատների միություն» անունը որդեգրեց «Պրոլետարիատ» թերթի առաջին համարի լույսընծայման ժամանակ, որից հետո, երբ նա իր, որպես հայ սոցիալ-դեմոկրատների, սկզբունքները հայտարարեց, կարիք չուներ այլևս, «Հայ սոցիալ-դեմոկրատների միություն» ցուցանակը պահպանելու, նա «ձուլվեց» Թիֆլիսի ընդհանուր սոցիալ-դեմոկրատական կազմակերպության մեջ: Չէ՛ որ ՀՍԴՄ մանիֆեստն ինքը, ինչպես տեսանք, հրապարակավ մերժում էր ազգային ինքնուրույն սոցիալ-դեմոկրատական կազմակերպության անհրաժեշտությունը, համարելով այն պրոլետարիատի պայքարի համար վնասակար ձեռնարկում:

Ինչ վերաբերում է այն հարցին, թե ինչո՞ւ Վ. Ի. Լենինը «Իսկրա»-ում ողջունել է հայ սոցիալ-դեմոկրատների միությունը և նրա մանիֆեստը, եթե նա ձուլված է եղել Թիֆլիսի կոմիտեի մեջ, ապա դա մեր կարծիքով, տրամաբանական է: Նախ՝ իրոք եղել է հայ իսկրայականների խումբ և նա հրատարակել է «Պրոլետարիատ» թերթը, որի առաջնորդողում՝ «Հայ սոցիալ-դեմոկրատների միության մանիֆեստում» նա հայտարարել էր իր «կրեդոն»: Իրոք այդ խումբը կազմավորվել էր 1902 թ. գարնան վերջին—ամառվա սկզբին, այսինքն՝ «Իսկրա»-ում Վ. Ի. Լենինի հոդվածը լույս տեսնելու ժամանակ ունեցել է մոտ կես տարվա «պրակտիկ գործունեություն», որի արդյունքը հանդիսացավ «Պրոլետարիատ»-ի՝ հայերեն առաջին մարքսիստական թերթի, լույսընծայումը: Եվ, վերջապես, Վ. Ի. Լենինին ամենից շատ հետաքրքրեց հայ սոցիալ-դեմոկրատների մանիֆեստը, հայ ընկերների տեսակետը ազգային հարցի վերաբերյալ:

1903 թ. փետրվարի սկզբին, երբ Վ. Ի. Լենինը «Իսկրա»-ում տպեց Հայ սոցիալ-դեմոկրատների մանիֆեստի մասին իր հոդվածը, չէր կարելի գուշակել, որ հուլիսին ՌՍԴԲԿ II համագումարում և այնուհետև 1904 թ., բունդականները կկառչեն «Հայ սոցիալ-դեմոկրատների միություն» անունից՝ իրենց կազմակերպչական նացիոնալիզմը պաշտպանելու համար, իմանալով հանդերձ, որ «Պրոլետարիատ»-ը երբեք նման միտում չի ունեցել:

Երբ ակնհայտ դարձավ, որ բունդականները, հասարակությանը թյուրիմացության մեջ գցելու նպատակով, նենգափոխում են Հայ սոցիալ-դեմոկրատների մանիֆեստի էությունը, «Պրոլետարիատ»-ի հիմնադիրները անհրաժեշտ համարեցին ասել ճշմարտությունը, հակահարված տալ բունդական կեղծարարներին:

Այսպիսով՝ Հայ սոցիալ-դեմոկրատների միության և նրա օրգանի հրատարակությունը ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեից անջատելը չի համապատասխանում պատմական իրականությանը: Թե՛ «Պրոլետարիատ»-ի և թե «Բրձոլա»-ի հրատարակիչը Թիֆլիսի կոմիտեն էր, թեև նրանց վրա նշված էր «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» և «վրաց սոցիալ-դեմոկրատների միության» օրգան:

Այդուհանդերձ երկու թերթերն էլ իրականում լույս էին ընծայվում ամբողջ Կովկասի հայ և վրացի սոցիալ-դեմոկրատների համատեղ ջանքերով, նրանց աշխատակցությամբ: Հիշյալ թերթերը լուսաբանում էին, ո՛չ միայն Թիֆլիսի, այլև համակովկասյան բանվորական շարժման և սոցիալ-դեմոկրատիայի գործունեության կենսական հարցերը: Այս չափով «Բրձոլա»-ն և «Պրոլետարիատ»-ը կարելի է վրաց կամ հայ սոցիալ-դեմոկրատների «միությունների» թերթեր համարել: Իհարկե ՌՍԴԲԿ Թիֆլիսի, Բաքվի կամ մի այլ տեղական կոմիտե զատ-զատ չէր կարող և ի վիճակի չէր հանձն առնելու և ապահովելու ամբողջ Կովկասի բանվորական շարժման կազմակերպչական ու գաղափարական ղեկավարությունը, որին կոչված էին ծառայելու «Բրձոլա»-ն և «Պրոլետարիատ»-ը համատեղ: Առավել ևս դա չէին կարող իրականացնել այնպիսի կազմակերպություններ, որոնք կառուցված լինեին ազգային սկզբունքով, ինչպես ենթադրենք, հայ, վրաց, կամ ադրբեջանական սոցիալ-դեմոկրատների միությունների ձևով: Համակովկասյան բանվորական շարժումը և միջազգայնորեն կազմակերպված սոցիալ-դեմոկրատիան կարող էր գլխավորել միայն ՌՍԴԲԿ Կենտկոմի ղեկավարությամբ գործող համակովկասյան սոցիալ-դեմոկրատական միությունը: Հենց այդ հարցն էլ 1902 թ. աշնանից, «Պրոլետարիատ»-ի առաջին և «Բրձոլա»-ի չորրորդ համարի լույսընծայման շրջանում, ծառացավ Անդրկովկասի սոցիալ-դեմոկրատների առաջ:

Ահա թե ինչ է գրել Բ. Կնունյանցը ՌՍԴԲԿ II համագումարին ներկայացրած Բաքվի կոմիտեի զեկուցման մեջ:

«Մեր առօրյա աշխատանքներում հաճախ դիմում էինք Թիֆլիսի կոմիտեի աջակցությանը, փոխանակում լույս տեսած գրականությունը (թերթիկներ, թռուցիկներ), Ռուսաստանից ստացվող հրատարակությունները, հայթայթում նյութեր տեխնիկական մասը գործադրելու համար, վերջապես բանակցում բողոքի բացահայտ գործողություններ կազմակերպելու մասին: Մեզ միմյանց հետ կապում էր տեղական անլեգալ գրականության և մամուլի շուտափույթ հրատարակման ընդհանուր հոգսը և այդ հասունացած կարիքը բավարարելու համար ծագեց այդ ընդհանուր ֆունկցիաները կատարելու ընդունակ կենտրոնական հաստատություն կազմակերպելու գաղափարը»[1]:

Նույն կերպ է պատճառաբանում Կովկասյան միության ստեղծման գաղափարը ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեն: Իր 1903 թ. մայիսյան կոչում, նշելով, որ բանվոր դասակարգն արթնացել է պայքարի և ուզում է լսել սոցիալ-դեմոկրատների ճշմարտալից խոսքը, նա գրում էր. «Բանվորների մեջ գիտակցություն մտցնելու համար գործ դրած միջոցներից առաջին տեղը բռնեց ագիտացիոն գրականությունը: Հարկավոր են թերթիկներ, թռուցիկներ, հայտնի է, որ հարկավոր է ունենալ սեփական տըպարան, մի տեղից մյուսը գրականությունը տեղափոխել և այլ շատ բաներ:

...Այս գործը կարգի բերելու, ամուր հիմքերի վրա դնելու և Կովկասի սոցիալ-դեմոկրատական կոմիտեների գործունեությունը միաց-

[1] *Խ. Բարսեղյանը* Մարքսիզմի տարածումը Հայաստանում *գրքում սխալմամբ, «Իսկրա»-ի № 72-ում տպված Ա. Զոհրաբյանի (Б-ի) հոդվածը վերագրում է Բ. Կնունյանցին, որն այդ ժամանակաշրջանում բանտարկված էր Մոսկվայում, բացի այդ նույն աշխատության մեջ 317 էջում նա գովատում է «Կնունյանցի» այդ հոդվածը, որպես կայուն իսկրայականի, իսկ 318 էջում որակում այն որպես մենշևիկյան հոդված: Մինչդեռ «Իսկրա»-ն տպել է միայն մեկ հոդված № 72-ում, Ա. Զոհրաբյանի (Б.-ի հոդվածը, որը չի կարելի համարել մենշևիկյան:*

[1] Второй съезд РСДРП, протоколы, стр. *520:*

նելու համար հարկավոր եղավ ստեղծել մեզ մոտ Կովկասում մի առանձին միության կազմակերպություն»[1]:

1903 թ. հունվարին ՌՍԴԲԿ Թիֆլիսի, Բաքվի կոմիտեների, ինչպես նաև «Բրձոլա» և «Պրոլետարիատ» խմբագրությունների ներկայացուցիչները հավաքվելով Թիֆլիսում խորհրդակցության, որոշում ընդունեցին Կովկասյան միություն կազմելու համար առաջիկայում հրավիրել տեղական սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների համագումար: Խորհրդակցությունը «Բրձոլա» և «Պրոլետարիատ» թերթերի խմբագրություններին կից հիմնեց կովկասյան ս.դ. կազմակերպությունների առաջին համագումարի հրավիրման բյուրո: 1903 թ. մարտի 20-ի շրջանում Թիֆլիսում անլեգալ հրավիրված կովկասյան սոց. դեմ. կազմակերպությունների առաջին համագումարը հիմք դրեց ՌՍԴԲԿ Կովկասյան միության, ընտրեց կովկասյան միութենական կոմիտե և որոշեց հայկական «Պրոլետարիատ»-ն ու վրացական «Բրձոլա»-ն միացնել և այնուհետև հրատարակել. որպես կովկասյան միության օրգան՝ «Պրոլետարիատի կռիվը» անունով հայերեն, վրացերեն և ռուսերեն թերթ:

Այսպիսով վրացական «Բրձոլա»-ն և հայկական «Պրոլետարիատ»-ը դարձան Անդրկովկասի բոլշևիկների մարտական օրգանի՝ «Պրոլետարիատի Բրձոլա», «Պրոլետարիատի կռիվը», «Բորբա պրոլետարիատա» հռչակավոր թերթերի սկիզբը: Այդ սկզբունքով էլ սկսվեց համարակալվել «Պրոլետարիատի կռիվը» վրացերեն՝ 5-րդ համարով, հայերեն՝ 2-րդ համարով և ռուսերեն՝ 1-ին համարով, «Բրձոլա»-ի և «Պրոլետարիատ»-ի լույս տեսած համարների համապատասխան:

Այսպես ծնունդ առավ և սկսվեց հայ մարքսիստական-լենինյան պարբերական մամուլի տարեգրությունը, որի առաջին ողջունողը և քարի երթ մաղթողը կոմունիստական կուսակցության հիմնադիր, պրոլետարիատի հանճարեղ առաջնորդ և ուսուցիչ՝ Վ. Ի. Լենինն էր:

[1] *Ռևոլյուցիոն կոչեր և թռուցիկներ, Երևան, 1960, էջ 25:*

## ПЕРВАЯ АРМЯНСКАЯ МАРКСИСТСКО-ЛЕНИНСКАЯ ГАЗЕТА

В. А. Аветисян


**(Резюме)**

Статья посвящена 70-летию со дня выхода газеты «Пролетариат». В ней освещается деятельность армянских марксистов-ленинцев, Тифлисского и Бакинского комитетов РСДРП по организации подпольной типографии и изданию в Тифлисе в октябре 1902 г. на армянском языке газеты «Пролетариат» — органа «Союза армянских социал-демократов».

Газета «Пролетариат» и в частности ее передовая статья: «Манифест Союза армянских социал-демократов» были проникнуты идеями ленинской «Искры». Получив первый номер «Пролетариата», В. И. Ленин опубликовал в № 33 «Искры» статью под заглавием «О Манифесте «Союза армянских социал-демократов» (см. Полн. собр. соч., т. 7, стр. 104), в которой писал: «Мы от души приветствуем Манифест «Союза армянских социал-демократов» и особенно замечательную попытку его дать правильную постановку по национальному вопросу».

В статье подробно излагается содержание газеты, освещается ее роль в пропаганде ленинско-искровских идей в Армении, в сплочении трудящихся под интернационалистическим знаменем РСДРП.




# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԶԻՆՎՈՐԸ

(ՀՈՎՀԱՆՆԵՍ ՍԱՐՈՒԽԱՆՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 90-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

Հովհաննես Սարգսի Սարուխանյանը լենինյան տիպի հեղափոխականների անձնուրաց գվարդիայի ներկայացուցիչներից է, Անդրկովկասի հեղափոխական շարժումների ականավոր կազմակերպիչներից ու ղեկավարներից մեկը: Հայ ազատագրական շարժման նորագույն ժամանակաշրջանի նշանավոր դեմքերից է նա, Հայաստանում մարքսիզմի տարածման, սոցիալ-դեմոկրատական շարժման ոգեշնչողներից ու հին հասարակության սոցիալիստական վերափոխման ռահվիրաներից: Քսաներորդ հարյուրամյակի սկզբներին, դառնալով Վ. Ի. Լենինի մեծ բանակի զինվորը, Սարուխանյանը մինչև կյանքի վերջը հավատարիմ մնաց լենինիզմի անմահ գաղափարներին ու անձնվիրաբար ծառայեց մարդկությանը կապիտալի լծից ազատագրելու պայքարին, սոցիալիզմի ու կոմունիզմի հաղթանակի մեծ գործին: Անցյալ դարի վերջերին, տակավին պատանի, նա նետվեց հեղափոխական պայքարի մեջ:



Սարուխանյանը ծնվել է 1882 թվականի սեպտեմբերի 5-ին (օգոստոսի 24-ին), Երևանի նահանգի Նոր Բայազետ (Կամո) քաղաքում, աշխատավորական ընտանիքում: Դեռ ուսման տարիներին դրսևորվում են նրա արտակարգ ընդունակությունները, մարդկային լավագույն հատկանիշները, ուսումնատենչությունը, աշխատասիրությունն ու սերը աշխատավոր մարդու նկատմամբ, անհողդողդ սկզբունքայնությունը, ամուր կամքն ու հետևողականությունը, նպատակին հասնելու բուռն ձգտումը:

Անցյալ հարյուրամյակի վերջերին Երևանի նահանգում կային զգալի թվով աքսորյալ սոցիալ-դեմոկրատներ, որոնք իրենց հետ բերած մարքսիստական արգելված գրականությունը տարածում ու պրոպագանդում էին՝ տեղի հեղափոխականորեն տրամադրված երիտասարդության օգնությամբ: Երևանի ուսուցչական սեմինարիայում սովորելու տարիներին Սարուխանյանն առաջին անգամ ծանոթանում է ռուսական հեղափոխական գրականությանը, սկսում ուսումնասիրել մարքսիզմի կլասիկների որոշ երկեր: Մազրայում ուսուցչական աշխատանքի չորս տարիների ընթացքում նա, միաժամանակ, ուսումնասիրում էր մարքսիզմը, հեղափոխական աշխատանք ծավալում տեղի և շրջակա գյուղերի աշխատավորության շրջա-

նաև գավառի զինվորական կայազորներում:

1919 թ. վերջերին և 1920 թ. սկզբներին, ինչպես ողջ Անդրկովկասում ու Հայաստանում, այնպես էլ Նոր Բայազետի գավառում, ավելի աշխուժացավ բոլշևիկյան կազմակերպությունների գործունեությունը. սկսվեց հեղափոխական շարժումների նոր վերելք: ՌԿ(բ)Կ Նոր Բայազետի կազմակերպությունը, Հ. Սարուխանյանի ղեկավարությամբ, սերտորեն կապվեց ՌԿ(բ)Կ Հայաստանի կոմիտեի (Արմենկոմ) հետ: 1919 թ. վերջերին Նոր Բայազետ եկավ Արմենկոմի անդամ Ղուկաս Ղուկասյանը. Հ. Սարուխանյանի, Բ. Բատիկյանի հետ միասին, տեղի «երիտասարդական միության» բազայի վրա, նա ստեղծեց Նոր Բայազետի կոմունիստական երիտասարդական «Սպարտակ» կազմակերպությունը: Նույն թվականի վերջերին տեղի ունեցավ Նոր Բայազետի բոլշևիկյան կազմակերպությունների առաջին կոնֆերանսը, որտեղ Սարուխանյանը հանրագումարի բերեց գավառի կոմունիստական կազմակերպությունների գործունեության արդյունքները և ձևակերպեց նրանց հերթական անելիքների ծրագիրը: Այստեղ էլ նա ընտրվեց ՌԿ(բ)Կ Նոր Բայազետի գավառային կոմիտեի քարտուղար և Հայաստանի բոլշևիկների I կոնֆերանսի պատգամավոր:

Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների I կոնֆերանսում (1920 թ. հունվար) Հ. Սարուխանյանը մի քանի անգամ ելույթ ունեցավ քննարկվող հարցերի շուրջ և զեկուցեց ՌԿ(բ)Կ Նոր Բայազետի քաղաքային ու գավառային կազմակերպության գործունեության ու առաջիկա խնդիրների մասին: Անդրադառնալով դաշնակցական Հայաստանի ներքին ու արտաքին դրությանը, բացահայտելով դաշնակների ապիկար և հակաժողովրդական քաղաքականության աղետալի հետևանքները՝ Հ. Սարուխանյանը պաշտպանեց Հայաստանում զինված ապստամբության ճանապարհով դաշնակների արյունալի ռեժիմը տապալելու և Սովետական իշխանություն հաստատելու մասին կոնֆերանսում առաջ քաշված առաջարկը: Այստեղ նա առաջադրվեց ՌԿ(բ)Կ Հայաստանի կոմիտեի (Արմենկոմի) կազմում:

ՌԿ(բ)Կ Կովկասյան երկրային կոմիտեն, 1920 թ. մարտին, Կովկասի աշխատավորության կողմից օգնություն խնդրեց ՌՍՖՍՀ կառավարությունից երկրամասում սովետական կարգեր հաստատելու նպատակով և բոլշևիկյան կազմակերպություններին ցուցում տրվեց նախապատրաստվել զինված ապստամբության: ՌԿ(բ)Կ Նոր Բայազետի կազմակերպությունը, Հ. Սարուխանյանի գլխավորությամբ, պայքարի առաջին գծում էր: Ինչպես Հայաստանի բոլոր գավառներում, այնպես էլ Նոր Բայազետի գավառում ավելի հաճախակի դարձան գյուղացիական զինված ելույթները, հողերի բռնագրավումը, պետական հարկերից հրաժարվելու դեպքերը, ինչպես նաև քաղաքային բանվորական-աշխատավորական մասսաների ելույթները:

Հայաստանի 1920 թ. մայիսյան մասսայական քաղաքական ցույցերի և հերոսական ապստամբության նախօրյակին դաշնակցական տիրապետությունն ապրում էր խոր ճգնաժամ: Հանրապետությունում հեղափոխական իրադրություն էր: Մայիսյան դեպքերն ուժգնորեն ցնցեցին դաշնակների ու նրանց անգլո-ամերիկյան տերերի տիրապետության առանց այն էլ խարխուլ հիմքերը: Մայիսյան ցույցերի օրերին Սարուխանյանը Երևանում էր: Երբ Արմենկոմը համոզվեց, որ զինված ապստամբությունն անխուսափելի է, իր ներկայացուցիչներին ուղարկեց հանրապետության տարբեր գավառները՝ գլխավորելու ապստամբությունը: Վերցնելով համապատասխան գրականություն և Արմենկոմի հենց նոր հրատարակած թռուցիկները՝ Սարուխանյանը մայիսի 9-ին եկավ Նոր Բայազետ: Գիշերն այստեղ կայացավ կուսակցական ընդհատակյա խորհրդակցություն, որը, լսելով նրա զեկուցումը, որոշեց առաջիկա օրերին զինված ապստամբություն սկսել, հանրապետության հյուսիսային շրջանների ապստամբների ու Կարմիր բանակից սպասվող օգնությամբ շարժվել Երևանի վրա և ընդհանուր ուժերով տապալել դաշնակցական տիրապետությունը, Սովետական իշխանություն հաստատել Հայաստանում: Նոր Բայազետի բոլշևիկների այդ խորհրդակցությունը որոշել էր ապստամբությունն սկսել Ներքին Ղարանլուղից (Մարտունի), որտեղ գտնվում էր գավառի զինվորական կայազորի գլխավոր շտաբը, դաշնակ գեներալ Սիլիկովի գլխավորությամբ: Այդ պատճառով էլ Հ. Սարուխանյանը, Վ. Սիրունյանի հետ, մայիսի 11-ին գալիս է Ներքին Ղարանլուղ: Այստեղ նա անցկացնում է նոր խորհրդակցություն, ուր որոշվում են անելիքները:

Մայիսի 13-ին ապստամբեցին զինվորները և շրջակա գյուղերի գյուղացիները, ձերբակալեցին գեներալ Սիլիկովին, ռեակցիոն հրամանատարությանը և հռչակեցին Սովետական իշխանություն: Տեղի ունեցավ բազմամարդ միտինգ, որտեղ Հ. Սարուխանյանը կրակոտ ճառ արտասանեց, շարադրելով ապստամբների հետագա խնդիրները: Նա ասաց. «Ձեր այս հերոսական ելույթի շնորհիվ տապալվեց դաշնակցական արյունոտ տիրապետությունը Ներքին Ղարանլուղի շրջանում: Մենք պետք է վճռական գրոհի անցնենք հակահեղափոխության ուժերի դեմ և, մեզ օգնության եկող Կարմիր բանակի զորամասերի հետ միացած, տապալենք դաշնակցական ռեժիմը Հայաստանում»: Երբ նա կոչ արեց մասսաներին գնալ բոլշևիկների հետևից, ոգեշնչված բազմությունը բացականչեց՝ տարե՛ք մեզ դեպի սրբազան նպատակը: Նույն օրն ստեղծվեց գավառի ռազմահեղափոխական կոմիտե՝ Հ. Սարուխանյանի ղեկավարությամբ և կազմվեց հետագա գործողությունների ծրագիրը:

Մայիսի 13-ին ռազմահեղափոխական կոմիտեն, ապստամբ զինվորների մի մասին թողնելով Ներքին Ղարանլուղում, մասսաների գլուխն անցած, շարժվում է դեպի գավառի կենտրոնը: Մայիսի 17-ին ապստամբները, Սարուխանյանի գլխավորությամբ, կռվով մտնում են քաղաք: Տեղի է ունենում բազմամարդ միտինգ, որտեղ ոգեշունչ ճառ է արտասանում Հ. Սարուխանյանը: Ստեղծվում է քաղաքի ռազմահեղափոխական կոմիտե և միջոցներ են ձեռնարկվում քաղաքը թշնամուց պաշտպանելու համար: Այդ ժամանակ դաշնակ գեներալ Խանկալամովի և ներքին ու ռազմական գործերի նախարար, խմբապետ Ռուբեն Փաշայի ղեկավարությամբ ավելի քան հազար հոգուց բաղկացած պատժիչ արշավախումբ էր շարժվում դեպի Նոր Բայազետ:

Մայիսի 18-ին ապստամբների շտաբի պետը (Հ. Գրիգորյան) դավաճանաբար կազմակերպում է բանտում գտնվող գեներալ Սիլիկովի փախուստը, ինքն էլ անցնում է թշնամու բանակը: 19-ին գեներալ Խանկալամովը լկտի վերջնագիր է ուղարկում ապստամբներին՝ քաղաքը հանձնելու մասին: Սարուխանյանը թելադրում է վերջնագրի պատասխանը և, վճռականորեն մերժելով նրա բոլոր պահանջները, հաստատ համոզմունք հայտնում Հայաստանում սովետական իշխանության մոտալուտ և անխուսափելի հաղթանակի առթիվ: Նույն օրը տեղի է ունենում վճռական ճակատամարտ, որտեղ սկզբում հաջողությունն ապստամբների կողմն էր, բայց թշնամու թվական գերակշռությունն ու տեխնիկական միջոցների առավելությունը հաջողություն են բերում նրան: Քաղաքի պաշտպանության փաստական ղեկավարը Սարուխանյանն էր. նա իր անձնական օրինակով ոգեշնչում էր ապստամբներին: Եվ երբ պարզ դարձավ ճակատամարտի ելքը, նա մերժեց ընկերների խորհուրդը՝ թողնել քաղաքը և հեռանալ. «Մենք վաղը կճոճվենք կախաղանների վրա, բայց հեղափոխությանը չենք դավաճանի»,— ասաց նա:

Անճկուն կոմունիստը ապստամբության պարտությունից հետո միայն, կռվով նահանջելով քաղաքից, իր ջոկատի ընկերներին առաջարկում է ցրվել և պահպանել իրենց կյանքը հեղափոխության նոր մարտերի համար, իսկ ինքը անցնում է Փաշաքյանդ գյուղը և թաքնվում մի գյուղացու տանը: Գյուղի քահանայի տղայի մատնությամբ Սարուխանյանին հանձնում են մաուզերիստների ձեռքը, որոնք չտեսնված տանջանքների են մատնում նրան: Գազանաբար ծեծելուց հետո նրա ձեռքերը կապում են երկու ձիերի թամբերից ու քարշ տալով հասցնում Նոր Բայազետ: Այստեղ, նրան ծաղր ու ծանակի ենթարկելուց, ձեռքն ու ոտքը կոտրելուց և այլ տանջանքների ենթարկելուց հետո, նետում են բանտ: Մայիսի 23-ի գիշերը, ժողովրդից գաղտնի հանելով բանտից, Երևան փոխադրելու պատրվակով, Նոր Բայազետի և Աղզիբիրի միջև ընկած Չինգիլներ կոչվող վայրում դաշնակները գազանաբար սպանում են նրան:

Գնդակահարությունից առաջ դաշնակները Սարուխանյանին առաջարկում են հրաժարվել բոլշևիկյան հայացքներից. անվախ ու անվեհեր հեղափոխականը վճռաբար մերժում է նրանց պահանջը. «Ինձ գնդակահարելով կամ կախաղան բարձրացնելով,— ասում է նա,— դուք չեք գնդակահարի հեղափոխությունը: Հայաստանը սովետական կդառնա, և դուք իմ թափած յուրաքանչյուր կաթիլ արյան համար հազարապատիկ կհատուցեք: Կեցցե՛ Սովետական Հայաստանը, կեցցե՛ բոլշևիկների կուսակցությունը, կեցցե՛ Լենինը»:

Դաշնակները դաժան հաշվեհարդար են տեսնում նաև ապստամբության մյուս ղեկավարների հետ:

Զուր չանցավ մայիսյան ապստամբության հերոսների թափած արյունը: 1920 թ. նոյեմբերին Հայաստանի ապստամբ աշխատավորությունը, XI կարմիր բանակի օգնությամբ, տապալեց դաշնակների դաժան տիրապետությունը, հաստատեց սովետական իշխանություն: Հայ ժողովուրդը թևակոխեց իր կյանքի սովետական ժամանակաշրջանը: Սովետական ժողովուրդների մեծ ու հզոր ընտանիքում Հայաստանը կարճ ժամանակամիջոցում դարձավ առաջավոր սոցիալիստական հանրապետություն, իսկ այժմ ընթանում է կոմունիզմ կառուցողների առաջին շարքերում: Սովետական մարդիկ պատշաճն են հատուցում իրենց ազատագրության համար զոհված զավակների, այդ թվում և Հովհաննես Սարուխանյանի հիշատակին:

Վ. Ն. ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ
**Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

# Ճամփորդական նոթեր

## ՄԵՆՔ ՔԵԶ ՀԵՏ ԵՆՔ, ՏԱՇՔԵ՛ՆԴ

*Մեր անձայրածիր սոցիալիստական հայրենիքի ազգերի ու ժողովուրդների լենինյան բարեկամությունը եղել ու մնում է մեր առաջընթացի վճռական գրավականը: ՍՍՀՄ մեջ մտնող բոլոր հանրապետությունների հոյակապ նվաճումները պարտական ենք սովետական ազգերի ու ժողովուրդների անխախտ բարեկամությանը: Այս առումով նոր Տաշքենդը նշանավորում է կոմունիզմ կառուցող ժողովուրդների եղբայրության ստեղծագործական անսպառ կորովը: Այդ քաղաքին ծանոթանալու համար այնտեղ եղան մեր խմբագրության աշխատակիցները:*

*Ստորև տպագրում ենք ակնարկ նվիրված Տաշքենդին:*

Տաշքենդ— արևի առատ ճառագայթներ, դրանց ջերմությամբ աղեցուն բնություն, լույսով ողողված նորակառույցներ: Երկհազարամյա պատմություն, անցյալի ու ներկայի խորախոր տարբերություններ: Հարատևելու, անգամ բնության տարերքի առջև չընկրկելու, տոկալու անսահման կարողություն: Լայնահուն, անծայր թվացող փողոցներ, հարուստ, նորաոճ ճարտարապետական ու դեկորատիվ արվեստի կոթողներ: Այս ամենից անբաժան, այդ ամենը կյանքով լցնող աշխատասեր ժողովուրդ: Տարբեր երկրներից եկած տուրիստներ, հյուրեր: Տպավորություններ, տպավորություններ, անմոռաց տպավորություններ, որ ծալ-ծալ դարսվում են հիշողության մի անկյունում, ուզբեկական գույնզգույն ներքնակների ծալքի պես: Ու հարազատանում է քաղաքը, դառնում սիրելի, որին հրաժեշտ տալուց հետո կարոտով ես հիշում, երազանքով: Այսպիսին է Տաշքենդը, գեղեցիկ իր ամբողջության մեջ, հրապուրիչ իր գեղեցկությամբ:

***

Արևածագից առաջ էր: Երկնակամարի վրա դեռ աստղեր էին ցոլում: Ինքնաթիռը վայրէջք կատարեց: Սրահներում ծանոթ իրարանցում սկսվեց: Ուղևորները ուզում էին պահ առաջ թողնել ինքնաթիռը, ողջագուրվել հարազատների, ընկերների հետ, տուն հասնել: Միայն մենք չէինք շտապում: Մենք քաղաքին էինք անծանոթ, քաղաքը՝ մեզ: Մեր բոլոր ծանոթությունները նոր էին սկսվելու: Ծիման կետերը միայն թղթի կտորների վրա գրոտած հասցեներ էին, հեռախոսի համարներ: Ու չէինք շտապում: Պետք է սպասեինք լուսանալուն: Լսել էինք, որ տաշքենդցիները հյուրընկալ են, հյուրասեր: Օդանավակայանում էլ լսեցինք: Անտարբեր մնացինք. հոգնած էինք, քնատ ու դեռ մեր սեփական կարծիքը չունեինք. լսել էինք, ասում էին:

Ճամփաները լի են անակնկալներով: Դրանցից հաճախ հաճելի, թե տհաճ պատմություններ են հյուսվում ու հիշվում ընդմիշտ կամ դառնում կյանքիդ նոր ընթացքի սկիզբը: Մեզ էլ անակնկալ էր սպասում: Դեռ իրերը չէինք ստացել, երբ բարձրախոսը հայտնեց, որ մեզ սպասում են, փնտրում: Մեկեն աշխուժացանք: Մեզ հյուրանոց տանող մեքենան սլանում էր ամայի փողոցներով. քաղաքը դեռ չէր արթնացել: Մեր ուղեկիցը մեղմ, հաճելի, բարի հայացքով երիտասարդ էր, «Ուզբեկստանի կոմունիստ» ամսագրի խմբագրության աշխատակիցը: Ծանոթության համար փոխանակած մի քանի սովորական, կցկտուր բառերից հետո նա շտապեց մեզ ծանոթացնել քաղաքի հրաշալիքներին, խորհուրդներ տալ՝ ուր գնալ, ինչ տեսնել.

— ...Հաղթանակի այգի, Լենինի թանգարան, քաղաք-արբանյակ, Չիլանզար, օպերայի և բալետի թատրոն, արվեստի պալատ, կայաբալետի թատրոն. լավ կլիներ Սամարղանդ էլ գնայիք, Բուխարան էլ հետաքրքիր քաղաք է, հապա Ֆերգանայի հովի՞տը...— Այստեղ նա շունչ առավ մի պահ, մտածեց և առանձին ոգևորությամբ շարունակեց,— Տաշքենդը կառուցվում է իր գլխավոր պլանով: Մինչև 1980 թվականը նրա տարածությունը կավելանա 23 հազար հեկտարով: Այդ ընթացքում կկառուցվի 15 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն: Չորսից տասներկուհարկանի հարմարավետ բնակարաններ ունեցող քաղաքը կբաժանվի ինը մասի, ուր կապրեն 100—200 հազար տաշքենդցիներ: Քաղաքի ողջ տերիտորիան, ջրանցքի ուղիների երկայնքով, կբաժանվի կանաչ շերտերի: Իսկ փողոցների մայրուղիները, որպես մեր երկրի ժողովուրդների հավերժ բարեկամության խորհրդանիշ, կհամալրեն Կիևյան և Մոսկովյան, Մերձբալթյան ու Վոլգոգրադյան, Լենինգրադյան ու Ժողովուրդների բարեկամության փողոցները:

Ու մինչ իր երկրի սիրահար Մամեդովը հանույքով պատմում էր, խոսում Տաշքենդի ներկայի ու ապագայի մասին, մենք ակամա մըտաբերում էինք մինչհեղափոխական Տաշքենդի մռայլ նկարագիրը, ռուս մեծ գրող Սալտիկով-Շչեդրինի խոսքերը. «Եթե դուք ժամանել եք մի քաղաք, որի մասին վիճակագրական աղյուսակներում գրանցված է՝ բնակչությունը այսքան է, ծխական եկեղեցիները այսքան, ուսումնարաններ չկան, գրադարաններ չկան, բարեգործական հիմնարկություններ չկան և այլն,— ապա դուք կարող եք առանց սխալվելու ասել, որ գտնվում եք Տաշքենդի ամենանու կենտրոնական մասում»:

Մոտ կես դար մենք ուշացել էինք. պատկերը բոլորովին փոխվել էր: Վերածնված, նոր քաղաքում էինք, խաղաղության, միջազգային հանդիպումների, կոնֆերանսների քաղաքում, որն աշխարհին հայտնի է իր զարգացած բազմաճյուղ արդյունաբերությամբ, գյուղատնտեսությամբ, ծաղկող գիտությամբ ու կուլտուրայով:

Մինչ օդանավակայանից հասանք հյուրանոց շատ բան իմացանք քաղաքի մասին: Այսպես ծայր առավ մեր ծանոթությունը, ապա և մըտերմությունը Տաշքենդի, նրա մարդկանց հետ:

* * *

Երկու քաղաք կա Տաշքենդում՝ «հին» ու «նոր». արտաքին տեսքով իրարից տարբեր, իրարից օտար, իրարամերժ: Նոր քաղաքում չկան միհարկանի հյուղակներ, նեղ, ոլոր-մոլոր փողոցներ. բարձրահարկ, հոյակերտ շինություններ են այնտեղ, առատ շատրվաններ, բազում պուրակներ, ծաղկաբույր, լուսավոր փողոցներ... Ջահել է նոր քաղաքը, նոր կյանքի արյունն է իր երակներում, նոր ճամփաներ բացելու կորովով լի:

«Հին» քաղաքը... ծերացել է հին քաղաքը, թեև նոր են զգեստները նրա— էլեկտրական լույսեր, ջրմուղ-կոյուղի, ասֆալտապատ փողոցներ, տներում՝ գազ, հեռախոս, բայց ընկրկում է նորի առաջ, անհետանում:

Կեսօր է: Քայլում ենք «հին» քաղաքի խաղաղ մի փողոցով: Արևի կիզիչ ճառագայթները խուրձերով ցած են թափվում: Ասֆալտից գոլորշի է բարձրանում: Փողոցը սակավամարդ է: Հատ ու կենտ երեխաներ են երևում, կանայք՝ գլխներին կապոց արած ծանրություն: Նրանք քայլում են ազատ, անկաշկանդ, ձեռքները ետ ու առաջ շարժելով: Փողոցի խորքում, առվի եզրին, երկու տղամարդ հարդախառը ցեխ են շաղախում: Ծեփ են անելու: Մաշված տանիքը, պատերն են կարկատելու, մինչև նորի հերթն իրենց կհասնի:

Փողոցում տեղ-տեղ սեղաններ են գցված: Մի անկյունում, կողավոր մեծ թախտ է դըրված, վրան՝ ազգային նախշազարդ կարպետներ, գորգեր: Թախտի տակով հոսող բչբչան առվակը զով է բերում: Թասակները գլխներին, ճերմակամորուք չորս-հինգ ծերունի ծալապատիկ, թախտին նստոտած թասերով թեյ են անուշ անում: Նահապետներն են. հոգիներում դարերի վիշտ ու սարսափ, լաց ու կոծ, սուգ ու շիվան ամբարած նահապետները: Նրանց դեմքը խաղաղ է, հեքիաթների իմաստուն, ամենակարող ծերունիներ լինեն ասես: Անցորդները, ծանոթ, թե անծանոթ, ակնածանքով գլուխ են տալիս նրանց: Չգիտես որ տնից թոնրահացի բուրմունք է տարածվել փողոցում:

Քայլում ենք դանդաղ, ոտներս հազիվ քարշ տալով: Օդը չի շարժվում: Փողոցի մի կողմում քանդած հող է կիտված: Քարի հետք չկա: Հո՛ղ է, հո՛ղ, հո՛ղ: Մենք հողի սովոր չենք, մերը քարն է: Հողը շաքարավազից էլ մանր է, ալյուրի նման: Ի՞նչ կլինի, եթե քամի բարձրանա: Բայց օդը կանգնած է: Արևի ճառագայթները շարունակում են խանձել:

Թակում ենք բակերից մեկի դուռը: Մեծ ու լայն դռները բացվում են ու ներս առնում մեզ: Մաքուր է բակը, կանաչ: Ծառերի ճյուղերը գլուխները հակել են պտղի ծանրության տակ: Բակի մի անկյունում, ծածկի տակ, թո-

նիր կա: Այստեղ են թխում ուզբեկական հրաշալի բոքոնը: Թոնիրը, որ կես մարդաբոյ կլինի, գետնի մեջ չի թաղված, բարձր է: Լավ է, երեսդ կրակին չի առնի: Գորգապատ հյուրասենյակում ոչ մի ավելորդ պճնանք, կահույք իսկ չկա, գրեթե դատարկ է: Շատ հաճելի է այստեղ, զով, հանգստավետ: Դեռ չէինք նըստել սեղանի շուրջը, երբ երևացին թեյի պարագաները, ուզբեկական թեյի, ապա՝ միրգն ու ազգային ճաշատեսակները:

Տանտիրուհին միջին տարիքի, գեղեցկադեմ, բարձրահասակ կին էր: Նա աշխարհ «չէր տեսել», սակավ էր շփվել ժամանակակից շարժ ու ձևը յուրացրած մարդկանց հետ: Նրա աշխարհը իր երկիրն էր, գործարանը, տունը, երեխաները: Խոսում էր ցածր, մեղմ, կրծքային ձայնով: Վեց զավակների մայր էր նա: Ամուսնուն վաղ էր կորցրել: Նրա հայացքը հանգիստ էր, վեհ, շարժումները՝ վստահ: Երեխաներից մեկը իրավաբան էր, չորսը՝ ուսանող, փոքրը՝ դպրոցական: Զարմանալի ներքին ուժ կար այդ կնոջ մեջ, հաստատակամություն: Մենք իրար լեզու չէինք հասկանում: Ի՞նչ փույթ: Նա մեկեն բացեց մեր առաջ իր հոգին ու հասկացանք իրար, մտերմացանք, սիրեցինք: Հրաժեշտի պահին նրա աչքերը առկայծում էին խոնավության միջից: Մենք չկարողացանք սովորական շնորհակալական խոսքեր ասել նրան: Նա մեզ հյուրասիրել էր մարդկային ամենաթանկ բանով՝ հոգու հարստությամբ: Դրա համար շնորհակալություն չեն հայտնում, դրա համար գլուխ են խոնարհում: Ու մենք խոնարհեցինք, խոնարհեցինք բանվորուհու, ուզբեկ կնոջ առաջ, ուզբեկ ժողովրդի առաջ: Հիմա մեզ թվում է՝ այդ տնից կյանքի իմաստություն ենք քաղել ու երբևէ պետք է հատուցենք, անպայման հատուցենք:

«Հին» քաղաքից վերադարձանք ոգևորված: Մեզ հաջողվել էր տեսնել «հին» ու «նոր» քաղաքի ներքին կապը, գտնել տաշքենդցիների հորդացող արիության ակունքները, կորովի մայրությունը, հավերժական ուժի աղբյուրը:

* * *

Տաշքենդցիք լավ գիտեն նորը հնով լրացնել, հինն ու նորը համաձուլել, գիտեն ժողովրդին աշակերտել, ստեղծածը պահպանել:

Վաղուց էին մշակել քաղաքի վերակառուցման գլխավոր պլանը, պատերազմից առաջ. այնտեղ էին մեկտեղել ժողովրդական ազգային ճարտարապետության զարգացող հատկանիշները, նորօրյա միտումները, լուսագծերը: Պատերազմը խանգարեց, ամեն ինչ կիսատ մընաց: Ռազմաճակատին հաց ու բամբակ էր հարկավոր, պետք էր բուժել հազարավոր վիրավորների, ապաստանել անօթևան երեխաների, ծերերի, կանանց, հարկավոր էր օգնել եղբայրներին՝ ոտքի կանգնելու, պետք էր ազատվել մոխրակույտերից:

Ժամանակ անցավ: Վերակառուցման պլանը նորից կյանք մտավ, դարձավ առօրեական: Բարձրացավ օպերայի ու բալետի մոնումենտալ շենքը՝ դեկորատիվ արվեստի յուրօրինակ թանգարանը, հանրապետության շրջանների ժողովրդական արվեստի ձուլածոն, զարդաքանդակների հավաքածուն: Ժողովրդական վարպետներն այստեղ «լինել-չլինելու» խնդիրն են լուծել, լուծել են հօգուտ կյանքի, անմահության: Նրանց ստեղծած զարդաքանդակները ասես մեղմ շշնջում են՝ «ապրել՝ ստեղծելու համար», «ստեղծել՝ ապրելով»:

Կառուցում էին, ապրում, ստեղծում: Ու նորից ընդհատվեց: 1966 թ. ապրիլի 26-ի երկրաշարժը կործանեց, փլատակների վերածեց քաղաքի կեսը: Ողբաց քաղաքը, ողբաց Ուզբեկստանը, ողբաց երկիրը:

Ստորերկրյա տարերքը լափեց, հողին հավասարեցրեց ավելի քան 2 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն՝ անօթևան թողնելով 78 հազար ընտանիք: 7600 աշակերտ, 2400 նախադպրոցական զրկվեցին իրենց տեղերից: Ամբողջովին կամ մասամբ փլվեցին 690 առևտրական ու հասարակական սննդի ձեռնարկություն, 84 վարչական շենք, մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ[1]:

Այս թվերը կարող էին երկար մնալ անփոփոխ, մնալ իրենց ողբերգական գույներով ու երանգներով, եթե ոտքի չելներ ողջ երկիրը բազմամիլիոն, բազմազգ սովետական ժողովուրդը, եթե տաշքենդցիները չունենային այնպիսի ամուր հենարան, ինչպիսին լենինյան կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունն է և դժբախտության մեջ մենակ մնային: Բայց նրանց թիկունքին կանգնեցին տասնչորս հսկաները:

Ու Տաշքենդը հեղեղվեց մեր մեծ հայրենիքի բոլոր կողմերից եկող նամակներով: Գրում էին տարբեր տարիքի և մասնագիտության մարդիկ՝ բանվորներ, դպրոցականներ, ինժեներներ, բժիշկներ, զորացրված բանակայիններ: Նրանք իրենց մեծ ու փոքր ծառայություններն էին առաջարկում սիրելի տաշքենդցիներին:

...1966 թվականի սեպտեմբերին մեր ծառայության ժամկետը լրանում է,— գրում էին մի խումբ բանակայիններ,— իհարկե մենք գնալու տեղ ունենք, բայց որոշեցինք մեկ-երկու տարի

[1] *Թվական տվյալները տե՛ս* По улицам Ташкента, 1971, Здравствуй Ташкент, 1970, изд. «Узбекистан», «Новый мир», 1972, № 8:



աշխատել Տաշքենդում: Մենք կոփված մարդիկ ենք, կարող ենք ապրել և՛ վրաններում, և՛ բաց երկնքի տակ:

Դեպի Ուզբեկստանի մայրաքաղաքը սլացան դեղորայքով, վրաններով, շինանյութերով ու սննդամթերքով բեռնված գնացքները: Օդ բարձրացան ինքնաթիռները: Աղետի վայրը շտապեցին շինարարական ջոկատների շարասյուները: Հազարավոր աշխատավորներ եկան Տաշքենդ: Եկան մի անգամ ևս դրսևորելու բարեկամության ուժը, եղբայրության անսասանությունը: Եկան նվիրական ձգտումներով ու փլատակների վրա գրեցին՝ «Կկառուցենք նոր Տաշքենդ», «Իններալանոց Տաշքենդ», «Տաշքենդը երկրի ամենալավ քաղաքը կլինի»: Լոկ խոսքեր չէին՝ ավազին գրված:

Ու Տաշքենդում վրաններ խփվեցին անհամար. շարունակեց տրոփել Տաշքենդի սիրտը, նորից աշխատեցին ժամացույցները...

Մինչ ապագա նորակառույցների համար կըհարթվեին հրապարակները, մինչ եղբայրական հանրապետություններից եկող շինարարական գնացքները տեղ կհասնեին, պատրաստվում էին միկրոշրջանների աշխատանքային գծագրերը, բանակայինները քաղաք-արբանյակի հիմքն էին գցում:

Արագընթաց տեմպերը, սակայն, մոռացնել չտվին ճաշակի ու գեղագիտության, ժամանակի ու դարի պահանջները: Զանտեսվեցին մաթեմատիկական ճշգրիտ հաշվումները, աչքաթող չարվեցին նույնիսկ մանրուքները: Եղբայրական հանրապետություններից եկած ճարտարապետներն ու ինժեներները իրենց քաղաքի ծլարձակող հատիկը բերեցին ու խանդաղատանքով Տաշքենդում թողեցին: Նրանք, միաժամանակ, չմոռացան անչափ զգույշ ու նուրբ վարվել ազգային ավանդական սկըզբունքների հետ, պահպանել քաղաքի ոգին, կոլորիտը: Եվ դա բնական է: Չէ՛ որ նրանք եկել էին նաև գեղեցիկի որոնումներով: Եկել էին փլատակների միջից գեղեցկի բեկորները փրկելու, վերստեղծելու, Տաշքենդի առավել կատարյալ, նորոգ դիմանկարը կերտելու: Ու հարկեր բարձրացան՝ չորս, հինգ, ինը, տասներկու, ավելի... փողոցներ ծնվեցին՝ Բարեկամության, Եղբայրության, Ժողովուրդների բարեկամության:

Մարդիկ աշխատում էին զօր ու գիշեր: Շընչահեղձ էին լինում արեգակի տրոպիկական տապից, բայց աշխատում էին, ձեռքերի ափերը կոշտուկներով էին ծածկվում, քրտինքի առվակներ էին հոսում, երկրաշարժը շարունակում էր ցնցել քաղաքը, բայց համառորեն տքնում, անդուլ, անդադար կառուցում էին:

* * *

Ամեն պատմություն իր սկիզբն ունի, ամեն սկիզբ իր պատմությունը՝ խաղաղ ու փոթորկուն, մնայուն ու անհետացող, հերոսական ու սովորական: Աշխատանքով ու պայքարով, հաղթանակի հավատով սկսվեց քաղաք-արբանյակի պատմությունը: Եկան բանակայինները, շինարար դարձան: Չիրչիկ գետի հովտամասում երկու հարյուր հեկտար տարածություն առանձնացրին, ճանապարհներ կառուցեցին, էլեկտրական սյուներ կանգնեցրին, լուսարձակներ դրեցին և երկրաշարժից ուղիղ քսան օր անց սկսեցին առաջին տան կառուցումը: Հիմքերը կապելուց առաջ ավանդական կամուրջը կապեցին իրենց և ապագա սերունդների միջև, ուղերձ գրեցին նրանց՝ «Թող ձեր սրտերում, ապագա սերունդների սրտերում, որոնց բախտ կվիճակվի ապրելու այս սքանչելի քաղաք-արբանյակում, հավերժ մնա երախտագիտության զգացումը կոմունիստական կուսակցության, սովետական կառավարության հանդեպ»: Գրեցին, տեղավորեցին պատիճի մեջ, դրեցին առաջին նորակառույցի հիմքում:

Այս էր սկիզբը պատմության: Հետո, հետո ընդամենը կես տարի անցավ: Երկու հարյուր հեկտար հողատարածությունը վերածվեց ինքնատիպ մի քաղաքի: Կառուցվեցին 231 տասներկու, 175 ութ և 390 մեկ բնակարան ունեցող տներ: Սա, տակավին, բոլորը չէ: Ահա շարունակությունը՝ չորս դպրոցական շենք, վեց մըսուր-մանկապարտեզ, հինգ մթերային, երկու արդյունաբերական խանութ, երկու հասարակական սննդի և երկու կենցաղսպասարկման կոմբինատ, հիվանդանոց, բաղնիք, հյուրանոց, վարչական շենքեր: Նման թվեր պատմությունը չի տեսել: Հրա՞շք թվեր: Եվ ովքեր էին դրանք ստեղծողները՝ կենսախինդ, ոգևորվող, անձնուրաց, հավատով ու երազներով լի երիտասարդներ: Եկան, լայն ու թեթև սրտով տաշքենդցիների հոգսի մի մասն իրենց վրա վերցրին, կառուցեցին, վայելեցին հաղթանակի հաճույքը ու մեկնեցին: Հիմա նորաբնակ քաղաքն իր լուսաշող, երախտագետ հայացքով նայում է բոլոր այցելուներին ու ասում կարծես.

— Հիշեցե՛ք, սերունդներ: Գիտցե՛ք, հաղթանակը միայն ճակատամարտում չի նվաճվում. Տաշքենդի համար այն ծանր օրերին այստեղ էլ հաղթանակ էին դարբնում: Հաղթանակ՝ ամայի դաշտում, քառասուն աստիճան տապին, փոշու քուլաների մեջ, աղի քրտինքով:

Բայց քաղաք-արբանյակի արտասովոր պատմությունն այսքանով չի ավարտվում: Բարեկարգումը շարունակվեց: Քաղաքը օր-օրի հարըստացավ, հարմարավետ դարձավ, լցվեց ծառ ու ծաղկունքով, թփուտներով, ոռոգման առուների խիտ ցանցով՝ կանաչ կամար կա-

պեց: Այն այժմ անընդհատ փոփոխվող, մեծացող, առնացող կանաչ-քաղաք արքանյակ է:

* * *

Աշխարհագրական քարտեզի վրա անթիվ, անհամար քաղաքներ են նշված: Միջին Ասիայի բազում ուղիների խաչմերուկում մի փոքրիկ, կարմիր շրջանակ կա միայն, Տաշքենդն է: Զիլանզարը չկա: Այդպես էլ պետք է լինի: Չի կարող քաղաքի միջի քաղաքն էլ քարտեզի վրա տեղ բռնել, նշվել: Մեծ է Զիլանզարը: Տաշքենդի բոլոր կողմերից տրամվայներ, տրոլեյբուսներ, ավտոբուսներ, ուղերթային և ոչ-ուղերթային տաքսիներ են սլանում այնտեղ: Ոտքով ևս կարելի է գնալ, բայց դժվար կլինի, ժամանակն էլ շա՜տ է սուղ:

Երկրաշարժից հետո են փոխվել Զիլանզարի սահմանները, ընդարձակվել, երկրաշարժից հետո է հասակ առել, մեծացել Զիլանզարը: 3825 հեկտար է նրա տարածությունը, փողոցները ու հրապարակները՝ 1387, կանաչ ծառատունկերը՝ 70 և ջրավազանները՝ 19: Այստեղ գործում են 22 թեթև, սննդի, շինարարական, 170 կենցաղ-սպասարկման ձեռնարկություն, 23 բուժպրոֆիլակտիկ հաստատություն, 17 դեղատուն, 11 գրադարան, 3 կուլտուրայի տուն, 13 ակումբ, 7 կինոթատրոն: Շրջանն ունի 56 հանրակրթական, 14 բաներիտ դպրոց, 90 մըսուր-մանկապարտեզ: Ուսումնական հաստատություններում աշխատում են 2940 մանկավարժ ու դաստիարակ:

Երկրաշարժի բազում ցնցումներ, բազում աղետաբեր ակնթարթներ: Եվ ո՞ւր են դրանք: Մարդու ուժի՞ց փախան, բազուկների ուժից, կամքի, բանականության ուժից, ստեղծարար մարդու, սովետական մարդու: Որքան էլ բնական ու ոչ-բնական տարերքը հողակույտերի, փլատակների վերածի մարդու ստեղծածը, նա, միևնույն է, համբերատար, անկոտրում նորից քարը քարին կդնի, նորից կմեծամարտի բնության վայրագությունների հետ, կրկին կստեղծի. նրա ստեղծածը հարատև է, նրան ոչ ոք, ոչ մի ուժ չի կարող հաղթել:

Զիլանզարը կառուցվեց, վերակառուցվեց Միության բոլոր հանրապետությունների ջանքերով: 1966 թվականի երկրորդ կեսից և 1967 թվականի ընթացքում նրա շինարարական վիթխարի հրապարակում բանում էին մեր երկրի հեռու-հեռուներից եկած, ամենատարբեր լեզուներով խոսող երեսունհինգ հազար շինարար:

Ու քայլում ենք Զիլանզարի՝ Բարեկամության ամրոցի նորոգ ու գեղատեսիլ փողոցներով, հոգնում ենք, փողոցներին ու շենքերին թիվ ու համար չկա, բայց չենք կարողանում հայացքներս կտրել շենքերից: Կառուցողները անուններն էլ չեն թողել, անունները խառնել են քար ու ավազին, տուն են կառուցել: Այն ժամանակ շտապ տներ էին հարկավոր, մարդիկ անօթևան էին, անունների համար ժամանակ չկար: Ովքե՞ր են կառուցել: Լուսապայծառ շենքերը, ասես, որսում են միտքդ ու բարեսրտորեն հուշում՝ ո՛ղջ ժողովուրդը, դո՛ւք եք կառուցել: Իրոք որ՝ «Գյուղ կանգնի՝ գերան կկոտրի»: Այո՛: Ժողովուրդը միշտ է միասնության ձգտել, ժողովուրդը միշտ է եղբայրություն երազել: Այստեղ է ուժն անպարտելի դառնում: Եղբայրությամբ սնվող ուժն է միշտ հաղթում, ստեղծում ու կառուցում: Ահա ապացույցը.

Ռուսաստանի Ֆեդերացիան նոր Տաշքենդում կառուցեց 300 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, Մոսկվան՝ 230, Լենինգրադը՝ 100, Ուկրաինան՝ 150, Բելոռուսիան՝ 25, Ղազախստանը՝ 28, Վրաստանը՝ 22, Ադրբեջանը՝ 35, Հայաստանը՝ 15, Լիտվան՝ 10, Լատվիան՝ 10,7, Էստոնիան՝ 5, Մոլդավիան՝ 6, Կիրգիզիան՝ 11, Թուրքմենիան՝ 9, Տաջիկստանը՝ 8 հազար քառակուսի մետր:

Յուրաքանչյուրն այստեղ իր ազգային կուլտուրայից մի մասնիկ դրեց: Լենինգրադցիները կառուցեցին իրենց Նևսկի պողոտան, էստոնացիները Բալթիկ ծովից ավազ բերեցին ու անցուղիները բալթյան ավազով պատեցին, մոսկվացիները միկրոշրջան կառուցեցին 10 հազար բնակչի համար, ռիգացիները շենքերից մեկի ճակատին իրենց քաղաքի կոփածո գերբն ամրացրին:

Հիմա բարեկամության անսասան ամրոցը Տաշքենդի «հսկայական ննջարանն է» դարձել: 500 հազար մարդ է ապրում այնտեղ, նրա բընակելի ֆոնդը Դուշամբեի, Աշխաբադի չափ է: Շուտով, շատ շուտով Զիլանզարը կդառնա մի կանաչ քաղաք՝ մեծ քաղաքի մեջ:

Եղբայրների օգնությունը, սակայն, այս ամենով չի վերջանում: Տաշքենդ եկող բեռնավորված գնացքները, ինքնաթիռները դատարկ չէին վերադառնում: Նրանք աղետի վայրից հեռացնում, իրենց մոտ ու հեռավոր վայրերն էին տանում կանանց ու երեխաներին: Տասնչորս հազար ընտանիք ապաստանեցին Վոլգայի ու Դնեպրի ափերին, Մերձբալթիկայում ու Կովկասում: ՌՍՖՍՀ մեկնեցին 2170 ընտանիք, Բելոռուսիա՝ 594, Ուկրաինա՝ 1786: Երեսուն հազար դպրոցական ամռանը ծովափում անցկացրին: Մոսկվայի ու Լենինգրադի, Չիմքենդի ու Ջամբուլի գիշերօթիկ դպրոցները երկու տարով երկու հազար տաշքենդցի աշակերտներ ընդունեցին:

Ողջ աշխարհն էր հիանում եղբայրների մեծագործություններով: ԳԴՀ հեռուստատեսության թղթակիցը գրում է.



«...Ես նորից Ուզբեկստանի մայրաքաղաքում եմ: Եկել եմ ԳԴՀ հեռուստադիտողներին իմ տպավորությունները հաղորդելու այն մասին, թե ինչպես Սովետական Միության ժողովուրդներն անհապաղ օգնության ձեռք մեկնեցին քաջարի տաշքենդցիներին:

Ես շատ եմ կարդացել տարերային աղետների մասին: Բայց ապշեցի տեսնելով Տաշքենդը: Քաղաքի կենտրոնում արդեն վիթխարի հրապարակներ էին բացված. տաշքենդցիները անասելի հանգիստ էին, արի: Մենք գիտենք, որ դրա համար անսահման հոգեկան կորով է պետք:

Մենք հիանում ենք բուլդոզերավարների, էքսկավատորավարների, շինարարների, ուսանողների աշխատանքով: Քառասուն աստիճան շոգին, փոշու մեջ ծանր է ֆիզիկական աշխատանք կատարել: Բայց տաշքենդցիները աշխատում են ինչքան ուժ ունեն իրենց բազուկներում, աշխատում են ոգեշնչված, դա հերոսություն է:

Տաշքենդցիները երջանիկ են, որ ապրում են մի այնպիսի երկրում, ուր մարդը մարդուն բարեկամ է, ընկեր ու եղբայր:

Բնակելի նոր թաղամասերը, որ բարձրանում են քաղաքում, դրա վկան կլինեն և այն ժամանակ, երբ երկրաշարժի ծանր փորձությունն արդեն մոռացված կլինի»:

Շուտ անցան ծանր օրերը: Հիմա երկրաշարժը հուշ է դարձել, անցած-գնացած տխուր մի հուշ: Տաշքենդցիները չեն սիրում հիշել մղձավանջային օրերը, չեն սիրում վերապրել սարսափելի պահերը: Բայց երբ խոսք է բացվում շինարարության, քաղաքի արտաքին տեսքի մասին, հաճախ են օգտագործում՝ «երկրաշարժից առաջ», «երկրաշարժից հետո» բառերը: Երկրաշարժը, ասես, նրանց համար սահմանագիծ է դարձել, համեմատության չափանիշ: Եվ այդպես էլ է: Այնքա՜ն է մեծացել քաղաքը, այնքա՜ն նորություններ կան այնտեղ: Ամեն օր է փոխվում Տաշքենդը, ամեն օր է նորոգվում, գեղեցկանում:

* * *

Կայարանում, Սամարղանդ գնալիս, մենք հանդիպեցինք երկու թուրքմեն երիտասարդի: Ուսանողներ էին: Սովորում էին Տաշքենդի ժողովրդական տնտեսության ինստիտուտի հեռակա բաժիններից մեկում: Քննությունները հանձնել, բարձր տրամադրությամբ տուն էին շտապում: Կռահեցին մեր հայ լինելը, զարմացան, որ մեն-մենակ այդքան հեռու գործուղում ենք եկել ու հիմա էլ Սամարղանդ ենք գնում՝ այնտեղի հնությունները տեսնելու: Երբ իմացան մեր Տաշքենդ գալու նպատակը շատ ափսոսեցին, որ շուտ չենք հանդիպել:

— Ձեզ ցույց կտայինք քաղաքը, ամեն տեղ կտանեինք: Մենք շատ լավ գիտենք Տաշքենդը, ուզբեկերեն էլ գիտենք:

Հրաշալի երիտասարդներ էին: Նրանք առանձին սիրով, ավելի ճիշտ սիրահարվածի պես էին խոսում Տաշքենդի մասին, տեսնում քաղաքի միայն լավ կողմերը.

— ...Տաշքենդը Միջին Ասիայի խոշորագույն քաղաքն է,— հպարտանում էին նրանք,— մոտ մեկուկես միլիոն բնակչություն ունի, բնակչության թվով չորրորդն է Սովետական Միությունում... այստեղ են խաչաձևվում օդային ուղեգծերը. ամառվա ամիսներին օդանավակայանը չորս հազար ուղևոր է ընդունում ու գրեթե նույնքան էլ ճանապարհում, իսկ երկաթուղային կայարանը՝ տասը հազար: Արդեն սկսվել է մետրոյի կառուցումը, Զիլանզարից է սկսվել,— վրա էին տալիս նրանք, պատմում ու պատմում:

Երբ Տաշքենդի մասին բոլոր «գիտելիքները» արդեն հաղորդել-վերջացրել էին, նույնպիսի ոգևորությամբ անցան իրենց երկրին՝ Թուրքմենստանին:

Երիտասարդներից բաժանվելուց հետո երկար վերհիշում էինք մեր զրույցն ու մտածում, որ Տաշքենդի մասին խոսելիս նրանք ևս, բոլորի նման, ասում էին՝ «մեր Տաշքենդը», «մեր քաղաքը»:

Այո՛, տասնհինգ եղբայրների գուրգուրանքով ու ջանքերով կենդանացավ, շունչ առավ Տաշքենդը, շարունակեց զարգանալ, հզորանալ, մեծանալ: Իսկ մեզ այդպես էլ չհաջողվեց որոշել, թե որտեղ է սկսվում ու որտեղ վերջանում գունազարդ, կենսախինդ ու պայծառ այդ քաղաքը: Նրա ամեն շրջանը մի նոր քաղաք է, մի նոր կենտրոն, մի նոր կենդանի պատմություն: Քաղաքի բոլոր մասերում շենքերի խոր հիմքեր են փորվում, ամբարձիչ կռունկներ ու էքսկավատորներ բանում, նրա բոլոր մասերում գործարաններ են, ֆաբրիկաներ, լաբորատորիաներ. այնտեղ տասնյակ ազգության մարդիկ աշխատանքային հորդ առօրյայում կռում են բարեկամությամբ ստեղծվող հերոսական, դարերին անծանոթ մի նոր պատմություն:

Եվ բովանդակ աշխարհի առաջավոր մարդիկ հիանում են պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի ուժով ու հզորությամբ, հումանիզմով, որոնց վառ մարմնավորումն է Ուզբեկստանի մայրաքաղաքը՝ նորոգ Տաշքենդը:

**ԼԻԴԱ ԽՈԻԴՈՅԱՆ**

Երևան—Տաշքենդ

# ՄԱՄՈՒԼԻ ԷՋԵՐԻՑ

## ՀԱՐԱԶԱՏ ՁԱՅՆԵՐ ՄԱՐՏԱԴԱՇՏԻՑ

### (ՌԱԶՄԱՃԱԿԱՏԱՅԻՆ ՌՈՒՍԱԿԱՆ ԹԵՐԹԵՐԻ ԷՋԵՐԻՑ)

Հիշում եմ 1941 թվականի վերջերը, քառասուներկուսի կեսերը: Սև ամպեր էին կուտակված մեր հայրենիքի վրա: Կոմունիստական կուսակցության կոչով սովետական ժողովուրդը ոտքի էր ելել սրբազան Հայրենական պատերազմի՝ պաշտպանելու մեծ Հոկտեմբերի նվաճումները: Սովետա-գերմանական ռազմաճակատը ձգվում էր Բարենցի ծովից մինչև Սև ծովի Կովկասյան ափերը: Պատերազմական թատերաբեմի այդ վիթխարի գծի վրա բանվորա-գյուղացիական կարմիր բանակը հերոսաբար կռվում էր հայրենի հողի յուրաքանչյուր թզի համար:

Ձնայած հիտլերյան «Կայծակնային պատերազմի» պլանը տապալված էր, 1941—1942 թթ. ձմեռը ֆաշիստական հրոսակախմբերը Մոսկվայի մատույցներից ետ էին շպրտվել և մայրաքաղաքի անվտանգությունը մասամբ ապահովված էր, բայց դեռևս առկա էր Սովետական Միությանն սպառնացող վտանգը: Թշնամին կենդանի ուժի և տեխնիկայի մեծ կորուստներ կրելով, իր զինվորների ու սպաների դիակների վրայով սողում էր դեպի մեր հայրենիքի կենսական շրջանները:

Այդ արյունալի մարտերում կարմիր զորագնդերը ցուցաբերում էին պողպատյա կամք, անսահման տոկունություն: Նահանջելով հանդերձ նրանք ջախջախում էին հակառակորդի լավագույն զորամիավորումները, արյունաքամ անում դրանց: Դաժան գոտեմարտերում սովետական ռազմիկները չսարսելով մահից, կռվում էին մահվան դեմ, ոչնչացնում վայրագության ու ստրկության անարգ շղթաները բերող հիտլերյան բարբարոսներին:

Գերմանական զավթիչների դեմ մղված մարտերի առաջին իսկ օրերից կարմիր բանակի ռազմիկները մասսայական հերոսություններով շարունակում էին իրենց անհուն նվիրվածությունը սոցիալիստական հայրենիքին:

Կռվի ամենածանր պահերին իսկ սովետական ռազմիկները չէին կորցնում հավատը վերջնական հաղթանակի նկատմամբ: Այդ հավատն անսասան էին պահում մեծ Լենինի վեհ գաղափարները, կոմունիստական կուսակցության գործերն ու կոչերը, Հոկտեմբերյան բարիկադներում մարտնչած քաջերի օրինակը:

Սոցիալիստական հայրենիքի անկախության, մեր ժողովրդի ազատության համար մղած ճակատամարտերում կարմիրբանակայիններն ու հրամանատարները կռվում էին անձնուրաց, կրակի ու բոցերի մեջ մարտնչում մինչև վերջին շունչը: Նրանց պանծալի սխրանքների մասին լուրերը տարածվում էին երկրով մեկ:

Հայրենական պատերազմի բոլոր ռազմաճակատներում ռուս, վրացի, ուկրաինացի, բելոռուս, ղազախ, ուզբեկ և մեր երկրի մյուս ազգությունների զավակների կողքին հայ ռազմիկները ևս դյուցազնաբար կռվում էին ֆաշիստների դեմ:

Պատերազմի առաջին ամիսներին «Правда»-ն հանդես եկավ Հայ ժողովրդի մասնակցությունը Հայրենական մեծ պատերազմին խմբագրական հոդվածով: Հայ ժողովուրդը չի մոռացել ֆիզիկական ոչնչացումը, գրել է «Правда»-ն, որ կազմակերպել էր արյունռուշտ Հիտլերի նախորդ Վիլհելմ կայսրը՝ առաջին իմպերիալիստական պատերազմի տարիներին: Այդ պատճառով էլ, երբ արյունալի հրդեհի պես բռնկվեց պատերազմը, որ սկսել է մարդակեր Հիտլերը Սովետական Միության դեմ, ողջ հայ ժողովուրդը մեկ մարդու պես ոտքի ելավ պաշտպանելու հայրենիքը: Հայ ժողովուրդը հաստատապես իր մարտական տեղն է գրավել անկախության ու ազատության համար Սովետական Միության բոլոր ժողովուրդների մղած ընդհանուր պայքարում (տե՛ս «Правда»», 1941 թ. օգոստոսի 25):

Ծարունակելով պրպտումները ռազմաճակատային ռուսական լրագրերի կոմպլեկտներում, մենք հայտաբերեցինք բազում թղթակցություններ, հաղորդումներ, հոդվածներ ու ակնարկներ, որոնց հեղինակներն անկեղծ հույզով նկարագրում են հայ կարմիրբանակայինների, հրամանատարների ու քաղաշխատողների խիզախությունն ու քաջագործությունը՝ ոսոխի դեմ մղված մարտերում:

Հնարավոր չէ առանց փշաքաղվելու կարդալ «Красноармейская Правда»» ռազմաճակատային լրագրում զետեղված «Բոլշևիկները հաղթում են մահին» վերնագրով հոդվածը: Արևմտյան ռազմաճակատում մարտնչող գնդերից մեկում, վաշտի հրամանատարի առաջադրանքով, քաղղեկի տեղակալ Արգամ Պետրոսյանն* օգնում է սանիտարներին վիրավորներին ուղարկելու թիկունք: Հիտլերականները շրջապատում են սանիտարական մասը, սկըսվում է կատաղի կռիվը: Արգամի վրա են հարձակվում երեք ֆրից, ոլորում թևերը և տանում հողատնակը: Նրանք ծաղրում են երիտասարդ բոլշևիկին, խոշտանգում:

...Ներս է մտնում մի սպա,— գրում է ավագ քաղղեկ Գ. Ուլանը,— ուրախությունից ձեռքերը շփում, ապա ասում է.

— Երիտասարդ կոմիսարը հիմա մեզ կըպատմի իր զորամասի դասավորության մասին:

...Պետրոսյանը լռում է:

— Չե՞ս ասի,— մռնչում է սպան,— հանում ածելին ու ծվատում Պետրոսյանի կուրծքը... Զայրացած սպան խուզարկում է Արգամի հագուստի գրպանները ու հայտնաբերում հնգաթև աստղանշանը, ապա աստղը դնում Պետրոսյանի այտին և արյունալի ակոսներ բացում...

Այդ պահին հողատնակ է մտնում մի այլ սպա.

— Ո՞ւմ են պետք այդպիսի տանջանքները, երիտասարդ կոմիսարն առանց դրա էլ ամեն ինչ կասի...: Նա Պետրոսյանին դեմ է անում մի գրպարտչական նամակ՝ ուղղված ռուս զինվորներին... Նա հրաժարվում է ստորագրել:

...Պետրոսյանին դուրս են բերում տնակից, հրամայում գերեզման փորել երեք հոգու համար:

Է՜խ, ճակատագիր, փրկիր փորձանքից, մըտածում է Արգամը ու թիակով ուժգին հարվածում իրեն հսկող զինվորին: Ապա մի ակընթարթում վերցնում է նռնակը և նետում հողատնակի մեջ...

Գերմանական սպան երկու տեղից վիրավորում է Արգամին, բայց նա հավաքում է ուժերը, հարձակվում սպայի վրա ու խեղդում նըրան... Գերմանացիների պաշտպանության առաջին գիծն անցնելիս նա վիրավորվում է երրորդ անգամ (տե՛ս «Красноармейская Правда»», 1941 թ., № 217):

Մի խումբ հետախույզների սխրանքներին է նվիրված ավագ քաղղեկ Դ. Ռազդոլսկու **Հաստատակամություն և անվախություն** վերնագրով հաղորդումը ռազմի դաշտից:

Տասնչորս ռազմիկ էին: Չորսը՝ հրամանատարներ՝ մայոր Յակովլևը, ավագ սերժանտներ Համբարյանը, Սեմյոնովը, Ստեփանյանը և տասը կարմիր բանակային ավտոմատավորներ: Այս փոքրիկ խումբը հետախուզելու նպատակով թափանցում է հիտլերականների գրաված գյուղը, որն իրենց գնդի մարտական պահպանությունից երեք կիլոմետր հեռու էր: Դիտումներից հետո հետախուզության պետը հաղորդում է զորամասի շտաբին, որ դարանակալած հիտլերականների մի մեծ խումբ պատրաստվում է հարձակման: Զորամասին տրվում է հույժ շտապ մարտական առաջադրանք: Հրամանատար Նյաշինը կարգադրում է հետախույզների խմբին՝ ավտոմատային կրակով սասանել հակառակորդի մարտակարգերը, թույլ չտալ նրան առաջ շարժվելու: Հետախույզներն անցնում են հրամանի կատարմանը:

...Ահեղ կռվի ժամանակ մի քանի ֆաշիստ գնդակոծողի մոտեցան մայոր Յակովլևին,— գրում է Ռազդոլսկին,— ապա երեք նռնակ նետեցին նրա կողմը.

— Մայորը զոհվե՜ց,— ձայն տվեց շքանշանակիր ավագ սերժանտ Սարգիս Համբարյանը: Նա խմբի հրամանատարությունը վերցրեց իր վրա և գոչեց՝ անդադար կրակ թշնամու վրա...

— Մնացինք ութ հոգի,— ասաց ավագ սերժանտ Սեմյոնովը, որն իր անձնական օրինակով քաջալերում է զինվորներին և մտածում, որ իրենց օգնության կհասնեն: Բայց նրանց օգնություն ուղարկելն անհնարին էր...

Կատաղած ֆաշիստները շրջանցեցին խիզախներին... զոհերի թիվն ավելանում էր... Լուսաբացին, երբ ստացվեց նահանջի հրամանը, շարքում մնացել էին չորս կտրիճներ... Բայց թշնամին իր դիրքերից առաջ չէր շարժվել:

— Առաջադրանքը կատարված է,— զեկուցեց հրամանատարին ավագ սերժանտ Սարգիս Համբարյանը և ուժասպառ ընկավ գետնին... (տե՛ս «Вперед к победе», 1942 թ., օգոստոսի 12):

Քառասունմեկ թվականի աշնանամուտ: Զոր ու գիշեր կատաղի մարտեր էին տեղի ունենում Պոլտավայում: Արևախանձ դեմքերով կարմիր բանակայինները աներեր, տոկուն կեր-

* *Արգամ Ալեքսանդրի Պետրոսյանն այժմ Ազիզբեկովի շրջսովետի գործկոմի նախագահն է:*

պով, հաղթահարելով դժվարությունները ու զրկանքները, համառորեն դիմադրում էին թշնամուն: Դիվիզիաներից մեկի գնդերը, հաճախակի անցնելով հակագրոհի, արգելակում էին հիտլերականների առաջխաղացումը: Սակայն, հակառակորդի ուժերը գերակշռող էին: Ծանր պայմաններում մերոնք ստիպված էին նահանջել: Բայց նահանջելով հանդերձ հույսով էին, որ կրկին կվերադառնան Պոլտավա, ֆաշիստներից կազատագրեն Ուկրաինան:

...Դաժան մարտերից մեկում հերոսի մահով զոհվեց գնդի հրամանատար Սևերինը,— գրում է կապիտան Ս. Բոժենկոն,— շարքից դուրս եկավ կոմիսար Մագիլևիչը: Գնդի հրամանատարությունն ստանձնեց կուսբյուրոյի քարտուղար Ցոլակ Կուպալյանը: Թշնամին ծանր վիճակի մեջ գցեց զորամասին: Կուպալյանը հրամայեց կարմիր բանակային Տաշմատովին՝ դիվիզիայի ու գնդի դրոշները բարձրացնել բլրի վրա... Տաշմատովը կատարեց հրամանը, բայց զոհվեց... Ֆաշիստների գնդակներից դրոշները ծակծկվեցին...

Խոր գիշեր էր: Կարճատև դադար... Կուպալյանը մագլցելով հասավ բարձունքը, ձողերից պոկեց դրոշները, դրեց ծոցը և վճռեց ինչ գնով էլ լինի փրկել զորամասի սրբությունը: Այդ պահին հիտլերականները շրջանցեցին բլուրը, կուսբյուրոյի քարտուղարը մնաց թշնամու թիկունքում... Կուպալյանը դրոշներն ու գնդի շքանշանները թաղելով մի ծառի մոտ, դուրս եկավ շրջապատումից և շարունակեց մարտնչել թշնամու դեմ...

Այդ դեպքից հետո անցան ամիսներ, Կուպալյանը մասնակցեց նաև Կովկասի համար մղվող մարտերին ու բազմիցս աչքի ընկավ իր սխրանքներով: Մեկ տարի հետո, երբ կարմիր բանակը ազատագրեց Պոլտավան, իր պետերի թույլտվությամբ Կուպալյանը մեկնեց Ուկրաինա և թաքցրած տեղից հանելով դրոշներն ու շքանշանները, հանձնեց հրամանատարությանը (տե՛ս «Вперед за Родину», 1943 թ., հոկտեմբերի 21):

Անդրկովկասյան ռազմաճակատային թերթում՝ «Մեր ռազմաճակատի հերոսները» ընդհանուր խորագրի տակ տպագրվել է կրտսեր քաղղեկ Յա. Գորելիկի հոդվածը՝ ավագ սերժանտ կոմունիստ Սոսիկ Բաղդասարյանի քաջագործությունների մասին, որը մարտերում բազմիցս աչքի է ընկել իր սխրանքներով:

...Երբ հիտլերյան ավազակները հարձակվեցին մեր երկրի վրա,— գրում է հեղինակը,— Սոսիկ Բաղդասարյանը հանդես գալով գնդացրորդների միտինգում ասաց.

— Հիտլերյան ճահճից թունավոր իժը սողում է մեր գարնանային այգին: Աշխարհը չի հանգստանա, քանի չենք ոչնչացրել դրան...

...Գետափնյա արյունալի մարտից մի քանի օր հետո գնդացրային դասակը մասնակցեց հակառակորդի ամրացված ստրատեգիական կետի վրա ձեռնարկված հարձակողական մարտերին: Բաղդասարյանի գնդացրային հաշվարկը գտնվում էր առաջ շարժվող ստորաբաժանման կենտրոնում: Հակառակորդը, կառչելով իր բնագծին, կատաղի դիմադրություն էր ցույց տալիս... Պայթող գնդակը մահացու վիրավորեց դասակապետին: Հրամանատարությունը իր վրա վերցրեց սերժանտ Բաղդասարյանը... Գրոհի տանելով ստորաբաժանումը, նա հաջողությամբ կատարեց մարտական առաջադրանքը: Այդ կռվում գնդացրորդները ոչնչացրին բազում հիտլերականների և գրավեցին ամրությունը:

Կռվի դաշտում հմտություն և քաջություն ցուցաբերելու համար Բաղդասարյանին շնորհվեց ավագ սերժանտի կոչում, նա նշանակվեց գնդացրային դասակի հրամանատար... Նրա ենթակա գնդացրորդ սնայպերները վարպետորեն են կռվում նաև թշնամու օդային ուժերի դեմ... Մի քանի օրվա ընթացքում Բաղդասարյանի դասակի մարտիկները խփեցին հինգ ինքնաթիռ...

Կռվի դաշտում ցուցաբերած քաջագործությունների համար Բաղդասարյանը բազմիցս արժանանում է հրամանատարության խրախուսանքին, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության հրամանագրով պարգևատրվում Կարմիր աստղի շքանշանով (տե՛ս «Боец РККА», 1942 թ., հոկտեմբերի 10):

Երկու հարյուր հիսուն օր թեժ մարտեր տեղի ունեցան Սևաստոպոլի պատերի տակ: Երկու հարյուր հիսուն օր ու գիշեր սովետական զինված ուժերի քաջարի մարտիկները համառորեն դիմադրեցին ֆաշիստներին, ետ մղեցին նրանց բոլոր գրոհները՝ ծանր կորուստներ պատճառելով թշնամուն: Միայն վերադաս հրամանատարության կարգադրությամբ մեր զորքերը թողեցին Սևաստոպոլը: Այդ արյունալի կռիվներում աչքի ընկան բազում հայ կտրիճներ: Նրանցից մեկի՝ Ոսկանովի սխրանքներին է նվիրված քաղղեկ Կոլոտովկու թղթակցությունը:

...Գերմանացիներն անցան գրոհի... լեյտենանտ Լարինի ականանետային դասակի նավաստիներին հրամայվեց՝ կրակ՝ հակառակորդի հետևակի վրա... մարտում բացառիկ տոկունություն ցուցաբերեց երկրորդ կարգի ավագ Ոսկանովը: Երբ հրաձգային դասակի հրամանատարը շարքից դուրս եկավ՝ Ոսկանովը փոխարինեց նրան և շարունակեց մարտական գործողությունը: Ֆաշիստների գրոհը ետ մղվեց («Вперед к победе», 1942 թ., № 29):

Հյուսիս արևմտյան ռազմաճակատային թերթում քաղղեկ Փ. Կրիլովը վառ գույներով է նկարագրում մի հրանոթի համերաշխ անձնակազմի քաջագործությունը:

...Հրանոթի հրամանատարն էր ուկրաինացի Միշչուրենկոն, հաշվարկը՝ ռուս Բուրունովը, լատիշ Յակուշկոն, ուդմուրդ Վոլկովը, ղազախներ Այմագամբետովն ու Կումարովը, վրացի Պատատաշվիլին, հայ Սարգսյանը, թաթար Մուրտազինը:

...Ֆաշիստների գերակշռող ուժերի ճնշման տակ մեր հետևակայինները թողին Ս. գյուղը: Հակառակորդին դեմ հանդիման կանգնեցին թնդանոթաձիգները... վիրավորվեցին Յակուշկոն, Վոլկովը, Այմագամբետովը, բայց թնդանոթը շարունակում էր գործել և արկեր թափել հիտլերականների գլխին: Անվեհերները մեծ կորուստ պատճառեցին ֆաշիստներին, կասեցրին նրանց առաջխաղացումը (տե՛ս «За Родину», 1941 թ., հոկտեմբերի 10):

Գերմանական զավթիչների դեմ մղված մարտերում ցուցաբերած համարձակության և արիության համար վաշտի կուսկազմակերպիչ Մարկոսյանը պարգևատրվում է՝ «Մարտական ծառայության համար» մեդալով: Նա իր անձնական օրինակով ոգեշնչում է զինվորներին, գրոհի տանում թշնամու դեմ:

...Օրերս,— **Կոմունիստները մարտում** իր թղթակցությունում գրում է Ս. Զիբինը,— վաշտը գրոհեց հակառակորդի վրա... Կոմունիստները հմտորեն տիրապետելով իրենց զենքին, այդ մարտերում ցույց տվին քաջության հիանալի օրինակներ: Երիտասարդ կոմունիստ Թամաշվիլին գնդացրային դիպուկ կրակով ճանապարհ էր բացում հարձակվողների համար: ՀամԿ(բ)Կ անդամության թեկնածուներ Վլադիմիրովն ու Պողոսյանը հմտորեն էին ղեկավարում իրենց ենթակաների մարտական գործողությունը: Նրանք ապահովեցին ստորաբաժանման առաջխաղացումը (տե՛ս «Боец РККА», 1942 թ., դեկտեմբերի 2):

Թամանի ազատագրման համար մղված մարտերում վճռական դեր կատարեց սովետական ավիացիան: Թշնամու մարտակարգերի վրա թափած ռումբերի հզոր պայթյուններից երկինք էին բարձրանում հողի հսկայական զանգվածներ, ապա փոշի դարձած ծածկում մարտադաշտը: Սպանվում էին բազում ֆրիցներ, ջարդ ու փշուր լինում հիտլերյան բանակի մարտական տեխնիկան: Խիզախ սավառնորդների, աներեր բազեների քաջագործություններին է նվիրված ռազմաճակատային թերթի աշխատակից, գրող Արսեն Հովհաննիսյանի՝ **Գրոհիչները տների կտուրների վրա** խորագրով թղթակցությունը:

...Հատվածներից մեկում հիտլերականները հակագրոհի հանեցին տանկեր: Մեր հրաձիգները հրթիռներով ցույց էին տալիս նպատակակետերը: Վեց ինքնաթիռ պտտվում էին ֆաշիստների գլխավերևում: Առաջատար օդաչու կապիտան Վարդանյանը առաջինը վայրասլաց կատարեց և ռմբակոծեց նպատակակետը: Թշնամու տանկերը վերածվեցին մետաղյա ջարդոնի... Նրա օրինակին հետևեցին գվարդիայի կապիտան Պարմանովը, գվարդիայի կրտսեր լեյտենանտ Պանովը...

Մարտերի ընթացքում գվարդիայի կապիտան Վարդանյանին ենթակա օդաչուները լռեցրել են զենիթային հինգ կրակակետ, հրետանային երկու մարտկոց, ոչնչացրել են չորս տանկ, 26 ավտոմեքենա, ցրել հակառակորդի 400 սպա և զինվոր (տե՛ս «Вперед за Родину», 1943 թ., սեպտեմբերի 16):

Հայրենական մեծ պատերազմից առաջ նավաստիներ Դավիթ Վեկուան, Աշոտ Մելքումովը, Գրիգոր Ռեմիկայլոն և Եգոր Իվանովը չգիտեին իրար: Կռիվն սկսվելուց մի քանի ամիս անց ճակատագիրը նրանց մտերմացնում է, նրանք ծառայում են սևծովյան մի ռազմանավի վրա:

...Եվ, ահա,— գրում է Ս. Պանֆիլովը,— ռազմանավը մարտական առաջադրանք ստացավ՝ դուրս գալ բաց ծով... երիտասարդ զենիթայիններն առաջին անգամ էին կռվի մեջ մտնում... Վեկուան, Մելքումովը և Իվանովը լարված դիտում էին հորիզոնը... Նավի կողքին իրար հաջորդեցին հուժկու պայթյուններ: Հսկայական ջրասյուներ բարձրացան երկինք և աղմկով թափվեցին նավի տախտակամածին: Ջրի ուժեղ հարվածից Մելքումովն ընկավ: Նա վայրկենապես հավաքեց ուժերը, ոտքի ելավ և գրավեց իր տեղը զենիթային հրանոթի մոտ... Նավն առաջադրանքը կատարած վերադարձավ ելման տեղը: Երիտասարդ զենիթայիններ՝ Դավիթ Վեկուան, Աշոտ Մելքումովը, Գրիգորի Ռեմիկայլոն և Եգոր Իվանովը ստացան առաջին մարտական մկրտությունը (տե՛ս «Красный черноморец», 1942 թ., փետրվարի 19):

Հայկական մի քանի դիվիզիաներ են մարտնչել հիտլերյան զորամիավորումների դեմ՝ Կրասնոդարի երկրամասում: Թե՛ պաշտպանական մարտերում, թե՛ հարձակողական կռիվներում հայկական գնդերը, կարմիր բանակի ընդհանուր կազմում պատվով են կատարել հրամանատարության առաջադրանքները: Նրանց սխրանքների մասին շատ են գրել ռազմաճակատային ու բանակային թերթերում:

...Կրնկակոխ հետապնդելով հակառակորդին, N հայկական զորամասը մարտերով ազատագրեց մի քանի մեծ բնակավայր: Ծանր մարտերում, կրակի բոցերի մեջ ծնվում են նորանոր հերոսներ: Բ. Կայարանի համար մղված մարտերում կուսկազմակերպիչ Լևոն Ապերյանը և լեյտենանտ Կարապետյանը իրենց հրաձիգներով թշնամուն հարվածեցին թևից, ապա փակեցին նահանջի ճանապարհը:

Այսօր վաղ առավոտյան հայ մարտիկները ազատագրեցին Ս. բնակավայրը... Գոտեմարտերում աչքի ընկան հայ ժողովրդի կտրիճ զավակներ Հմայակ Ղազարյանը, Մովսես Ղուկասյանը, Վարդգես Թադևոսյանը, Գուրգեն Բադալյանը և ուրիշներ... Իր դասակը հըմտորեն գրոհի տարավ լեյտենանտ Արսեն Հարությունյանը: Նա երկու անգամ վիրավորվեց, բայց կռվից դուրս չեկավ.

— Մեզ սպասում է Թամանը,— ասաց խիզախ սպան,— մեր հարազատներին ազատագրելուց հետո կմտածենք ապաքինվելու մասին...

Ա. Սվետով, Ա. Կանևսկի

(Տե՛ս «Знамя Родины», 1943 թ., սեպտեմբերի 26):

Շատ հայ ռազմիկներ, արիաբար մարտնչելով ռազմի դաշտում, իրենց սերը սոցիալիստական հայրենիքի, հավատը հաղթանակի նկատմամբ հաճախ արտահայտել են բանաստեղծական ջերմ, սրտաբուխ տողերով. ահա դրանցից մեկը.

### КЛЯТВА БОЙЦА

Ленинград, родной мой город,
Не отдам тебя врагу!
Дух мой крепок, глаз мой зорок.
Долго биться я могу!
Не боюсь фашистских гадов!
Ран и смерти не боюсь.
Как герои Петрограда,
Защищать тебя клянусь!

Հրանոթի նշանառու Ի. Ամիրխանով

(Տե՛ս «На страже Родины», 1941 թ., դեկտեմբերի 8):

* * *

Մեծ Հոկտեմբերի նվաճումները պաշտպանելու համար այսպես, դյուցազնաբար էին մարտնչում մեր քաջարի ռազմիկները:

Սովետական ժողովրդի քառամյա գոտեմարտը գերմանաֆաշիստական զավթիչների դեմ հանդիսացավ սոցիալիզմի հզորության և ուժի, սովետական մարդու գաղափարայնության ու տոկունության վկայությունը դաժան փորձության ժամանակներում: ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի նախապատրաստության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ ասված է. Հայրենական մեծ պատերազմը հօդս ցնդեցրեց համաշխարհային իմպերիալիզմի այն հույսերը, թե կվերսկսվեն ազգային երկպառակությունները, փուլ կգա բազմազգ սովետական պետությունը: Սովետական ժողովուրդները աշխարհին զարմացրին տոկունության ու արիության հրաշագործություններով:

Հրով ու արյունով ստուգվեց մեր երկրի ժողովուրդների եղբայրության ու բարեկամության հաստատունությունը, նրանց նվիրվածությունը կոմունիզմի վեհ գործին: Այդ գոտեմարտում «Սովետական զինված ուժերը պաշտպանեցին մեր հայրենիքի պատիվն ու անկախությունը,— գրել է Լ. Ի. Բրեժնևը իր **Լենինյան կուրսով** գրքի առաջին հատորում,— ժողովուրդներին փրկեցին ֆաշիստական լծից: Նրանց սխրագործությունները անմահ են»:

Ս. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ




Адрес редакции. — Ереван-33, Барекамутян, 59-г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

ՎՖ 01767 Պատվեր 1876 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 13.100 Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 16/XI 1972 թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: Ավ. Իսահակյան փող. № 28:




## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ՈՐՊԵՍԶԻ ՏԱՆԸ ՇՈԳ ՉԼԻՆԻ

*Լեհաստանում սկսվել է նոր տեսակի ապակու՝ անտիսոլի արտադրությունը: Այդ ապակին կլանում է ուլտրակարմիր ճառագայթները: Պատուհանի սովորական ապակիների փոխարինումն անտիսոլով՝ կօգնի շոգ վայրերի բնակարաններում ստեղծելու բարենպաստ կլիմա: Հավանաբար անտիսոլից ապակիներ կպատրաստվեն նաև ավտոմեքենաների, ավտոբուսների, երկաթուղային վագոնների և տրանսպորտի այլ միջոցների համար, որոնցում անհրաժեշտ է ապահովել օդի համապատասխան ջերմաստիճան:*

*Լեհական նոր ապակին լայնորեն կկիրառվի նաև արտադրության մեջ, ուր պահանջվում են պաշտպանական ակնոցներ, ինչպես և ակնոցներ այն մարդկանց համար, որոնց մասնագիտությունը կապված է ինտենսիվ ուլտրակարմիր ճառագայթումների հետ:*

### ԷԼԵԿՏՐԱԿԱՆ ՀՈՍԱՆՔԸ ԲՈՒԺՈՒՄ Է ԿՈՏՐՎԱԾՔՆԵՐԸ

*Ցածրավոլտ էլեկտրական հոսանքն ըզգալիորեն արագացնում է ոսկորների սերտաճումը, եթե այն բաց է թողնվում ոսկրահոդի կոտրվածքի միջով: Նման եզրակացության են հանգել գիտնականները:*

*Կենդանիների վրա կատարված փորձարկումները ցույց են տվել, որ ոտքի կոտրվածքը էլեկտրական հոսանքով բուժելու դեպքում ոսկորների սերտաճումը տևում է ընդամենը 18 օր, երբ այլ միջոցներով բուժելու համար պահանջվում է ոչ պակաս՝ 2 ամիս:*

*Անշուշտ, բուժման նոր եղանակն ունի մեծ հեռանկար հատկապես այն դեպքերի համար, երբ վիրաբուժական միջամտությունը և հյուսվածքների սպասվածքը նպատակահարմար չեն:*

### ՌԵՏԻՆ՝ ՊԱՐԿԵՏԻ ՏԱԿ

*Լեհական Ժողովրդական Հանրապետությունում մշակվել է շենքերի հարկաբաժիններում ձայնի մեկուսացման նոր եղանակ: Ստեղծվել է ռետինե նոր ծածկույթ, որի համար հումք են ծառայում մաշված ավտոդողերը: Ռետինե ծածկույթը դրվում է հարկերի միջև եղած պանելների վրա, իսկ դրա վրայից շարվում է պարկետը:*

### ԿՈՒՅՐԵՐԻ ՀԱՄԱՐ

*ԱՄՆ-ում պոլիէթիլենից ստեղծված է թղթի նոր տարբերակ, որը հնարավոր է դարձնում գրավոր հաղորդակցումը կույրերի հետ, առանց ուսանելու կույրերի գիրը: Այդ թղթի հիմնական առավելությունն այն է, որ գրված տառերը դառնում են ուռուցիկ թղթի նույն էջի վրա: Նոր պոլիէթելինային թղթի վրա գնդիկավոր կամ բութսայր գրչով գրված տառերը հեշտությամբ շոշափվում են, չնայած դրանք ավելի քիչ ուռուցիկ են, քան կույրերի համար կազմված գրքերում: Տեքստի մեկ էջն ընթերցվում է երեք րոպեում:*

### ՀՈՂԸ ԿԼԱՆՈՒՄ Է ՎՆԱՍԱԿԱՐ ԳԱԶԵՐԸ

*Միջավայրի համար վնասակար գազերը հողը կլանում է ավելի մեծ քանակությամբ, քան մինչև օրս ենթադրվում էր: Փորձարկումներով հաստատված է, որ մեկ քառակուսի կիլոմետր հողը տարեկան կարող է օդից կլանել 495 տոննա ծծըմբային անհիդրիդ: Հողը կարող է ներծծել նաև օրգանական միացություններ, օրինակ՝ էթիլեն: Դրան մեծ չափով նպաստում են միկրոօրգանիզմները:*

### ՍԽՏՈՐԸ ԴԴՏ-Ի ՓՈԽԱՐԵՆ

*Դեռևս միջնադարից շատ ժողովուրդներ սխտորն օգտագործել են վնասատուների դեմ պայքարելու համար: Վերջերս պարզվել է, որ սխտորայուղը նույնիսկ 20 : 1000000 հարաբերությամբ մահացու է մալարիակիր մոծակների թրթուրների համար: Սխտորայուղից զատվել է միջատասպան 2 նյութ— դիալիլդիսուլֆատ և դիալիլտրիսուլֆատ:*

*Գիտնականները գտնում են, որ նոր միջատասպանը, որի անվնասությունը երաշխավորված է սխտորի բազմադարյա կիրառությամբ, շուտով վերջնականապես կփոխարինի ԴԴՏ-ին, որի արտադրությունը շատ երկրներ դադարեցրել են:*

Գինը 25 կ. 77783